Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ

1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝
գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1987 թվականի հունվարի 27-ին աշխատանքն սկսեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումի քննարկմանն է դրված «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումի մասնակիցներին հնարավորություն էր ընձեռվել նախապես ծանոթանալու ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման թեզիսներին, ինչպես նաև պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքի նախագծին և վերակառուցման ու կադրային քաղաքականության հարցերի վերաբերյալ աշխատավորների նամակների տեսությանը:

Հունվարի 27-ի նիստում զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՍՄԿԿ Կրասնոդարի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Կ. Պոլոզկովը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ն. Սլյունկովը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Գ. Ի. Մարչուկը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Վ. Ի. Վորոտնիկովը, Իվանովոյի Ս. Մ. Կիրովի անվան գործվածքեղենի ֆաբրիկայի դիրեկտոր ընկ. Վ. Ն. Գոլուբևան, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ի. Ռիժկովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Ծչերբիցկին, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ն. Ելցինը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ԱՄՆ-ի և Կանադայի ինստիտուտի դիրեկտոր ընկ. Գ. Ա. Արբատովը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ֆ. Սոլովյովը, ՍՄԿԿ Սվերդլովսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Վ. Պետրովը, Ստավրոպոլի երկրամասի Ստեպնոյեի շրջանի «Կոմունիզմի ուղի» կոլտնտեսության նախագահ ընկ. Ն. Դ. Տերեշչենկոն:

1987 թվականի հունվարի 28-ին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում շարունակվեց «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցման քննարկումը:

Մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Ա. Ա. Գրոմիկոն, Կեմերովոյի մարզի Պրոկոպևսկի ածխահանույթի արտադրական միավորման «Զիմինկա» հանքի կոմպլեքսային բրիգադի բրիգադավար ընկ. Վ. Ս. Կոստինը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Կոլբինը, ՍՄԿԿ Օմսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Ի. Մանյակինը, ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստր ընկ. Գ. Ա. Յագոդինը, ՍՄԿԿ Ալթայի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Ֆ. Վ. Պոպովը, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ

ընկ. Մ. Ս. Սոլոմենցևը, Մոսկվայի Վլադիմիր Իլյիչի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի խառատ ընկ. Վ. Պ. Տիխոմիրովը, ՍՄԿԿ Բելգորոդի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ֆ. Պոնոմարյովը, ՍՍՀՄ էներգետիկ մեքենաշինության մինիստր ընկ. Վ. Մ. Վելիչկոն, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Ի. Պատիաշվիլին, ՌՍՖՍՀ թատերական գործիչների միության վարչության նախագահ ընկ. Մ. Ա. Ուլյանովը, Ուկրաինական ՍՍՀ Խերսոնի մարզի Բելոզյորկայի շրջանի Կիրովի անվան կոլտնտեսության նախագահ ընկ. Դ. Կ. Մոտռոնին, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր ընկ. Ս. Լ. Սոկոլովը, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում ՍՍՀՄ արտակարգ ու լիազոր դեսպան ընկ. Յու. Ա. Կվիցինսկին, Ուկրաինայի կոմկուսի Պոլտավայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ֆ. Տ. Մորգունը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Պ. Գրիշկյավիչուսը, ՍՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Կ. Մեսյացը, Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Բ. Ուսմանխոջաևը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Վ. Ի. Դոլգիխը, Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Մ. Մասալիևը, ՍՄԿԿ Իրկուտսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Սիտնիկովը:

Եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց ծավալուն որոշում:

Պլենումը նպատակահարմար գտավ որպես հիմք հավանություն տալ պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքի նախագծին, նկատի ունենալով այն հետագայում դնել համաժողովրդական քննարկման:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում քննարկվեցին կազմակերպական հարցեր:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու ընկ. Ն. Ն. Սլյունկովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Ա. Ն. Յակովլևին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընտրեց ընկ. Ա. Ի. Լուկյանովին:

Որոշում ընդունվեց ընկ. Դ. Ա. Կունաևին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից ազատելու մասին՝ կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Պլենումը ընկ. Մ. Վ. Զիմյանինին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ առողջական վիճակի պատճառով կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

---

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱԴՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1987 թվականի հունվարի 27-ին

Ընկերնե՛ր:

Մեզ՝ Կենտրոնական կոմիտեի անդամներիս վրա կուսակցության XXVII համագումարի կողմից դրված է մեծագույն պատասխանատվություն՝ ապահովել երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական կուրսի կենսագործումը: Քաղբյուրոն հենց այդպես է հասկանում իրավիճակն ու Կենտրոնական կոմիտեի դերը սովետական հասարակության կյանքի ներկայիս փուլում:

Ելնելով դրանից, պլենումի քննարկմանն է դրված Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի և ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած քաղաքական ստրատեգիայի հաջող իրականացման համար առաջնահերթ նշանակություն ունեցող հարց՝ վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին հարցը: Մենք պետք է այն դիտենք սոցիալ-քաղաքական լայն պլանով, հաշվի առնելով անցյալի դասերը, ներկա պահի բնույթը և ապագայի խնդիրները:

Ապրիլյան պլենումը, կուսակցության XXVII համագումարը բացեցին հասարակության մեջ ստեղծված դրության օբյեկտիվ քննադատական վերլուծության ուղին, ընդունեցին երկրի բախտի համար պատմական որոշումներ: Մենք անշրջելիորեն սկսեցինք վերակառուցումը և այդ ճանապարհին արել ենք առաջին քայլերը:

Եթե ամփոփելու լինենք ընդհանուր քաղաքական արդյունքը, ապա կարելի է վստահորեն ասել. սովետական հասարակության կյանքում տեղի են ունենում խոշոր վերափոխումներ, զորեղանում են դրական միտումները:

Պլենումի նախօրեին ես, քաղբյուրոյի մյուս անդամները, Կենտկոմի քարտուղարները բիչ հանդիպումներ ու զրույցներ չենք ունեցել Կենտրոնական կոմիտեի անդամների, հասարակական գործիչների, բանվորների, կոլտնտեսականների, մտավորականների, վետերանների ու երիտասարդների հետ: Ընդհանուր տրամադրությունը, նրանց ասածների իմաստը միանշանակ է՝ անսասանորեն վարել մեր հասարակության նորացման գիծը, ջանքերը մեծացնել բոլոր ուղղություններով:

Կենտրոնական կոմիտեի համար կարևոր է, որ XXVII համագումարի քաղաքական գիծը, դրա իրացման պրակտիկ գործունեությունը, բուն վերակառուցումը արժանացել են աշխատավորության, ամբողջ սովետական ժողովրդի լայն պաշտպանությանը: Իսկ սա, ընկերներ, կառավարող կուսակցության համար ամենագլխավորն է:

Սրա հետ մեկտեղ մենք տեսնում ենք, որ դրական փոփոխությունները դանդաղ են կատարվում, վերակառուցման գործը, պարզվեց, ավելի դժվար է, հասարակության մեջ կուտակված պրոբլեմների պատճառները՝ ավելի խոր, քան մեզ թվում էր մինչ այդ: Մենք որքան շատ ենք խորանում վերակառուցման աշխատանքում, այն-

խատանքի չափը և սպառման չափը, կոոպերացումը, տնտեսավարման մեթոդները, ժողովրդապետությունը և ինքնակառավարումը, պայքարը բյուրոկրատական խեղաթյուրումների դեմ, սոցիալիստական գաղափարախոսության հեղափոխական վերափոխիչ էությունը, ուսուցման և դաստիարակության սկզբունքները, կուսակցության և հասարակության առողջ զարգացման երաշխիքները:

Որոշակի տարածում էին գտել կոմունիզմի մասին թեթևամիտ պատկերացումները, տարբեր կարգի մարգարեությունները և վերացական դատողությունները: Դա իր հերթին նվազեցնում էր սոցիալիզմի պատմական նշանակությունը, թուլացնում սոցիալիստական գաղափարախոսության ներգործությունը:

Տեսության նկատմամբ նման վերաբերմունքը չէր կարող բացասաբար չանդրադառնալ և իսկապես էլ բացասաբար անդրադարձավ հասարակական գիտությունների վրա, հասարակության մեջ դրանց ունեցած դերի վրա: Չէ՞ որ, ընկերներ, փաստ է, որ մեզ մոտ հաճախ նույնիսկ խրախուսվում էր որևէ մեկի շահերն ու կենսական պրոբլեմները չշոշափող ամեն կարգի սխոլաստիկ տեսաբանումը, իսկ կոնստրուկտիվ վերլուծության և նոր գաղափարների առաջադրման փորձերը պաշտպանություն չէին գտնում:

Տեսական ճակատում տիրող վիճակը բացասական ազդեցություն գործեց գործնական հարցերի լուծման վրա: Տասնամյակներ շարունակ տնտեսավարման և կառավարման պրակտիկայում կոնսերվացվում էին հնացած մեթոդները և, ընդհակառակն, որոշ արդյունավետ տնտեսական ձևեր անհիմն կերպով մերժվում էին: Միաժամանակ արտադրության և բաշխման մեջ արմատավորվում էին հասարակության ռեալ հասունությանը չհամապատասխանող հարաբերություններ, որոնք մի շարք դեպքերում հակասության մեջ էին մտնում նրա բնույթի հետ: Արտադրությունը և աշխատանքի խթանումն ըստ էության կողմնորոշված էին դեպի քանակական, էքստենսիվ զարգացում:

Հատկապես պետք է ասել սոցիալիստական սեփականության մասին: Տեղի էր ունեցել այն բանի վերահսկողության լուրջ թուլացում, թե ով և ինչպես է տնօրինում սոցիալիստական սեփականությունը: Այն հաճախ ներսից կրծոտվում էր գերատեսչականությամբ և տեղայնությամբ, դառնում էր ասես «ոչ մեկինը»՝ ձրի, իրական տեր չունեցող, շատ դեպքերում սկսել էր օգտագործվել անաշխատ եկամուտների կորզման համար:

Սխալ վերաբերմունք կար կոոպերատիվ սեփականության նկատմամբ, որը պատկերվում էր որպես ինչ-որ «երկրորդ տեսակի» և անհեռանկար մի բան: Այս ամենը լուրջ հետևանքներ էր ունենում ագրարային և սոցիալական քաղաքականության մեջ, վարչարարություն ծնում կոլտնտեսությունների հետ հարաբերություններում, հանգեցրեց արհեստագործական կոոպերացիայի վերացման: Նաև լուրջ մոլորություններ եղան անձնական օժանդակ տնտեսության և անհատական աշխատանքային գործունեության վերաբերյալ հայացքների մեջ, ինչը նույնպես տնտեսական ու սոցիալական քիչ վնաս չհասցրեց:

Լուրջ ձևախեղումներ էին կուտակվում պլանավորման մեջ: Պլանի՝ որպես սոցիալիստական քաղաքականության գլխավոր գործիքի, հեղինակությունը խարխլվում էր սուբյեկտիվիստական մոտեցումներով, անհաշվեկշռվածությամբ և անկայունությամբ, ամեն ինչ և լրիվ ընդգրկելու ձգտումով՝ ընդհուպ մինչև մանրուքները, ճյուղային և ռեգիոնալ բնույթի որոշումների առատությամբ, որոնք ընդունվում էին պլանից դուրս և հաճախ առանց ռեալ հնարավորությունները հաշվի առնելու: Հաճախ պլաններին պակասում էր գիտական հիմնավորվածությունը, դրանք չէին նպատակամղվում արդյունավետ ժողովրդատնտեսական համամասնությունների ձևավորմանը, սոցիալական ոլորտի զարգացման նկատմամբ հարկ եղած ուշադրությանը, ստրատեգիական շատ խնդիրների լուծմանը:

Այնպես էր ստացվել, որ տնտեսավարման սոցիալիստական սիստեմի հսկայական առավելությունները և ամենից առաջ նրա պլանայնությունը անարդյունավետ էին օգտագործվում:

Այդ պայմաններում փարթամորեն աճում էր անպատասխանատվությունը, հորինվում էին բազմապիսի բյուրոկրատական կանոններ և հրահանգներ: Կենդանի գործը փոխարինվում էր վարչարարությամբ, ցուցամոլական գործարարությամբ, թղթարարությամբ:



Ապրանքադրամական հարաբերությունների դերի և արժեքի օրենքի գործողության վերաբերյալ նախատրամադրվածությունները, իսկ հաճախ նաև դրանց ուղղակի հակադրումը սոցիալիզմին որպես ինչ-որ օտարածին բանի, հանգեցնում էին էկոնոմիկայում վոլյունտարիստական մոտեցումների, տնտհաշվարկի թերագնահատման, աշխատանքի վարձատրության մեջ «համահավասարեցման», ծնում էին գնագոյացման մեջ սուբյեկտիվիստական սկզբունքներ, դրամաշրջանառության խախտումներ, պահանջարկի և առաջարկի կանոնավորման հարցերի նկատմամբ անուշադրություն:

Առանձնապես ծանր հետևանքներ ունեցան ձեռնարկությունների և միավորումների տնտհաշվարկային իրավունքների սահմանափակումները: Դա խարխլում էր նյութական խթանման հիմունքները, խոչընդոտում վերջնական բարձր արդյունքների ձեռքբերմանը, հանգեցնում մարդկանց աշխատանքային և սոցիալական ակտիվության նվազման, կարգապահության և կարգուկանոնի անկման:

Ըստ էության առաջացել էր իշխանության էկոնոմիկական գործիքների թուլացման մի ամբողջ համակարգ, գոյացել էր սոցիալ-տնտեսական զարգացման արգելակման, այնպիսի առաջադիմական վերափոխումների կասեցման յուրատեսակ մեխանիզմ, որոնք թույլ են տալիս բացահայտել և օգտագործել սոցիալիզմի առավելությունները: Այդ արգելակման արմատները սոցիալիստական դեմոկրատիայի հաստատությունների գործունեության լուրջ թերությունների մեջ էին, հնացած, իսկ երբեմն էլ իրողություններին չհամապատասխանող քաղաքական և տեսական դիրքորոշումների, կառավարման պահպանողական մեխանիզմի մեջ:

Այս ամենը, ընկերներ, բացասաբար անդրադարձավ հասարակության կյանքի շատ ոլորտների զարգացման վրա: Վերցնենք նյութական արտադրությունը: Վերջին երեք հնգամյակում ազգային եկամտի հավելաճի տեմպերը դանդաղել էին ավելի քան երկու անգամ: 70-ական թվականների սկզբից ցուցանիշների մեծ մասի գծով պլանները չէին կատարվում: Ամբողջությամբ վերցված էկոնոմիկան դարձել էր նորամուծությունների նկատմամբ սակավ ընկալունակ, անդյուրաշարժ, արտադրանքի մի զգալի մասի որակը դադարել էր համապատասխանել արդի պահանջներին, սրվել էին անհամամասնությունները արտադրության մեջ:

Թուլացել էր ուշադրությունը մեքենաշինության զարգացման նկատմամբ: Գիտահետազոտական և փորձնակոնստրուկտորական աշխատանքները հետ էին մնացել ժողովրդական տնտեսության պահանջմունքներից, չէին համապատասխանում նրա տեխնիկական վերակառուցման խնդիրներին: Անչափ շատ էին և բնավ էլ ոչ միշտ արդարացված սարքավորումների և ուրիշ շատ ապրանքների գնումները կապիտալիստական շուկայից:

Բացասական պրոցեսները լրջորեն վնասել էին սոցիալական ոլորտը: Կուսակցության XXVII համագումարում արդեն տրված է սոցիալական ոլորտի վիճակի գնահատականը: Վերջին հնգամյակներում էկոնոմիկայի սոցիալական ուղղվածությունը բացահայտորեն թուլացել էր, երևացել էր յուրատեսակ խլություն սոցիալական հարցերի նկատմամբ: Այսօր մենք տեսնում ենք, թե դա ինչի հանգեցրեց:

Հաջողությամբ լուծելով բնակչության զբաղվածության հարցերը, ապահովելով սկզբունքային բնույթի սոցիալական երաշխիքներ, մենք միևնույն ժամանակ չկարողացանք լրիվ իրացնել սոցիալիզմի հնարավորությունները բնակարանային պայմանների բարելավման, պարենի մատակարարման, տրանսպորտի, բուժսպասարկման, կրթության կազմակերպման գործում, մի շարք ուրիշ կենսական պրոբլեմների լուծման ասպարեզում:

Նկատվում էին սոցիալիզմի կարևորագույն սկզբունքի՝ ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի խախտումներ: Անաշխատ եկամուտների դեմ պայքարը մղվում էր անվճռականորեն: Բարձրարտադրողական աշխատանքի նյութական և բարոյական խթանման քաղաքականությունը անհետևողական էր: Վճարվում էին խոշոր գումարների չհիմնավորված պարգևներ, տարբեր կարգի լրացուցիչ խրախուսումներ, թույլ էին տրվում հավելագրումներ հանուն շահի: Ուժեղացել էին խնամառուական տրամադրությունները, գիտակցության մեջ սկսել էր արմատավորվել «համահավասարեցման» հոգեբանությունը: Իսկ դա հարվածեց այն աշխատավորներին, ովքեր կարող էին և ուզում էին ավելի լավ աշխատել, և միաժամանակ հեշտացրեց թեթև աշխատանք սիրողների կյանքը:

Աշխատանքի չափի և սպառման չափի օրգանական կապի խախտումը ոչ միայն ձևախեղում էր վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, կասեցնելով նրա արտադրողականության աճը, այլև հանգեցնում սոցիալական արդարության սկզբունքի աղավաղման, իսկ սա արդեն քաղաքական մեծ կարևորության հարց է:

Սոցիալական կոռոզիայի վերջին տարիներս առաջացած տարրերը բացասաբար էին անդրադառնում հասարակության հոգեվիճակի վրա, ինչ-որ աննկատելիորեն խարխլում էին բարոյական վեհ արժեքները, որոնք միշտ էլ ներհատուկ են եղել մեր ժողովրդին և որոնցով մենք հպարտանում ենք՝ գաղափարական համոզվածությունը, աշխատանքային խանդավառությունը, սովետական հայրենասիրությունը:

Դրա անխուսափելի հետևանք եղան հասարակական գործերի նկատմամբ հետաքրքրության անկումը, հոգևոր սնանկության և հոռետեսության դրսևորումները, աշխատանքի բարոյական խթանների դերի նվազումը: Ավելացավ այն մարդկանց խավը, այդ թվում՝ երիտասարդության շրջանում, որոնց համար կյանքի նպատակը հանգում էր նյութական բարեկեցությանը, բոլոր միջոցներով հարստություն դիզելուն: Նրանց լկտի դիրքորոշումը ավելի ու ավելի մոլեգին ձևեր էր ստանում, թունավորում շրջապատի մարդկանց գիտակցությունը, սպառողականության ալիք ծնում: Սոցիալական բարքերի անկման ցուցանիշ դարձան հարբեցողության աճը, թմրամոլության տարածումը, հանցագործությունների ավելացումը:

Հասարակության բարոյական մթնոլորտի վրա կործանարար ազդեցություն էին գործում օրենքների նկատմամբ արհամարհական վերաբերմունքի փաստերը, աչքակապությունը և կաշառակերությունը, շողոքորթության և փառաբանության խրախուսումը: Մարդկանց նկատմամբ, նրանց կյանքի ու աշխատանքի պայմանների, սոցիալական ինքնազգացողության նկատմամբ իսկական հոգատարությունը հաճախ փոխարինվում էր քաղաքական սիրաշահումներով՝ պարգևների, կոչումների, մրցանակների մասսայական բաժանումով: Ստեղծվում էր ամենաթողության մթնոլորտ, թուլանում էին պահանջկոտությունը, կարգապահությունը, պատասխանատվությունը:

Գաղափարաքաղաքական դաստիարակության գործում եղած լուրջ թերությունները շատ դեպքերում քողարկվում էին շքեղ միջոցառումների և կամպանիաների անցկացումով, թե կենտրոնում և թե տեղերում մեծաթիվ հոբելյանների տոնակատարությամբ: Ամենօրյա իրողությունների աշխարհը և ցուցադրական բարեհաջողության աշխարհը ավելի ու ավելի էին հեռանում իրարից:

Լճացման գաղափարախոսությունը և հոգեբանությունը անդրադարձան նաև մշակույթի, գրականության և արվեստի ոլորտի վիճակի վրա: Իջան չափանիշները գեղարվեստական ստեղծագործության գնահատումների հարցում: Դա հանգեցրել էր այն բանին, որ սոցիալ-բարոյական լուրջ պրոբլեմներ արծարծող, կենսական ռեալ բախումներն արտացոլող ստեղծագործությունների հետ մեկտեղ լույս էին տեսնում ոչ քիչ միջակ, անդեմ գործեր, որոնք ոչինչ չէին տալիս ոչ մտքին և ոչ էլ զգացմունքներին: Ուժեղացել էր բուրժուական մասսայական մշակույթից ստերեոտիպների թափանցումը սովետական հասարակության մեջ, մշակույթ, որը գռեհկություն, պարզունակ ճաշակ, հոգևոր սնանկություն է պարտադրում:

Այստեղ չի կարելի չասել ստեղծագործական պրոցեսի գաղափարագեղարվեստական ուղղվածության համար, ժողովրդի բարոյական առողջության համար մեր գաղափարախոսական գերատեսչությունների, գեղարվեստական հանդեսների խմբագիրների և ստեղծագործական միությունների ղեկավարների, գրաքննադատության, հենց գրողների, արվեստի գործիչների ունեցած պատասխանատվության մասին:

Ստեղծագործական միությունների գործունեությանը պակասում էին սկզբունքայնությունը, պահանջկոտությունը, տաղանդների զարգացման և նրանց աջակցելու նկատմամբ իսկական հոգատարությունը: Մշակույթի ոլորտի դրությանը և վիճակին վերաբերող առաջնակարգ կարևորության հարցերը հաճախ չէին արժանանում միությունների ղեկավարության հարկ եղած ուշադրությանը: Միաժամանակ բարգավաճում էին ձևամոլությունն ու ձևականությունը, ծայրատիճան անհանդուրժողություն էր դրսևորվում քննադատության նկատմամբ: Մի շարք դեպքերում չափից ավելի պատվամոլությունը սկսել էր գերակշռել ռեալիստական գնահատումների և ինքնագնահատումների նկատմամբ:

Դրությունը խորանում էր նաև նրանով, որ գեղարվեստական ստեղծագործու-



թյան նկատմամբ կուսակցական մոտեցումը հաճախ փոխարինվում էր զուտ ստեղծագործական պրոցեսներին ցույց տրվող գերատեսչական, չհիմնավորված միջամտությամբ, ճաշակային համակրանքով և հակակրանքով, իսկ գաղափարական ազդեցության և ղեկավարման մեթոդները՝ վարչական որոշումներով:

Ընկերնե՛ր: 70—80-ական թվականների ժամանակահատվածում ստեղծված սոցիալ-տնտեսական և քաղաքական իրադրության վրա անդրադարձավ նաև հենց կուսակցության, նրա կադրային կորպուսի վիճակը: Կուսակցության ղեկավար մարմինները չկարողացան ժամանակին ու քննադատաբար գնահատել հասարակության մեջ, կոմունիստների մի մասի վարքագծում բացասական միտումների ուժեղացման վտանգը, ընդունել այնպիսի որոշումներ, որպիսիք հրամայաբար պահանջում էր կյանքը:

Ունենալով հսկայական հնարավորություններ, գործելով փաստորեն բոլոր աշխատավորական կոլեկտիվներում, շատ սկզբնական կուսակցական կազմակերպություններ չկարողացան մնալ սկզբունքային դիրքերում: Նրանցից ամենևին էլ ոչ բոլորն էին վճռական պայքար մղում բացասական երևույթների, անարգելության, արատավոր խմբայնության դեմ, կարգապահության թուլացման, հարբեցողության տարածման դեմ: Միշտ չէ, որ պատշաճ հակահարված էր տրվում գերատեսչականությանն ու տեղայնությանը, նացիոնալիստական դրսևորումներին:

Մեր կուսակցական կազմակերպություններին հաճախ չէր բավականացնում մարտունակությունը, կուսակցության անդամների նկատմամբ պահանջկոտությունը, ուշադրությունը կոմունիստների գաղափարաքաղաքական հատկանիշների ձևավորման հանդեպ: Իսկ չէ որ հենց բարձր գաղափարայնությունն ու գիտակցականությունը, անձնական շահերը հասարակականին ենթարկելու պատրաստակամությունը, ժողովրդին անձնվիրաբար ծառայելն են այն արժեքավորագույն հատկանիշները, որոնցով միշտ աչքի են ընկել բոլշևիկները:

Կուսակցության մեջ տիրող իրադրության վրա ներգործեց նաև այն, որ մի շարք դեպքերում կուսակցական մարմինները պատշաճ ուշադրություն չէին նվիրում լենինյան սկզբունքների և կուսակցական կյանքի նորմերի խստիվ պահպանմանը: Թերևս, դա ամենից շատ դրսևորվում էր աշխատանքում կոլեգիալության խախտումներով: Ես նկատի ունեմ կուսակցական ժողովների և ընտրովի մարմինների դերի թուլացումը, որը կոմունիստներին զրկում էր կենսականորեն կարևոր հարցերի քննարկմանը ակտիվորեն մասնակցելու և վերջին հաշվով աշխատավորական կոլեկտիվներում և առհասարակ հասարակության մեջ տիրող իրադրության վրա ռեալ կերպով ներգործելու հնարավորությունից:

Հաճախ խախտվում էր կոմունիստների հավասարության սկզբունքը: Կուսակցության շատ անդամներ, որոնք ղեկավար պոստեր էին գրավում, դուրս էին մնում վերահսկողությունից ու քննադատությունից, որը հանգեցնում էր աշխատանքի ձախողումների, կուսակցական էթիկայի լուրջ խախտումների:

Չի կարելի լռության մատնել նաև աշխատավորների արդարացի վրդովմունքը այն ղեկավար աշխատողների վարքագծի առթիվ, որոնք օժտված էին վստահությամբ ու լիազորություններով, կոչված էին պաշտպան կանգնելու պետության ու քաղաքացիների շահերին և որոնք, սակայն, իրենք էին չարաշահում իշխանությունը, խլացնում քննադատությունը, հարստություն դիզում, իսկ նրանցից ոմանք էլ դարձան հանցավոր գործողությունների մասնակիցներ, անգամ կազմակերպիչներ:

Կադրերի վերասերման, սոցիալիստական օրինականության խախտումների հետ կապված բացասական պրոցեսները ծայրահեղորեն այլանդակ ձևերով դրսևորվեցին Ուզբեկստանում, Մոլդավիայում, Թուրքմենիայում, Ղազախստանի մի շարք մարզերում, Կրասնոդարի երկրամասում, Ռոստովի մարզում, ինչպես նաև Մոսկվայում և որոշ այլ քաղաքներում, մարզերում, երկրամասերում ու հանրապետություններում, արտաքին առևտրի մինիստրության և ներքին գործերի մինիստրության համակարգերում:

Իհարկե, կուսակցական կազմակերպությունները, ամբողջությամբ վերցրած կուսակցությունը պայքար էին մղում նման երևույթների դեմ, ՍՄԿԿ շարքերից հեռացնելով զգալի թվով վերասերվածների: Այդ թվում նաև նրանց, ովքեր զբաղվում էին

հափշտակումներով, կաշառակերությամբ, հավելագրումներով, խախտում պետական ու կուսակցական կարգապահությունը, զբաղվում հարբեցողությամբ:

Կուսակցության մեջ գերազանցապես ընդունվում էին բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության լավագույն ներկայացուցիչները: Նրանք անկեղծորեն ու անշահախնդիր կերպով են կատարել և կատարում իրենց կուսակցական պարտքը: Եվ այնուամենայնիվ, պետք է խոստովանել, որ այդ տարիներին չհաջողվեց ամուր պատնեշ դնել անազնիվ, ճարպիկ, շահամոլ մարդկանց ճանապարհին, որոնք ձգտում էին օգուտ կորզել կուսակցական տոմսից: Մենք ինչ-որ չափով շեղվել էինք «գլխավորը ոչ թե նոր անդամների քանակն է, այլ կուսակցական շարքերի որակը» կանոնից: Իսկ դա անդրադարձավ կուսակցական կազմակերպությունների մարտունակության վրա:

Ամբողջ ասվածն, ընկերներ, վկայում է այն մասին, թե որքան լուրջ վիճակ էր ստեղծվել հասարակության տարբեր ոլորտներում, որքան անհրաժեշտ են խոր փոփոխությունները: Առավել ևս կարևոր է մեկ անգամ էլ ընդգծել. կուսակցությունն իր մեջ ուժ ու խիզախություն գտավ, որպեսզի սթափ կերպով գնահատի իրադրությունը, ընդունի քաղաքականության մեջ, էկոնոմիկայում, սոցիալական ու հոգևոր ոլորտներում արմատական փոփոխությունների անհրաժեշտությունը, երկիրը թեքի վերափոխումների ուղին:

Այս իրադրության մեջ էլ, ընկերներ, բարձրացվեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, վերակառուցման հարցը: Ըստ էության խոսքը հեղափոխական բնույթի շրջադարձի ու միջոցառումների մասին է: Մենք խոսում ենք հասարակության վերակառուցման և դրա հետ կապված խոր դեմոկրատացման պրոցեսների մասին, նկատի ունենալով հասարակության մեջ իրոք հեղափոխական և բազմակողմանի վերափոխումները:

Այդպիսի արմատական շրջադարձն անհրաժեշտ է, քանի որ այլ ուղի մենք պարզապես չունենք: Նահանջել չի կարելի և նահանջելու տեղ էլ չունենք: Կենտկոմի ապրիլյան պլենումի, XXVII համագումարի կուրսը մենք պարտավոր ենք կենսագործել հետևողականորեն ու անշեղորեն, առաջ ընթանալ և հասարակությունը դուրս բերել զարգացման որակապես նոր մակարդակ:

Սկսելով հասարակական վերափոխումները, անհրաժեշտ է, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, պատկերացնել, թե «իսկապես ի՞նչն է այդ անցման էությունը, ինչի՞ց և դեպի ո՞ւր է տանում այն»: Անցյալի քննադատությունը, լինելով զարգացման կարևոր հանգամանք, հնարավորություն է ընձեռում դասեր քաղել ու հետևություններ անել այսօրվա և վաղվա օրվա համար, օգնում է առաջ ընթանալու միջոցների և ուղիների ճիշտ ընտրության կոնստրուկտիվ աշխատանքին: Մենք մշակել ենք արագացման գիտականորեն հիմնավորված ստրատեգիա, պարզորոշ հասկանալով, որ ապագայի մասին պատկերացումների ձևավորման գործում շտապողականությունն ու տարերայնությունը պակաս վտանգավոր չեն, քան իներցիան ու դոգմատիկ աղավաղումները:

Այսօր անհրաժեշտություն կա մեկ անգամ ևս ասելու, թե ինչպես ենք մենք հասկանում վերակառուցումը:

Վերակառուցում նշանակում է լճացման պրոցեսների վճռական հաղթահարում, արգելակման մեխանիզմի փշրում, սովետական հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հուսալի և արդյունավետ մեխանիզմի ստեղծում: Մեր ստրատեգիայի գլխավոր գաղափարն է գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները միավորել պլանային էկոնոմիկայի հետ և գործողության մեջ դնել սոցիալիզմի ամբողջ պոտենցիալը:

Վերակառուցում նշանակում է հենվել մասսաների կենդանի ստեղծագործության վրա, բազմակողմանիորեն զարգացնել դեմոկրատիան, սոցիալիստական ինքնակառավարումը, խրախուսել նախաձեռնությունը, ինքնագործունեությունը, ամրապնդել կարգապահությունն ու կարգուկանոնը, ընդլայնել հրապարակայնությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում. նշանակում է բարձր պահել հարգանքը անհատի արժեքի ու արժանապատվության նկատմամբ:

Վերակառուցում նշանակում է անշեղորեն բարձրացնել ինտենսիվ գործոնների դերը սովետական էկոնոմիկայի զարգացման ճանապարհին. ժողովրդական տնտե-



սության կառավարման մեջ վերականգնել ու զարգացնել դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները, ամենուրեք արմատավորել կառավարման տնտեսագիտական մեթոդները, հրաժարվել հրամաններ արձակելուց ու վարչարարությունից, ապահովել էկոնոմիկայի բոլոր օղակների անցումը լրիվ տնտհաշվարկի սկզբունքներին ու աշխատանքի և արտադրության կազմակերպման նոր ձևերին, ըստ ամենայնի խրախուսել նորարարությունն ու սոցիալիստական ձեռներեցությունը:

Վերակառուցում նշանակում է վճռական շրջադարձ կատարել դեպի գիտություն, նրա հետ պրակտիկայի գործարար պարտնյորություն՝ վերջնական բարձր արդյունքների հասնելու նպատակով, ամեն մի նախաձեռնություն գիտական պատկառելի հիմքի վրա դնելու ունակություն, հասարակության նորացման կուսակցության կուրսը ակտիվորեն պաշտպանելու գիտնականների պատրաստակամություն ու ջերմ ցանկություն. միաժամանակ դա նաև հոգատարություն է գիտության զարգացման, նրա կադրերի աճի, վերափոխումների պրոցեսներին նրանց ակտիվ մասնակցության նկատմամբ:

Վերակառուցում նշանակում է սոցիալական ոլորտի գերադաս զարգացում, սովետական մարդկանց աշխատանքի, կենցաղի, հանգստի, կրթության ու բուժսպասարկման լավ պայմանների պահանջմունքի ավելի ու ավելի լրիվ բավարարում. մշտական հոգատարություն յուրաքանչյուր մարդու և ամբողջ հասարակության հոգևոր հարստության, կուլտուրայի նկատմամբ. մարդկանց հուզող ընթացիկ հարցերի լուծման հետ հասարակության կյանքի մասշտաբային, արմատական պրոբլեմների լուծումը զուգակցելու ընդունակություն:

Վերակառուցում նշանակում է հասարակությունը վճռականորեն զերծ պահել սոցիալիստական բարոյականության աղավաղումներից, հետևողականորեն կենսագործել սոցիալական արդարության սկզբունքները. դա նշանակում է խոսքի ու գործի, իրավունքների ու պարտականությունների միասնություն. ազնիվ, բարձրորակ աշխատանքի վեհացում, նրա վարձատրության մեջ համահավասարման միտումների, սպառողականության հաղթահարում:

Վերակառուցման վերջնական նպատակը, թվում է, պարզ է՝ խոր կերպով նորացնել երկրի կյանքի բոլոր կողմերը, սոցիալիզմին հաղորդել հասարակական կազմակերպման ամենաարդիական ձևերը, առավել լրիվ բացահայտել մեր կարգերի մարդասիրական բնույթը իր բոլոր վճռական կողմերով՝ տնտեսական, սոցիալ-քաղաքական ու բարոյական:

Այսպիսի աշխատանքի ենք, ընկերներ, մենք ձեզ հետ ձեռնամուխ եղել: Վերակառուցումը ծավալվում է ամբողջ ճակատով: Այն նոր հատկանիշներ է ձեռք բերում, ընթանում է ոչ միայն լայնությամբ, այլև թափանցում է կյանքի խորքային շերտերը:

Վերակառուցումը շարժման մեջ է դրել հասարակության բոլոր առողջ ուժերը, վստահություն ներշնչել գործերում: Ավելի ու ավելի են շատանում այն կուսակցական կոմիտեներն ու հասարակական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, որոնց բնորոշ են իրադրության օբյեկտիվ, ինքնաքննադատական գնահատումը, աշխատանքում տեղ գտած ձևականությունից ու շաբլոնից հրաժարումը, պրոբլեմների լուծման նոր ինքնատիպ ուղիների որոնումը: Մենք զգում ենք բանվորների ու գյուղացիների, գեղարվեստական, գիտատեխնիկական մտավորականության, սովետական հասարակության բոլոր խավերի ակտիվ ու վճռական պաշտպանությունը:

Երկրում ստեղծվում է բարոյական նոր մթնոլորտ: Տեղի է ունենում արժեքների վերագնահատում, դրանց ստեղծագործական վերաիմաստավորում, բանավեճեր են ծավալվում էկոնոմիկայի մեջ, սոցիալական ու հոգևոր ոլորտներում կատարվող վերափոխումների ուղիների շուրջը, ընդլայնվում է կազմակերպչական ու գաղափարախոսական աշխատանքի նոր մեթոդների որոնումը: Որպես կյանքի ակտիվորեն գործող սկզբունքներ ավելի ու ավելի են հաստատվում հրապարակայնությունը, երևույթների ու իրադարձությունների գնահատման ճշմարտացիությունը, թերությունների նկատմամբ անհաշտվողականությունը, գործը բարելավելու ցանկությունը:

Արտադրության մեջ բարձրանում են պահանջկոտությունն ու կարգապահությունը, կազմակերպվածությունը, ավելի է հաստատվում կարգուկանոնը: Մեզ համար առանձնապես կարևոր են հոգևոր կյանքի վերակառուցման առաջին քայլերը, քանի որ առանց հասարակական գիտակցության մեջ բեկման, առանց մարդկանց հոգե-

բանության ու մտածողության, տրամադրության մեջ փոփոխությունների անհնար է հաջողության հասնել, ընկերներ:

Մենք ձեռնամուխ ենք եղել գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա նյութատեխնիկական բազայի արմատական վերափոխման, ժողովրդական տնտեսության խոր վերակառուցման, կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության փոփոխման: Գիտատեխնիկական առաջադիմության առաջատար ուղղություններում ընդունվել են ընդգրկուն նպատակային ծրագրեր: Դրանք հաշվի առնելով է կազմվել և իրականացվում տասներկուերորդ հնգամյակի պլանը:

Իրագործվում են կառավարումը կատարելագործելու խոշոր միջոցառումներ: Այս տարվա սկզբից արդյունաբերության բոլոր ձեռնարկություններն ու միավորումները փոխադրվել են տնտեսավարման փորձով ստուգված մեթոդների: Մի շարք ճյուղեր, ձեռնարկություններ ու միավորումներ սկսել են աշխատել լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման հիմքի վրա:

Լայն ինքնուրույնություն ապահովող և պատասխանատվությունը բարձրացնող սկզբունքներով են սկսել աշխատել էկոնոմիկայի այն ճյուղերը, որոնք անմիջականորեն կապված են բնակչության կարիքների բավարարման հետ, այնպիսիք, ինչպիսիք են ագրոարդյունաբերական համալիրը, թեթև արդյունաբերությունը, առևտուրն ու սպասարկման ոլորտը: Արմատական փոփոխություններ են կատարվում կապիտալ շինարարության կառավարման մեջ: Արտադրանքի բարձր որակի համար պայքարի ուժեղացման նպատակով 1500 առաջատար ձեռնարկություններում արտադրանքի պետընդունում է մտցվել:

Վերակառուցվում է արտաքին տնտեսական գործունեության համակարգը: Ընդլայնվել են ձեռնարկությունների ու ճյուղերի իրավունքները արտաքին տնտեսական կապերում, հետագա զարգացում են ստանում համագործակցության նոր ձևերը՝ ձեռնարկությունների ուղղակի կապերը, համատեղ միավորումները, արտասահմանյան պարտնյորների հետ մասնագիտացումն ու արտադրական կոոպերացումը:

Ժողովրդական տնտեսության կառավարման կոմպլեքսային համակարգի անցնելու նպատակով ստեղծվել են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի փոխկապակցված ճյուղերի խմբերի կառավարման մշտական գործող մարմիններ: Մշակվել է պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի նախագիծը, պատրաստվում են նոր տնտեսական մեխանիզմի պայմաններում կենտրոնական տնտեսական մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների ֆունկցիաների կատարելագործմանը վերաբերող փաստաթղթեր, միավորումների ու ձեռնարկությունների բազայի վրա տնտհաշվարկային արտադրական խոշոր կառուցվածքների նոր ձևերի կազմակերպման, ինչպես նաև մի շարք այլ կարևոր հարցերի վերաբերյալ առաջարկություններ:

Իրականացվում են սոցիալական ոլորտում տիրող իրադրության բարելավման խոշոր միջոցառումներ: Մշակվել և կենսագործվում են արտադրական ճյուղերում աշխատանքի վարձատրության բարձրացման նոր սկզբունքներ: Մենք անշեղորեն բռնել ենք հավասարեցումից հրաժարվելու, աշխատանքի քանակին ու որակին համապատասխան բաշխման սոցիալիստական սկզբունքը հետևողականորեն պահպանելու կուրսը:

Միաժամանակ վերացված են անհատական աշխատանքային գործունեության անհիմն սահմանափակումները: Այն զարգացնելու համար ներկայումս նպաստավոր պայմաններ են ստեղծվում: Բնակչության պահանջարկը ավելի լրիվ բավարարելու շահերից ելնելով՝ խրախուսվում է կոոպերատիվների կազմակերպումը արտադրության ու սպասարկման տարբեր ոլորտներում:

Բնակարանային շինարարության մեջ տիրող դրությունը վերլուծելու հիման վրա և հաշվի առնելով ծրագրային խնդիրը՝ մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքին առանձին բնակարանով ապահովելը, լրացուցիչ ռեզերվներ են հայտնաբերվել բնակարանների կառուցման տեմպերն արագացնելու և դրանց որակը բարելավելու համար: Այդ նպատակի համար լրացուցիչ հատկացվում է արտադրական կապիտալ ներդրումների 10 տոկոսը, որը թույլ կտա բնակարանային շինարարության ծավալները հնգամյա պլանով նախատեսվածի համեմատությամբ արդեն 1987 թվականին մեծացնել 9,1 միլիոն քառակուսի մետրով կամ գրեթե 8 տոկոսով:

Ընդլայնվում է բնակկոոպերատիվ և անհատական շինարարությունը: Դրա հա-



մար արտոնյալ վարկեր են տրամադրվում և անհրաժեշտ ռեսուրսներ հատկացվում, միջոցառումներ են իրականացվում զարգացնելու ձեռնարկությունների միջոցների հաշվին բնակարանների կառուցման տնտեսական եղանակը, մեծացնելու շինարարության արտադրական բազան և այլն:

Նախատեսված է բժշկական հիմնարկների կառուցման ու վերակառուցման ծրագիր, ավելացվում են հայրենական դեղորայքի և բժշկական սարքավորումների թողարկման կարողությունները, արագացվում է բուժսպասարկման և բժշկագիտության կազմակերպման նոր ձևեր ներդնելու ու զարգացնելու աշխատանքը: Դրա հետ օրգանապես կապված՝ միջոցառումներ են իրականացվում բնակչության աշխատանքի ու կենցաղի պայմանները առողջացնելու, պրոֆիլակտիկայի ընդլայնման, հարբեցողությունը և ալկոհոլիզմը արմատախիլ անելու, հիվանդացությունը կրճատելու նպատակով: Բարձրացվում է բուժաշխատողների աշխատավարձը:

Այսպիսով, ընկերներ, նախատեսվածի ու ձեռնարկվածի նույնիսկ հակիրճ ամփոփումը ցույց է տալիս, թե ինչքան մասշտաբային է երկրում ծավալված վերակառուցման աշխատանքը: Գործերի ծավալը վիթխարի է, բայց այլ կերպ չի էլ կարող լինել: Կուսակցությունը իրավունք չունի թուլացնել ուշադրությունը վերակառուցման և ոչ մի տեղամասի նկատմամբ: Ամբողջ նախատեսվածը պետք է անպայման կենսագործել, կատարել ճշտիվ ու ժամկետին:

Հասկանալի է, մի շարք միջոցառումներ, որ մշակում ենք և իրականացնում, միանգամից չէ, որ իրական հատույց կտան: Բայց արդեն այսօր հասարակության մեջ տիրող բուն մթնոլորտը, նոր տրամադրվածությունը փոխում են վերաբերմունքը աշխատանքի հանդեպ, իրական, գործնական արդյունքներ տալիս:

Այդ են վկայում նաև հնգամյակի առաջին տարվա պլանի կատարման արդյունքները: Արտադրված ազգային եկամուտն աճել է 4,1 տոկոսով՝ պլանով նախատեսված 3,9 տոկոսի և տասնմեկերորդ հնգամյակում 3,6 տոկոս տարեկան միջին աճի համեմատ: Արդյունաբերական արտադրության աճը կազմել է 4,9 տոկոս, որը մեկ երրորդով ավելի է, քան տասնմեկերորդ հնգամյակի տարեկան միջին աճը, և առավել բարձրն է վերջին ինը տարում:

Դուք գիտեք, որ տասներկուերորդ հնգամյակը մեզ համար վճռորոշ նշանակություն ունի հայրենական մեքենաշինության արդիականացման, արտադրական ապարատի նորացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում: Մեքենաշինական համալիրի առաջանցիկ զարգացման խնդիրը մեծ դժվարություններով է լուծվում, բայց գործն արդեն հունի մեջ է ընկել: Արդյունաբերական ռոբոտների թողարկումը տարվա ընթացքում ավելացավ 14 տոկոսով, ավտոմատացված արտադրական ճկուն համակարգերինը՝ 2,6 անգամ, արտադրական մոդուլներինը՝ 2,2 անգամ, վերամշակող կենտրոններինը՝ 1,4 անգամ: 30 տոկոսով աճեցին գործող մեքենաշինական ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման կապիտալ ներդրումները: Քաղբյուրոն մշտապես վերահսկողության տակ կպահի մեքենաշինության ծրագրի իրականացումը: Մենք հուսով ենք, որ մեքենաշինարարները կկատարեն իրենց առջև դրված խնդիրները:

Փոքր-ինչ շտկվում են գործերը ինդուստրիայի նաև մի շարք այլ ճյուղերում: Տարին վատ ցուցանիշներով չեզրափակեցին սև մետալուրգիան, ածխի ու գազի արդյունաբերությունը, հաղթահարվում է հետ մնալը նավթարդյունահանման բնագավառում:

Ամբողջությամբ վերցված արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը աճել է 4,6 տոկոսով՝ պլանային առաջադրանքի 4,1 տոկոսի դիմաց: Դրա հաշվին է ստացվել արտադրանքի տարեկան աճի 96 տոկոսը: Երկար տարիների ընթացքում առաջին անգամ նկատելիորեն իջել է նրա ինքնարժեքը: Արագացել է նյութական միջոցների շրջանառությունը, նվազել են չտեղակայված, այդ թվում՝ ներմուծված, սարքավորումների պաշարները:

Բարելավում կա ագրարային հատվածի զարգացման ասպարեզում: Նախորդ հնգամյակի տարեկան միջին ցուցանիշների համեմատությամբ 1986 թվականին հացահատիկի արտադրությունը ավելացավ գրեթե 30 միլիոն տոննայով, կամ 17 տոկոսով, կարտոֆիլինը՝ գրեթե 9 միլիոն տոննայով, կամ 11 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ գրեթե 3 միլիոն տոննայով, կամ 4 տոկոսով, մսինը՝ 1,5 միլիոն տոննա-

յով, կամ 9 տոկոսով, կաթինը՝ 6,5 միլիոն տոննայով, կամ 7 տոկոսով, ձվինը՝ գրեթե 6 միլիարդով, կամ 8 տոկոսով:

Ինչպես տեսնում եք, ընկերներ, սկսել է աճել մթերքների արտադրությունը, որը մենք կարևորագույն ցուցանիշների մեծամասնության գծով չունեինք երկար տարիներ: Բայց պետք է ասել, որ այնպիսի կուլտուրաների գծով, ինչպիսիք են բանջարեղենը, մրգերը, արևածաղիկը, բամբակը, կամ աննշան աճ է առաջվում, կամ դրանց արտադրությունը մնացել է նույն մակարդակի վրա:

Կարևոր է նշել նաև կոլտնտեսությունների և սովխոզների գործունեության ֆինանսատնտեսական հիմնական ցուցանիշների բարելավումը: Հանրային տնտեսությունում աշխատանքի արտադրողականությունը տարվա ընթացքում բարձրացել է 6,9 տոկոսով, շահութաբերությունը կազմել է 19 տոկոս, երկու միլիարդ ռուբլով աճել է շահույթը:

Նշելով էկոնոմիկայի զարգացման դրական տեղաշարժերը, դրա հետ մեկտեղ պետք է ասել, որ մեծ կորուստների և անարտադրական ծախսերի, ապրանքաշրջանառության ընդլայնման առաջադրանքները չկատարելու հետևանքով սպառման և կուտակման համար օգտագործվող ազգային եկամտի աճի տարեկան պլանը չկատարվեց:

Չնայած անցյալ տարվա համեմատությամբ զգալի ավելացմանը, այդուհանդերձ, պլանային առաջադրանքներից ցածր էր այնպիսի կարևորագույն ցուցանիշների հավելաճը, ինչպիսիք են բնակչության մեկ շնչի հաշվով ռեալ եկամուտները, գյուղատնտեսության համախառն արտադրանքը, արդյունաբերության մեջ սպառման առարկաների արտադրությունը, կապիտալ ներդրումների ծավալն ու հիմնական ֆոնդերի գործարկումը, ժողովրդական տնտեսության շահույթը: Լուրջ փոփոխություններ տեղի չունեցան ինվեստիցիոն պրոցեսում, գործարկվել է պետական պլանի անվանացուցակի մեջ մտցված օբյեկտների սոսկ երկու երրորդը:

Մեծ դժվարությամբ, բայց և այնպես փոփոխություններ սկսվեցին սոցիալական ոլորտում: Կարգապահությունն ամրապնդելու նպատակով հարբեցողության դեմ պայքարելու համար ձեռնարկված միջոցներից հետո 60-ական թվականներից ի վեր առաջին անգամ կրճատվեց դժբախտ պատահարների թիվը, նվազեցին աշխատաժամանակի կորուստները: Հանցագործությունների ընդհանուր քանակը նվազել է գրեթե մեկ քառորդով, իսկ ծանր հանցագործությունների գծով՝ մեկ երրորդով: Ամենուրեք ուժեղացել է պայքարը օրինականության և կարգուկանոնի խախտումների դեմ:

Աճել են բնակարանային շինարարության ծավալները, որը թույլ տվեց 1985 թվականի համեմատությամբ բնակարանների գործարկումն ավելացնել 5,2 միլիոն քառակուսի մետրով: Կառուցվել են ավելի շատ մանկապարտեզներ ու մանկամսուրներ, դպրոցներ, պոլիկլինիկաներ ու հիվանդանոցներ, մշակույթի և կենցաղի հիմնարկներ:

Կարճ ասած, դրական տեղաշարժեր կան: Բայց չափից ավելի մեծ է այդ կարևոր ոլորտում կուտակված պրոբլեմների բեռը, մենք դեռևս չափից ավելի երկչոտությամբ ենք պայքարում դրանց լուծման համար:

Ինչպես գիտեք, մեծ բարդություններով ռեզերվներ ի հայտ բերվեցին բնակարանային շինարարության ընդլայնման, կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման համար: Բայց, ցավոք, բոլորը չէ, որ հարկ եղածին պես օգտվեցին ընձեռված հնարավորություններից: Այդ օբյեկտներից շատերի շինարարության պլանները չեն կատարված: Դրա պատճառներն են ոչ միայն շինարարների անկազմակերպվածությունը, այլև ձեռնարկությունների, մինիստրությունների, տեղական սովետների, կուսակցական կոմիտեների անբավարար ուշադրությունը:

Մեզ մոտ դժվարություններ են մնում պարենային և արդյունաբերական ապրանքների առևտրի բնագավառում, քաղաքային տրանսպորտի և կոմունալ տնտեսության, առողջապահության ու մշակույթի հիմնարկների աշխատանքում: Ընդհանուր առմամբ մենք արմատական փոփոխությունների չհասանք սոցիալական ոլորտի զարգացման բնագավառում և զգալի չափով մնացել ենք հին մոտեցումների ազդեցության տակ:

Ավարտելով այն աշխատանքի բնութագիրը, որ կուսակցությունը, ամբողջ ժողովուրդը կատարում են XXVII համագումարի որոշումների իրագործման ուղղությամբ,



ես կցանկանայի ասել ահա թե ինչ: Մեզ՝ Կենտրոնական կոմիտեի անդամներիս համար շատ կարևոր է լինել իրատեսության, արված օբյեկտիվ գնահատականի դիրքերում, ստացված արդյունքներին նայել ոչ միայն անցյալի դիրքերից, այլև նախ և առաջ ելնելով մեր հայտարարած պլաններից, ժողովրդին տված խոստումներից: Սա է միակ ճշմարիտ կուսակցական մոտեցումը:

Մենք պետք է պարզորոշ գիտակցենք, որ տակավին գտնվում ենք վերակառուցման նախնական փուլում: Հիմնական և ամենաբարդ աշխատանքն առջևում է: Պետք է հաստատակամորեն, քայլ առ քայլ, առանց վարանումների առաջ ընթանալ, սթափ գնահատել արվածը, չվախենալ սխալներն ուղղելուց, որոնել և գտնել առաջացող խնդիրների լուծման նոր եղանակներ ու մեթոդներ, հասնելով պարտադիր առաջխաղացման դեպի նախանշված նպատակները:

Մենք պետք է հիմնավորապես յուրացնենք անցյալի դասը. չի կարելի խզում թույլ տալ որոշումների և դրանց կենսագործման պրակտիկ աշխատանքի միջև: Չի կարելի մեծամտանալ և ինքնահանգստանալ: Մեկ անգամ էլ եմ ասում այն պատճառով, որ դեռ մինչև այժմ էլ բախվում ենք դրան: Պետք է գործել, գործել ու դարձյալ գործել ակտիվորեն, համարձակ, ստեղծագործաբար, բանիմացորեն:

Հարցի նման դրվածքը թելադրվում է նաև նրանով, որ տնտեսական, պետական, սովետական, անգամ կուսակցական շատ մարմիններում, հենց աշխատավորական կոլեկտիվներում դեռևս բնավ էլ բոլորը չէ, որ կյանքի պահանջներին համաքայլ են ընթանում: Քիչ չեն այն մարդիկ, որոնք դանդաղ են թոթափում անցյալի բեռը, սպասողական դիրք են բռնում, իսկ երբեմն էլ բացեիբաց արգելակում գործը, խանգարելով ժողովրդի քաղաքական, հասարակական և աշխատանքային ակտիվության լայն զարգացմանը:

Բոլորը չէ, որ հասկացել են, որ նորովի աշխատել՝ նշանակում է վճռականորեն հրաժարվել հին սովորություններից ու մեթոդներից: Իսկ դա, վերջին հաշվով, կախված է յուրաքանչյուրի քաղաքացիական դիրքորոշումից, հանձնարարված գործի, սեփական պարտականությունների նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքից, որի համար բոլորս պատասխանատու ենք կուսակցության առջև, երկրի առջև, մեր խղճի առջև:

Աշխատավորների, կուսակցական և տնտեսական կադրերի հետ հանդիպումներն ու զրույցները ցույց են տալիս, որ վերակառուցումը ջերմ պաշտպանության է արժանանում: Ժողովուրդը, ինչպես ասում են, սարի պես կանգնած է հանուն վերակառուցման: Բայց ահա թե ինչն է ուշադրություն գրավում: Շատերը, պաշտպանելով նորը, այն կարծիքին են, թե վերակառուցվել պարտավոր են ինչ-որ տեղ վերևում և ինչ-որ ուրիշներ՝ կուսակցական, պետական, տնտեսական մարմինները, մյուս ճյուղերը, համասեռ ձեռնարկությունները, արտադրամասի, ֆերմայի կամ շինհրապարակի իրենց հարևանները: Մի խոսքով, բոլորը, բայց ոչ իրենք:

Ոչ, ընկերներ, իրավացիորեն վերակառուցում պահանջելով բոլոր մակարդակներով, մեզանից յուրաքանչյուրը պետք է վերակառուցումն սկսի իրենից: Նորովի՝ եռանդագին, ստեղծագործաբար, մեկ անգամ ևս ասեմ՝ խղճով պետք է աշխատեն բոլորը՝ բանվորները, կոլտնտեսականները, մտավորականները, առհասարակ բոլորը՝ աշխատավորական կոլեկտիվից մինչև ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և կառավարությունը:

Վերակառուցման վիթխարի գործում մենք՝ կոմունիստներս, հենվում ենք նախ և առաջ բանվոր դասակարգի՝ մեր հասարակության քաղաքական առաջատար ուժի, բարձր գիտակցականության ու կազմակերպվածության, հասարակական նախաձեռնության և աշխատանքային մեծ գործերի վրա:

Բարձր գնահատելով վերակառուցումն իրականացնելու կուսակցության կուրսը, բանվոր դասակարգը, սովետական բոլոր մարդիկ դրա հետ մեկտեղ անհանգստություն են արտահայտում նրա կենսագործման ընթացքի համար: Նրանք կուսակցությանը կոչ են անում չբավարարվել ձեռք բերածով, գործել վճռականորեն, առաջ ընթանալ, անշեղորեն կենսագործել նախատեսված կուրսը: Դրանից, ընկերներ, մենք պետք է քաղաքական հետևություններ անենք:

Քանի որ հասարակության մեջ նման անհանգստություն կա, մեր ջանքերը, ըստ երևույթին, դեռևս անբավարար են: Նշանակում է ամենուրեք և ամեն ինչում չէ, որ







մենք գործում ենք պատշաճ արդյունավետությամբ ու հարձակողաբար: Նշանակում է բնավ էլ ամենուրեք չէ, որ ձեռնարկվող միջոցները ու կատարվող աշխատանքը համապատասխանում են կուտակված պրոբլեմների մասշտաբներին ու սրությանը, ամեն ինչ չէ, որ ընթանում է այնպես, ինչպես ժամանակն է պահանջում: Նշանակում է, ընկերներ, Կենտրոնական կոմիտեն հիմնավոր առիթ ունի խորհրդածությունների և անհրաժեշտ հետևությունների համար:

Իհարկե, մենք հասկանում ենք, որ մտածողության և գործունեության ձևավորված ստերեոտիպների հաղթահարումը բարդ, հիվանդագին պրոցես է, որը պահանջում է ժամանակ և կշռադատված մոտեցում:

Միանգամայն ակնհայտ է, որ այդ պրոցեսը չի կարող ընթանալ ինքնաբերաբար, քաղաքական, սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի վերափոխումներից մեկուսացած:

Մենք պետք է հստակորեն պատկերացնենք, որ այսօր պահանջվում է միջոցառումների մի ամբողջ համակարգ: Դրանք են՝ թե՛ արդիականության իրողությունների և ապագայի խորապես հիմնավորված գիտական կանխատեսման վրա հիմնըվող տեսական դրույթների մշակումը, թե՛ հասարակական գիտակցության փոփոխումը, թե՛ դեմոկրատական հաստատությունների հետևողական զարգացումը, թե՛ մասսաների քաղաքական կուլտուրայի դաստիարակումը, թե՛ տնտեսավարման մեխանիզմի, կազմակերպական կառուցվածքների վերակառուցումը և թե, իհարկե, ակտիվ սոցիալական քաղաքականության վարումը:

Միայն այդպես կարող է վերացվել արգելակման մեխանիզմը, իսկ արագացման ուժերը իրենց համար անհրաժեշտ ազատ ասպարեզ կստանան:

Կարծում եմ, Կենտկոմի այսօրվա պլենումը պետք է կուսակցությանը և ժողովըրդին ասի, որ մեզ սպասում է ոչ դյուրին պայքար, որը յուրաքանչյուր կոմունիստից, յուրաքանչյուր քաղաքացուց պահանջում է բարձր գիտակցականություն և կազմակերպվածություն, տոկունություն, անսահման անձնվիրություն:

Ընկերնե՛ր: Կենտկոմի ապրիլյան պլենումի նախօրեին մեր հասարակությունում ստեղծված վիճակի վերլուծությունը, վերակառուցման փորձը ամենայն սրությամբ են առաջ քաշում ամենագլխավոր հարցը. երաշխիքներ ունե՞նք, արդյոք, որ վերափոխումների սկսված պրոցեսը կհասցվի մինչև վերջ, որ նախկին սխալները չեն կրկնվի, և մենք կկարողանանք ապահովել մեր հասարակության լիարյուն զարգացումը:

Այս հարցերին քաղբյուրոն պատասխանում է դրականորեն. այո, այդպիսի երաշխիքներ մենք ունենք:

Դա կուսակցության և ժողովրդի միասնական կամքն է, ընդհանուր գործողությունները, որոնք միավորված են վերապրածի փորձով, սոցիալիստական հայրենիքի ներկայի ու ապագայի համար պատասխանատվության գիտակցությամբ:

Դա սոցիալիստական կարգերի դեմոկրատիզմի համակողմանի զարգացումն է, երկրի կյանքի բոլոր հարցերի լուծմանը ժողովրդի ռեալ և ավելի ու ավելի ակտիվ մասնակցությունը, դա հրապարակայնության, հասարակական վերահսկողության, քննադատության և ինքնաքննադատության լենինյան սկզբունքների լիակատար վերահաստատումն է, դա քաղաքականության անկեղծությունն է, որ կայանում է խոսքի ու գործի միասնության մեջ:

Դա, վերջապես, բուն կուսակցության առողջ զարգացումն է, սեփական գործունեության քննադատական վերլուծման կարողությունը, իր աշխատանքի ձևերն ու մեթոդները նորացնելու, հեղափոխական տեսության հիման վրա հասարակության զարգացման հեռանկարները որոշելու և կյանքի կողմից առաջադրվող նոր խնդիրների լուծման համար պայքարելու հմտությունը:

Հենց սոցիալիստական դեմոկրատիզմի խորացումը, սովետական մարդկանց ստեղծարար գործունեությունը, պրակտիկ գործերում կոմունիստների ավանգարդային դերը կապահովեն XXVII համագումարի նախանշած հեղափոխական վերափոխումների թե՛ հաջողությունը և թե՛ անշրջելիությունը:



## II. ԽՈՐԱՑՆԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԸ, ԶԱՐԳԱՑՆԵԼ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՔՆԱԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Ընկերնե՛ր: Հիմա մենք ավելի լավ, քան երբևէ, հասկանում ենք սոցիալիզմի և դեմոկրատիայի կենդանի, ներքին կապի մասին լենինյան մտքի ամբողջ խորությունը: Մեր երկրի ամբողջ պատմական փորձը համոզչորեն ցույց տվեց, որ սոցիալիստական կարգերը իրականում ապահովել են քաղաքացիների քաղաքական և սոցիալ-տնտեսական իրավունքները, նրանց անձնական ազատությունները, բացահայտել սովետական դեմոկրատիայի առավելությունները, յուրաքանչյուր մարդու մեջ վստահություն ստեղծել վաղվա օրվա հանդեպ:

Բայց վերակառուցման պայմաններում, երբ այդպիսի սրությամբ ծառացել է մարդկային գործոնի ակտիվացման խնդիրը, մենք պետք է մեկ անգամ ևս անդրադառնանք սոցիալիստական կարգերի դեմոկրատիզմի մաքսիմումի մասին լենինյան հարցադրմանը, որի դեպքում մարդն իրեն զգում է տեր և արարող:

«Մենք պետք է,— ասում էր Վ. Ի. Լենինը,— հետևենք կյանքին, մենք պետք է ստեղծագործության լիակատար ազատություն տանք ժողովրդական մասսաներին»:

Այո, դեմոկրատիան, որի էությունը աշխատավոր մարդու իշխանությունն է, դա քաղաքական և քաղաքացիական լայն իրավունքների վերափոխումներով նրա շահագրգռության, դրանց իրականացմանը նրա գործնական մասնակցության իրականացման ձևն է:

Հասարակական գիտակցության մեջ ավելի ու ավելի է հաստատվում մի հասարակ և պարզ միտք. տանը կարգուկանոն կարող է հաստատել լոկ այն մարդը, որն իրեն զգում է նրա տերը: Այս ճշմարտությունն արդարացի է ոչ միայն առօրեական, այլև հասարակական-քաղաքական իմաստով: Անհրաժեշտ է, որ այն անշեղորեն իրականացվի գործնականում: Կրկնում եմ՝ գործնականում: Առանց դրա մարդկային գործոնը անարդյունավետ կդառնա:

Միայն սոցիալիզմին ներհատուկ դեմոկրատական ձևերի հետևողական զարգացման, ինքնակառավարման ընդլայնման միջոցով է հնարավոր մեր առաջընթաց շարժումը արտադրության, գիտության և տեխնիկայի, գրականության, մշակույթի և արվեստի մեջ, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում: Միայն այդպիսի ուղին է ապահովում գիտակցական կարգապահություն: Միայն դեմոկրատիայի միջոցով և դեմոկրատիայի շնորհիվ է հնարավոր բուն վերակառուցումը: Միայն այդպես կարելի է ազատ ասպարեզ բացել սոցիալիզմի ամենահզոր ստեղծարար ուժի՝ ազատ երկրում ազատ աշխատանքի և ազատ մտքի համար:

Ահա թե ինչու կուսակցության անհետաձգելի խնդիրն է դառնում սովետական հասարակության հետագա դեմոկրատացումը: Փաստորեն դա է հենց ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը խորացնելու ապրիլյան պլենումի, ՍՄԿԿ XXVII համագումարի կուրսի էությունը: Խոսքը, անշուշտ, մեր քաղաքական սիստեմի ինչ-որ բեկման մասին չէ: Մենք պետք է առավելագույն արդյունավետությամբ օգտագործենք նրա բոլոր հնարավորությունները, կուսակցության, սովետների, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքը հագեցնենք խոր դեմոկրատական բովանդակությամբ, նոր կյանք հաղորդենք հասարակական օրգանիզմի բոլոր բջիջներին:

Այդ պրոցեսը երկրում արդեն ընթանում է: Ավելի լիարյուն է դառնում կուսակցական կազմակերպությունների կյանքը: Ընդլայնվում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Ավելի ակտիվորեն են սկսել գործել մասսայական ինֆորմացիայի միջոցները: Սովետական մարդիկ լավ են զգում հրապարակայնության բարերար ազդեցությունը, որը դառնում է հասարակության կյանքի նորմա:

Սկզբունքայնության և քննադատության մթնոլորտում անցան ստեղծագործական միությունների համագումարները: Կազմավորվում են նոր հասարակական կազմակերպություններ: Իր ծննդյան մասին է հայտարարել պատերազմի և աշխատանքի վետերանների համամիութենական կազմակերպությունը: Ձևավորված է մշակույթի

սովետական փոնդ: Աշխատանքը է կատարվում կանանց խորհուրդների ստեղծման նպատակով: Այս ամենի մեջ նկատելի է աշխատավորների հարաճուն մասնակցությունը հասարակական գործերին, երկրի կառավարմանը:

Ինչպիսի՞ ուղիներ է տեսնում քաղբյուրոն սովետական հասարակության դեմոկրատիզմի հետագա խորացման համար:

Մենք կկարողանանք ժողովրդի նախաձեռնությունն ու ստեղծագործությունը իսկապես բարձրացնել, եթե մեր դեմոկրատական հաստատությունները ակտիվորեն և ռեալ կերպով ազդեն յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի իրավիճակի վրա՝ լինի դա պլանավորում թե աշխատանքի կազմակերպում, նյութական և մյուս բարիքների բաշխում, առավել հեղինակավոր և բանիմաց մարդկանց ընտրություն և ղեկավար պաշտոններում նրանց առաջադրում:

Կարելի է վստահորեն ասել, որ յուրաքանչյուր սովետական մարդ այդ փոփոխությունները որքան ավելի շուտ զգա սեփական փորձով, այնքան ավելի ակտիվ կլինեն նրա քաղաքացիական դիրքորոշումը, բոլոր հասարակական, պետական գործերին նրա մասնակցությունը:

Առաջնակարգ նշանակություն ունեն արտադրությունում դեմոկրատիայի զարգացումը, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքում իրոք ինքնավարական սկզբունքների հետևողական արմատավորումը: Էկոնոմիկան հասարակության կյանքի վճռական ոլորտն է: Այստեղ օրնիբուն զբաղված են տասնյակ միլիոնավոր մարդիկ: Ահա թե ինչու արտադրությունում դեմոկրատիայի զարգացումն ամբողջությամբ վերցրած սոցիալիստական դեմոկրատիայի խորացման և ընդլայնման կարևորագույն ուղղությունն է: Դա այն լծակն է, որը կօգնի ապահովելու աշխատավորների լայն և ակտիվ մասնակցությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, թույլ կտա խուսափել բազմաթիվ սխալներից և վրիպումներից:

Կարևորագույն գործնական խնդիր է ստեղծել այնպիսի պայմաններ, արմատավորել արտադրության կազմակերպման այնպիսի ձևեր, որոնք յուրաքանչյուր աշխատավորի թույլ տան իրեն զգալ ձեռնարկության իսկական տեր:

Իսկ դա բարձր և պատասխանատու դիրք է: Այն ոչ միայն գործերի իրական կառավարման լայն իրավունքներ է տալիս, այլև բարձր պատասխանատվություն է ենթադրում այն ամենի համար, ինչ տեղի է ունենում աշխատավորական կոլեկտիվում:

Սոցիալիստական շինարարության ընթացքում հաստատվել են արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության բազմապիսի ձևեր: Աշխատավորական կոլեկտիվների կյանքն աներևակայելի է առանց կուսակցական, արհմիութենական, կոմերիտական, մյուս հասարակական կազմակերպությունների: Վերջին ժամանակներս մեծանում է բանվորական ժողովների, կոլեկտիվ պայմանագրերի դերը, ծնունդ են առել դեմոկրատիայի նոր ձևեր, ինչպիսիք են բրիգադների և արտադրամասերի խորհուրդները, պայմաններ են հասունացել այդ ճանապարհին նաև հետագա քայլերի կատարման համար:

Կյանքն ինքն է օրակարգի հարց դարձրել այնպիսի հիմնարար իրավական ակտի մշակման անհրաժեշտությունը, ինչպիսին է պետական ձեռնարկության մասին օրենքը, որի նախագիծը ձեզ բաժանված է: Այդ օրենքը կոչված է արմատապես փոխելու տնտեսավարման պայմաններն ու մեթոդները էկոնոմիկայի հիմնական օղակում, ձեռնարկությունների գործունեության մեջ վավերացնելու պլանային սկզբունքի ու լրիվ տնտհաշվարկի, ինքնուրույնության ու պատասխանատվության զուգակցումը, օրինականացնելու մասսաների ստեղծագործությամբ ծնված ինքնակառավարման նոր ձևերը:

Օրենքում ենթադրվում է իրագործել կուսակցական համագումարի կարևորագույն հիմնադրույթներից մեկը, այն է՝ անմիջական դեմոկրատիայի արդյունավետ օգտագործման գիծը: Ըստ նախագծի աշխատավորական կոլեկտիվների ընդհանուր ժողովները և խորհուրդները արտադրական, սոցիալական և կադրային գործերի հետ կապված հարցերի լուծման լիազորություններով օժտելը խոշոր քաղաքական միջոցառում կդառնա, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «իսկական ժողովրդական ինքնավարության» անցնելիս:

Պետական ձեռնարկության մասին օրենքի հետևողական կենսագործումը ներկայումս տնտեսական ոլորտում իրականացվող միջոցառումների կոմպլեքսի հետ զուգորդված, կստեղծի, ինչպես մենք ենթադրում ենք, ժողովրդական տնտեսության ընդհանուր առմամբ նոր իրավիճակ, կդառնա էկոնոմիկայի զարգացման արագացուցիչ, կհանգեցնի հասարակական կյանքի շատ կողմերի որակական կատարելագործմանը: Հաշվի առնելով այս օրենքի հսկայական նշանակությունը, քաղբյուրոն առաջարկում է նրա նախագիծը ներկայացնել համաժողովրդական քննարկման: Կարծում եմ, որ Կենտկոմի անդամները կպաշտպանեն այդ առաջարկությունը:

Էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի կառավարումը դեմոկրատացնելու լայն և դեռ բնավ էլ չօգտագործված հնարավորություններ ունեն մեր կոլտնտեսությունները, ամբողջությամբ վերցրած՝ սոցիալիստական կոոպերացիան:

Ագրոարդյում կառավարման համակարգի վերակառուցումը, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում կոոպերացման հետագա զարգացման մասին որոշումը լավ նախադրյալներ են ստեղծում այդ հնարավորությունների օգտագործման համար: Այդ կապակցությամբ, մեր կարծիքով, նպատակահարմար կլինեն անցկացնել կոլտնտեսականների հերթական համագումար, այնտեղ քննարկել կոլտնտեսային կյանքի հասունացած պրոբլեմները և անհրաժեշտ փոփոխություններ կատարել կոլտնտեսության օրինակելի կանոնադրության մեջ:

Քաղբյուրոն ակտիվորեն պաշտպանում է շատ հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում գործունեության մյուս կոոպերատիվ ձևերի ընդլայնման նպատակով արդեն ձեռնարկվող գործնական քայլերը: Դա թույլ կտա առավել լրիվ բավարարել բազմաթիվ ապրանքների ու սպասարկումների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջմունքները, ինչպես նաև լրացուցիչ պայմաններ կստեղծի էկոնոմիկայի ոլորտում դեմոկրատիզմի զարգացման համար, մարդու հնարավորությունների լավագույն իրացման համար:

Հարկավոր է, ընկերներ, վճռականորեն հաղթահարել տատանումները կոոպերատիվ շարժման հարցում, որոնք եղել են անցյալում, ասենք դեռ նկատվում են նաև այսօր: Կոոպերացիան ոչ միայն չի սպառել իր հնարավորությունները, այլև մեծ հեռանկարներ ունի:

Ինչո՞ւ եմ ես վերադառնում այս հարցին ու սրում այն: Նրա համար, որ ՍՄԿԿ XXVII համագումարից հետո էլ չնայած նյութատեխնիկական մատակարարման, կենցաղային սպասարկման ու հասարակական սննդի, կոմունալ տնտեսության ոլորտում, տեղական արդյունաբերության ու շինարարության մեջ կոոպերացիայի զարգացման մասին Կենտրոնական կոմիտեի ու կառավարության ընդունած որոշումներին, գործը պատշաճ չափ չստացավ: Նրա ճանապարհին ամեն տեսակ խոչընդոտներ են հարուցվում, դեռևս ուժեղ են հակումը կառավարման վարչաբյուրոկրատական մեթոդների նկատմամբ, տնտեսավարման այն ձևերը չընդունելը, որոնք չեն համակերպվում ավանդաբար առաջացած պատկերացումների հետ, թեև դրանք կենսականորեն անհրաժեշտ են, խթանում են աշխատավորների նախաձեռնությունը, բարձրացնում նրանց սոցիալական ակտիվությունը:

Որոշ ընկերների համար, ինչպես երևում է, դժվար է հասկանալ, որ դեմոկրատիզմը սոսկ լոզունգ չէ, այլ վերակառուցման էությունն է: Հարկավոր է փոխել ունեցած հայացքներն ու սովորությունները կյանքի հունից դուրս չմնալու համար: Սա մեր հաստատակամ խորհուրդն է բոլոր կասկածամիտներին ու դանդաղաշարժներին:

Հատկապես պետք է առանձնացնել ձեռնարկությունների, արտադրությունների, արտադրամասերի, բաժանմունքների, տեղամասերի, ֆերմաների ու օղակների ղեկավարների, բրիգադավարների ու վարպետների ընտրության հարցը: Վերակառուցման արդի փուլը, տնտեսավարման նոր մեթոդներին անցումը, տնտհաշվարկը, ինքնաֆինանսավորումն ու ինքնածախսածածկումն այդ խնդիրը դնում են գործնական հիմքի վրա: Դա կարևոր, անհրաժեշտ միջոցառում է, և, անկասկած, հավանությամբ կընդունվի աշխատավորների կողմից:

Մենք սկսել ենք լայն քայլերով գնալ ձեռնարկությունները լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման անցնելու ուղիով, մտցրել ենք պետընդունում: Դա նշանակում է, որ ձեռնարկության եկամուտները, աշխատավորական կոլեկտիվի անդամների խթանման բոլոր ձևերը, սոցիալական պահանջմունքների բավարարման մասշտաբները ամբողջովին կախված կլինեն աշխատանքի վերջնական արդյունքներից, թողարկված արտադրանքի ու մատուցված ծառայությունների քանակից ու որակից:

Նման պայմաններում բանվորների ու կոլտնտեսականների համար ամենևին էլ միևնույնը չէ, թե ով է գլխավորում ձեռնարկությունը. արտադրամասը, տեղամասը, բրիգադը: Քանի որ կոլեկտիվի բարօրությունը կախման մեջ է դրվում ղեկավարների ընդունակություններից, ապա աշխատավորները պետք է նաև ռեալ հնարավորություններ ունենան ներգործելու նրանց ընտրության վրա, վերահսկելու գործունեությունը:

Երկրում կուտակվել է ղեկավարների բաց, հրապարակային ընտրության որոշակի փորձ: Այսպես, Կրասնոդարի երկրամասում, սկսած 1983 թվականից, հաշվի առնելով կոլեկտիվների ու սկզբնական կուսակցական կազմակերպությունների կարծիքը, առաջ է քաշվել ավելի քան ութուկես հազար ղեկավար աշխատող: Ընդ որում, ավելի քան 200 թեկնածություն աշխատավորների պաշտպանությունը չի ստացել և մերժվել է: Նույնպիսի փորձ կա նաև մի շարք այլ տեղերում: Դա լավ է ընդունվում մարդկանց կողմից, դրականորեն է անդրադառնում աշխատանքի արդյունքների վրա:

Մի խոսքով, ընկերներ, ինչ տեսակետից էլ որ մենք մոտենալու լինենք այդ կարևոր գործին, հետևությունը մեկն է՝ հասունացել է ամենուրեք ընտրական սկզբունքների կիրառման հիմքի վրա փոփոխությունների, ձեռնարկությունների ղեկավար կադրերի ձևավորման պրոցեսի դեմոկրատացման անհրաժեշտությունը: Դա, ինչպես հասկանում եք, որակապես նոր իրավիճակ է, արտադրության կառավարման աշխատավորների սկզբունքորեն այլ բնույթի մասնակցություն, իր գործունեության արդյունքների համար կոլեկտիվի դերի ու պատասխանատվության էական բարձրացում:

Այս ամենն անհրաժեշտ է հաշվի առնել այդ հարցի գործնական լուծման ընթացքում: Բայց մի միտք կցանկանայի հայտնել արդեն այժմ: Խոսքը միանձնյա ղեկավարման մասին է: Մենք գտնում ենք, որ ընտրովիությունը ոչ միայն չի գցում, այլև բարձրացնում է ղեկավարի հեղինակությունը, որն զգում է իրեն ընտրած մարդկանց պաշտպանությունը, բարձրացնում պատասխանատվությունը գործի համար, փոխադարձ պահանջկոտությունն ու խստապահանջությունը կոլեկտիվում:

Նորովի պետք է իմաստավորվի կուսակցական, հասարակական կազմակերպությունների, տնտեսական կառավարման մարմինների դերը: Քիչ անելիքներ չկան մեր բոլոր կադրերի մեջ այն բանի ճիշտ ըմբռնում դաստիարակելու գործում, որ արտադրությունում դեմոկրատիայի ընդլայնումը ենթադրում է միանձնյա ղեկավարման և կոլեգիալության օրգանական զուգորդում, դեմոկրատական ցենտրալիզմի խորացում, ինքնակառավարման զարգացում:

Քաղբյուրոն մեր կյանքի դեմոկրատացման սկզբունքային ուղղությունը համարում է սովետական ընտրական համակարգի կատարելագործումը: XXVII համագումարի հանձնարարությամբ դրա վերաբերյալ համապատասխան առաջարկություններ են մշակվում:

Ի՞նչ պետք է այստեղ ասել: Ընտրական համակարգի գոյություն ունեցող մեխանիզմը ապահովում է իշխանության ընտրովի մարմիններում բնակչության բոլոր խավերի ներկայացուցչությունը: Ներկա սովետներում բոլոր մակարդակներով ներկայացված են բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը, կանայք ու տղամարդիկ, վետերաններն ու երիտասարդները, երկրի բոլոր ազգերն ու ազգությունները: Ընտրովի մարմիններն արտացոլում են սովետական հասարակության սոցիալ-պրոֆեսիոնալ ու ազգային կառուցվածքը, ամբողջ բնակչության շահերի բազմազանությունը: Եվ ինքնըստինքյան դա սոցիալիստական դեմոկրատիայի հսկայական նվաճումն է:

Բայց, ինչպես բոլոր քաղաքական, տնտեսական, սոցիալական հաստատությունները, ընտրական համակարգը չի կարող գտնվել քարացած վիճակում, անմասն լինել վերակառուցումից, հասարակության մեջ զարգացող նոր պրոցեսներից:

Ո՞րն է այդ հարցերի վերաբերյալ աշխատավորների առաջարկությունների ու ցանկությունների էությունը, որոնք ստացվում են **ՍՄԿԿ Կենտրոնական** կոմիտեում, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի Նախագահությունում, մյուս կենտրոնական մարմիններում ու մասսայական ինֆորմացիայի մարմիններում:

Քաղաքական առումով խոսքը ընտրական համակարգի դեմոկրատիզմը խո-



րացնելու, նախընտրական և ընտրական կամպանիայի բոլոր փուլերին ընտրողների ավելի արդյունավետ ու իրական մասնակցության մասին է:

Կոնկրետ առումով առաջարկությունների մեծ մասը հանգեցվում է այն բանին, որ աշխատավորական կոլեկտիվներում ու ըստ բնակության վայրի տեղի ունեցող ընտրողների ժողովներում, ինչպես նաև նախընտրական խորհրդակցություններում, որպես կանոն, քննարկվի մի քանի թեկնածություն, իսկ ընտրություններն անցնեն ավելի խոշոր ընտրական օկրուգներով, որոնցից յուրաքանչյուրում ընտրվեր մի քանի դեպուտատ: Ընկերները գտնում են, որ դա յուրաքանչյուր քաղաքացու թույլ կտար իր վերաբերմունքն արտահայտել թեկնածուների ավելի լայն շրջանակի նկատմամբ, իսկ կուսակցական ու սովետական մարմիններին՝ ավելի լավ իմանալ բնակչության տրամադրություններն ու կամքը:

Արձագանքելով այդ առաջարկություններին, մենք պետք է նորովի հայացք գցենք բուն ընտրությունների կազմակերպման, ժողովրդական դեպուտատների թեկնածուների առաջադրման ու քննարկման պրակտիկայի վրա: Պետք է քվեարկության արարողությունը զերծ պահել ձևականությունից, հոգ տանել այն մասին, որ ընտրական կամպանիան արդեն այս տարի անցնի ավելի լայն դեմոկրատիզմի, այդ պրոցեսին մարդկանց ավելի շահագրգիռ մասնակցության մթնոլորտում:

Իսկ ինչ վերաբերում է ընտրական համակարգի մեջ ճշգրտումներ մտցնելու օրենսդրական ակտին, ապա օգտակար կլիներ դրա նախագիծը նախապես հրապարակել համաժողովրդական քննարկման համար:

Այդ առաջարկությունների իրականացումը առաջին կարևոր քայլը կլիներ պետական իշխանության մարմինների ձևավորման ու գործառության պրոցեսի հետագա դեմոկրատացման ճանապարհին: Բայց, ըստ երևույթին, պետք է քննության առնել նաև ավելի խոր փոփոխություններ, այդ ուղղությամբ արվելիք հետագա քայլերը: Հաշվի առնելով կուտակված փորձն ու նոր խնդիրները, անհրաժեշտ է մեկ անգամ ևս ամենայն մանրամասնությամբ խորամուխ լինել սովետական պետական շինարարության հարցերի վերաբերյալ լենինյան ժառանգությանը, այն օգտագործել այսօր հասարակության առջև կանգնած խնդիրների լուծման համար:

Միանգամայն բնական է, որ սովետական հասարակության հետագա դեմոկրատացման ընդհանուր հունի մեջ պետք է քննարկել նաև ներկուսակցական դեմոկրատիան ընդլայնելու հարցերը:

XXVII համագումարում **ՍՄԿԿ** կանոնադրության մեջ փոփոխություններ ու լրացումներ մտցնելիս, ինչպես հայտնի է, իրացվեցին մի շարք կարևոր դրույթներ՝ ուղղված կուսակցության կյանքի դեմոկրատական սկզբունքների ամրապնդմանը: Այդ աշխատանքը պետք է շարունակել: Նպատակահարմար է թվում խորհրդակցել կուսակցական ղեկավար մարմինների կազմավորման մեխանիզմի կատարելագործման շուրջը:

Այս առթիվ Կենտկոմում բազմապիսի առաջարկություններ են ստացվել: Թույլ տվեք ներկայացնել այն հետևությունները, որ արվել են այդ առաջարկությունների ընդհանրացման հիման վրա:

Նախ և առաջ՝ սկզբնական կուսկազմակերպություններում ընտրովի մարմինների կազմավորման մասին: Այս առումով արված առաջարկությունների մեծ մասի իմաստն այն է, որ կուսակցական բյուրոների և կուսակցական կոմիտեների քարտուղարների ընտրությունների ժամանակ լիակատար ասպարեզ տրվի առանց բացառության բոլոր կոմունիստների կամքի արտահայտմանը, ընտրողների առջև նրանց պատասխանատվության բարձրացման համար:

Անհրաժեշտություն կա մտածելու նաև կուսակցության շրջկոմների, օկրուգկոմների, քաղկոմների, մարզկոմների, երկրկոմների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեների քարտուղարների ընտրության կարգը փոխելու մասին: Այստեղ, ինչպես գտնում են ընկերները, կարելի է դիմել այն բանին, որ քարտուղարները, այդ թվում նաև առաջին քարտուղարները, համապատասխան կուսակցական կոմիտեների պլենումներում ընտրվեն գաղտնի քվեարկությամբ: Ըստ որում, կուսակցական կոմիտեի անդամները իրավունք ունենային քվեարկության ցուցակի մեջ մտցնել ցանկացած քանակությամբ թեկնածություններ: Նման միջոցառումը պետք է լրջորեն բարձրացնի քարտուղարների պատասխանատվությունն իրենց ընտրած կուսակցական կոմիտեների առջև և մեծացնի նրանց

վստահությունն աշխատանքում, թույլ տա ավելի ճիշտ որոշել նրանց հեղինակության չափը:

Իհարկե, կուսակցության մեջ պետք է անսասան մնա կանոնադրական այն սկզբունքը, որի համաձայն վերադաս մարմինների որոշումները պարտադիր են բոլոր ստորադաս կուսակցական կոմիտեների համար, այդ թվում նաև՝ կադրային հարցերի վերաբերյալ ընդունվող որոշումները:

Քաղբյուրոյի կարծիքով, հետագա դեմոկրատացումը պետք է վերաբերի նաև կուսակցության կենտրոնական ղեկավար մարմինների կազմավորմանը: Կարծում եմ, սա միանգամայն տրամաբանական է: Ըստ երևույթին, տրամաբանական կլիներ դեմոկրատացնել ղեկավար մարմինների ընտրությունները նաև մյուս հասարակական կազմակերպություններում:

Կարծում եմ, ընկերներ, որ դուք կհամաձայնեք այն բանի հետ, որ այս բոլոր միջոցառումները կամրապնդեն դեմոկրատական ցենտրալիզմի հիմքերը կուսակցության կյանքում, կնպաստեն կուսակցական շարքերի միասնության ու համախմբվածության ամրապնդմանը, յուրաքանչյուր կոմունիստի, բոլոր կուսակցական կազմակերպությունների, ամբողջ կուսակցության կարգապահության ու պատասխանատվության, ակտիվության բարձրացմանը:

Հնարավոր է, որ հարցեր ծագեն, իսկ մենք չե՞նք բարդացնի կուսակցության ընտրովի մարմինների կազմավորման արարողակարգը, որքանո՞վ է այս ամենն արդարացված և ի՞նչ չափով կօգնի գործին:

Սկսած Կենտկոմի ապրիլյան պլենումից, մենք մշտապես ընդգծում ենք, որ հասարակության մեջ կուտակված պրոբլեմները զգալի չափով կապված են բուն կուսակցության գործունեության մեջ, նրա կադրային քաղաքականության մեջ եղած թերությունների հետ:

Քաղբյուրոն գտնում է, որ ընտրովի մարմինների կազմավորման պրոցեսի հետագա դեմոկրատացումը կուսակցության կենսագործունեության բարձրացման, թարմ ուժերի ներհոսքի, կուսակցական կազմակերպությունների ակտիվ աշխատանքի կարևոր պայմաններից մեկն է, անցյալի սխալները չկրկնելու երաշխիքը:

Կուսակցության մեջ ընտրությունները ձևական ակտ չեն, և մենք պետք է դրանց նախապատրաստությանը մոտենանք մտածված կերպով, բարձր պատասխանատվության ոգով, ելնելով կուսակցության ու հասարակության շահերից:

Հասարակության դեմոկրատացումը նորովի է առաջադրում նաև այն բանի վերահսկողության հարցը, թե ինչպես են աշխատում կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները, նրանց կադրերը: Ինչ վերաբերում է «վերևից» վերահսկողությանը, ապա այստեղ, ինչպես գիտեք, վերջին ժամանակներս նկատելի փոփոխություններ են տեղի ունեցել: Անցյալ են դառնում քննադատության ու վերահսկողության յուրօրինակ «արգելված գոտիները»: Կենտկոմի քաղբյուրոյի ու քարտուղարության նիստերում կանոնավորապես լսվում են միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների ու մարզկոմների հաշվետվությունները, խորապես ու բազմակողմանիորեն քննարկվում են կուսակցության ու հասարակության կյանքի մյուս սկզբունքային հարցերը: Մինիստրությունների ու գերատեսչությունների, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների նկատմամբ զգալիորեն ավելի պահանջկոտ են դարձել ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն ու նրա նախագահությունը:

Թեև, անկեղծ ասեմ, Կենտկոմի քաղբյուրոն, քարտուղարությունն ու կառավարությունը այդ ուղղությամբ տակավին շատ անելիքներ ունեն: Մենք դեռևս առիթ ենք ունենում միևնույն հարցին վերադառնալ մի քանի անգամ, լրացուցիչ միջոցներ ձեռնարկել դրա լուծման համար: Դա մասնավորապես ակնբախորեն ցույց տվեց քաղբյուրոյի վերջին նիստում մեքենաշինության զարգացումն արագացնելու վերաբերյալ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների կատարման ընթացքի քննարկումը: Մենք ընդունում ենք անհրաժեշտ որոշումներ, բայց, առաջվա նման, դրանք լիովին չեն իրականացվում սահմանված ժամկետներում: Դա տեղի է ունենում նաև այն պատճառով, որ շատերը դեռ չեն ազատվել հին սովորությունների, իրենց պարտականությունների նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքի բեռից: Թույլ է կարգապահությունը: Ամենևին էլ ոչ բոլոր ղեկավարներն են



հետևում խոսքի ու գործի միասնության սկզբունքին, ոմանք էլ ավելի շատ խոսում են, քան աշխատում: Դրանից մենք պետք է ամենալուրջ հետևությունները անենք:

Բայց «վերևից» վերահսկողության ամբողջ կարևորությամբ հանդերձ, հասարակության դեմոկրատացման պայմաններում սկզբունքային նշանակություն ունի «ներքևից» վերահսկողության մակարդակի ու արդյունավետության բարձրացումը, որպեսզի յուրաքանչյուր ղեկավար, յուրաքանչյուր պաշտոնատար անձ մշտապես զգա իր պատասխանատվությունն ու կախվածությունը ընտրողներից, աշխատավորական կոլեկտիվներից, հասարակական կազմակերպություններից, առհասարակ՝ կուսակցությունից ու ժողովրդից:

Այստեղ գլխավորը աշխատավոր մարդկանցից եկող ռեալ վերահսկողության բոլոր միջոցների ու ձևերի ստեղծումն է և ամրապնդումը:

Ի՞նչ միջոցներ ու ձևեր ես ի նկատի ունեմ:

Նախ և առաջ՝ հաշվետվությունը: Հասել է ժամանակը անշեղորեն կատարելու ընտրվող և նշանակվող բոլոր պաշտոնատար անձանց կողմից աշխատավորական կոլեկտիվների ու բնակչության առջև սիստեմատիկ հաշվետվության կանոնները: Անհրաժեշտ է, որ ամեն մի այդպիսի հաշվետվություն ուղեկցվի կենդանի և սկզբունքային քննարկումով, քննադատությամբ ու ինքնաքննադատությամբ, գործարար առաջարկություններով և ավարտվի նրա գործունեության գնահատումով, ով հանդես է գալիս հաշվետվությամբ:

Հենց դա կլինի լենինյան այն պահանջի գործնական կատարումը, որ ընտրովի մարմինների ղեկավարների աշխատանքը բաց լինի բոլորի համար, տեսանելի դարձվի մասսային: Եթե մենք հասնենք այդպիսի վերահսկողության, ապա կարելի է չկասկածել, որ կանհետանան վերադաս կազմակերպություններին ուղարկվող բողոքների ու դիմումների պատճառները, դրանցում արծարծվող հարցերի մեծ մասը կլուծվի տեղում: Լայն դեմոկրատիզմի պայմաններում մարդիկ իրենք կարգուկանոն կհաստատեն իրենց կոլեկտիվում, քաղաքում կամ գյուղում:

Վերահսկողության հսկայական հնարավորություններ ունեն ժողովրդական դեպուտատների սովետները, արհմիութենական և մյուս հասարակական կազմակերպությունները: Գերագույն ու տեղական սովետներում պետք է ամրապնդել նստաշրջանների, մշտական հանձնաժողովների ու դեպուտատների աշխատանքի դեմոկրատական սկզբունքները, բարձրացնել սովետների առջև պաշտոնատար անձանց կանոնավոր հաշվետվության, դեպուտատական հարցապնդումների պրակտիկայի գործունությունը: Նման մոտեցումը մասսաների շրջանում էլ ավելի կամրապնդի ժողովրդական իշխանության մարմինների հեղինակությունը:

Կատարելագործելով վերահսկողությունը, պետք է անհետաձգելիորեն կարգավորել ամեն տեսակ ստուգումներն ու տեսչությունները, որոնք հիմա բառացիորեն հեղեղի պես թափվում են ձեռնարկությունների, հիմնարկների ու կազմակերպությունների վրա, մարդկանց կտրում գործից, նյարդայնություն առաջացնում աշխատանքում: Դրանցից ստացվող պրակտիկ օգուտը, որպես կանոն, չնչին է: Այս հարցերը նոր չեն, դրանց մասին մեկ անգամ չէ, որ խոսվել է ու գրվել, բայց գործը առայժմ չի փոխվել: Ըստ երևույթին Կենտկոմի քարտուղարությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահությունը պետք է այստեղ պատշաճ կարգուկանոն հաստատեն, ընթանան ստուգումների որակի և ոչ թե քանակի ուղիով:

Առողջացնելով հասարակական մթնոլորտը, անհրաժեշտ է այսուհետև էլ զարգացնել հրապարակայնությունը: Սա մեր կառուցման բոլոր տեղամասերի աշխատանքի բարելավման հզոր լծակն է, համաժողովրդական վերահսկողության գործուն ձևը: Դրա լավ հաստատումն է Կենտկոմի ապրիլյան պլենումից հետո կուտակված փորձը:

Հավանաբար եկել է ժամանակը ձեռնամուխ լինելու հրապարակայնությունն ապահովող իրավական ակտերի մշակմանը: Դրանք պետք է ապահովեն առավելագույն գաղտնազերծություն պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեության մեջ, աշխատավորներին ռեալ հնարավորություն ընձեռեն իրենց կարծիքն արտահայտելու հասարակական կյանքի ցանկացած հարցի առթիվ:

Սոցիալիստական դեմոկրատիայի փորձված միջոց են քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Սրա դեմ թվում է բացահայտ առարկումներ չկան: Սակայն կյանքում մենք բախվում ենք այնպիսի փաստերի, որոնք վկայում են, որ հասարա-

կության մեջ քննադատական տրամադրությունը պաշտպանելու անհրաժեշտությունը ամենևին էլ բոլորը չէ, որ գիտակցել են։ Երբեմն բանն այնտեղ է հասնում, որ որոշ աշխատողներ նույնիսկ չնչին դիտողությունները գնահատում են որպես ոտնձգություն իրենց հեղինակության դեմ և այն պաշտպանում բոլոր հնարավոր միջոցներով։ Երևան են եկել նաև ավելի փորձվածները։ Նրանք ընդունում են քննադատության արդարացիությունը, նույնիսկ շնորհակալություն հայտնում դրա համար, բայց չեն շտապում վերացնել թերությունները, հուսալով, թե ամեն ինչ կմարսեն, ինչպես որ մարսել են դրանից առաջ։

Քննադատության նկատմամբ նման վերաբերմունքը ոչ մի ընդհանուր բան չունի մեր սկզբունքների և բարոյականության հետ։ Իսկ արդի փուլում, երբ մենք նոր մոտեցումներ ենք հաստատում սոցիալ-քաղաքական կյանքում, հոգևոր ոլորտում, անչափ աճում է քննադատության և ինքնաքննադատության նշանակությունը։

Քննադատության նկատմամբ վերաբերմունքը վերակառուցման, հասարակության մեջ կատարվող ամբողջ նորի նկատմամբ մարդու վերաբերմունքի կարևոր չափանիշն է։

Եվ այստեղ անկարելի է ցավով չասել այն մասին, որ մենք շարունակում ենք բախվել ոչ միայն քննադատությունը չընդունելու հետ, այլև դրա համար հետապնդելու, քննադատական ելույթներն ուղղակի ճնշելու փաստերի հետ։ Երբեմն դա այնպիսի չափերի ու մասշտաբների է հասնում, այնպիսի ձևերով է կատարվում, որ Կենտրոնական կոմիտեն ստիպված է լինում միջամտել, որպեսզի վերականգնի ճշմարտությունն ու արդարությունը, պաշտպանի գործի շահերի համար ցավող ազնիվ մարդկանց։ Ես արդեն առիթ եմ ունեցել խոսելու այս հարցի մասին, բայց գործը դանդաղ է շտկվում։ Վերցրեք կենտրոնական մամուլի միայն հունվարի ելույթները և կտեսնեք, որ քննադատության համար հալածելը ամենևին էլ հազվադեպ երևույթ չէ։

Այս կապակցությամբ պետք է պաշտպանել մեր հասարակության մեջ քննադատությունն ու ինքնաքննադատությունը զարգացնելու մասսայական ինֆորմացիայի միջոցների ջանքերը։ Սովետական մարդիկ ըստ արժանվույն գնահատեցին նրանց դիրքորոշումը վերակառուցման համար մղվող պայքարում։

Ավելի քան 14 միլիոն նոր ընթերցող է ավելացել կենտրոնական թերթերին ու ամսագրերին, բազմամիլիոնանոց լսարաններ են հավաքում կենտրոնական հեռուստատեսության՝ հրատապ թեմաներին վերաբերող հաղորդումները։ Մարդկանց գրավում են երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելուն վերաբերող, հասարակության կյանքի ամենատարբեր կողմերը շոշափող արդիական պրոբլեմների առաջադրման համարձակությունն ու խորությունը։ Կուսակցությունը հուսով է, որ մասսայական ինֆորմացիայի միջոցների ելույթները այսուհետև էլ աչքի կընկնեն խորությամբ, քաղաքացիական բարձր պատասխանատվությամբ։

Կարելի է ասել նաև հանրապետական ու տեղական հրատարակություններում կատարվող դրական վերափոխումների մասին։ Բայց դրանցից ամենևին էլ դեռևս բոլորը չեն, որ ինչպես հարկն է լծվել են վերակառուցմանը, նրանց պակասում են սկզբունքայնությունն ու համարձակությունը հարցեր առաջադրելիս, քննադատական վերաբերմունքը թերությունների նկատմամբ։ Կուսակցական շատ կոմիտեներ միշտ չէ, որ ինչպես հարկն է օգտագործում են ինֆորմացիայի միջոցները՝ վերակառուցման այդ հուժկու լծակը, իսկ տեղ-տեղ էլ շարունակում են կաշկանդել նրանց գործունեությունը։

Այսուհետև էլ ակնկալելով թերությունների և վրիպումների սկզբունքային ու կոնստրուկտիվ քննադատություն, կուսակցությունը սրա հետ միասին մասսայական ինֆորմացիայի միջոցներից սպասում է վերակառուցման պայմաններում աշխատավորական կոլեկտիվների, կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների, ղեկավար կադրերի աշխատանքի փորձի ավելի լայն ցուցադրում։

Մեզ շատ հարկավոր են պատասխանները այն բազմաթիվ կենսահույզ հարցերի, որ առաջադրել է և, ես կարծում եմ, կառաջադրի վերակառուցումը։ Մենք պետք է բոլորին օգնենք ավելի արագորեն գործնականում վերակառուցվելու ժամանակի ոգով։ Ահա մամուլի այս, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, կազմակերպչական ֆունկ-



ցիան պետք է օրեցօր ուժեղացնել, սովորել իրոք լինել կոլեկտիվ ագիտատոր, պրոպագանդիստ և մասսաների կազմակերպիչ։

Եվ դարձյալ մի հարցի առթիվ պետք է պարզություն լինի։ Մենք ասում ենք՝ սովետական հասարակության մեջ քննադատության համար փակ գոտիներ չպետք է լինեն։ Սա լիովին վերաբերում է նաև մասսայական ինֆորմացիայի միջոցներին։

Ընկերնե՛ր։ Իսկական դեմոկրատիան օրենքից դուրս և օրենքից վեր գոյություն չունի։ Կուսակցության XXVII համագումարը սահմանեց մեր օրենսդրության զարգացման և իրավակարգի ամրապնդման գլխավոր ուղղությունները։ Ընթացիկ հնգամյակում պետք է մեծ աշխատանք կատարվի էկոնոմիկան, սոցիալական ոլորտն ու մշակույթը, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը զարգացնելու, քաղաքացիների իրավունքների ու ազատությունների երաշխիքներն ընդլայնելու հետ կապված նոր օրենքների նախապատրաստման և ընդունման ուղղությամբ։

Քաղբյուրոն պաշտպանեց մոտ ժամանակներս նոր քրեական օրենսդրություն մշակելու առաջարկությունը։ Խնդիր է դրված, որ այն ավելի լրիվ համապատասխանի սովետական հասարակության զարգացման ժամանակակից պայմաններին, ավելի արդյունավետորեն պաշտպանի քաղաքացիների շահերն ու իրավունքները, տանի դեպի կարգապահության և իրավակարգի ամրապնդում։ Մենք պիտի խորհենք և միջոցներ ձեռնարկենք բարձրացնելու սովետական դատարանի դերն ու հեղինակությունը, խստիվ պահպանելու դատավորների անկախության սկզբունքը, վճռականորեն ուժեղացնելու դատախազական հսկողությունը, կատարելագործելու քննչական մարմինների աշխատանքը։

Պատրաստվել է և շուտով քննարկման կներկայացվի քաղաքացիների իրավունքները ոտնահարող պաշտոնատար անձանց ապօրինի գործողությունները դատարանում գանգատարկելու կարգի մասին օրինագիծը։ Լրացուցիչ քայլեր են նախատեսված պետական արբիտրաժի աշխատանքը բարելավելու, իրավական պրոպագանդան ընդլայնելու վերաբերյալ։

Երբ մենք խոսում ենք սովետական հասարակության դեմոկրատացման մասին, իսկ սա մեզ համար սկզբունքային հարց է, տեղին է մեկ անգամ էլ ընդգծել սոցիալիստական դեմոկրատիզմի գլխավոր, որոշիչ հատկանիշը։

Ես նկատի ունեմ դեմոկրատիայի և կարգապահության, պաշտոնատար անձանց, յուրաքանչյուր քաղաքացու ինքնուրույնության ու պատասխանատվության, իրավունքների ու պարտականությունների օրգանական զուգորդումը։

Սոցիալիստական դեմոկրատիան ոչ մի ընդհանուր բան չունի անարգելության, անպատասխանատվության, անարխիայի հետ։ Իսկական դեմոկրատիան ծառայում է յուրաքանչյուր մարդու, պաշտպանելով նրա քաղաքական ու սոցիալական իրավունքները, այն միաժամանակ ծառայում է յուրաքանչյուր կոլեկտիվին ու հասարակությանը ամբողջությամբ վերցված, պաշտպանելով նրանց շահերը։

Սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտների դեմոկրատացումը կարևոր է նախ և առաջ այն պատճառով, որ մենք դրա հետ կապում ենք աշխատավորների նախաձեռնության հետագա զարգացումը, սոցիալիստական կարգերի ամբողջ պոտենցիալի բացահայտումը։ Դեմոկրատացումը հարկավոր է նրա համար, որ շարժվենք առաջ, որ հասարակության մեջ ամրապնդվի օրինականությունը և հաղթանակի արդարությունը, որ հաստատվի այնպիսի բարոյական մթնոլորտ, որի պայմաններում մարդն ապրում է ազատ և աշխատում արգասավոր։

Ընկերնե՛ր։ Քաջ հայտնի է, որ իսկական դեմոկրատիայի գործունությունը կախված է նրանից, թե այն որքանո՞վ է ելնում լայն զանգվածների շահերից, հենվում նրանց վրա, պաշտպանություն գտնում հասարակության բոլոր խավերի ու խմբերի կողմից։

Եվ այս առումով վերակառուցման խնդիրները պահանջում են մեկ անգամ էլ վերլուծել դեմոկրատիայի սոցիալական բազայի հետագա ընդլայնման մեր ռեզերվներն ու հնարավորությունները։ Հարցի այսպիսի դրվածքի կենսականությունը ակնբախ է։

Մեր ամբողջ փորձը սովորեցնում է, որ բեկումնային ժամանակաշրջանում լուծելով ամենահամարձակ խնդիրները, կուսակցությունը միշտ էլ դիմել է կոմերիտմիությանը, երիտասարդությանը, նրանց խանդավառությանը և նվիրվածությանը սո-

ցիալիզմի գործին, անհաշտությանը լճացման նկատմամբ, նվիրվածությանը առաջադիմականին: Եվ այսօր, երբ մենք խոսում ենք դեմոկրատական վերափոխումների անհրաժեշտության մասին, վերակառուցման խնդիրների լուծմանը ժողովրդի ռեալ մասնակցությունն ընդլայնելու մասին, երիտասարդ սերնդի դիրքորոշման հարցը հսկայական քաղաքական նշանակություն է ստանում:

Կցանկանայինք պլենումում մեկ անգամ էլ կրկնել: Մենք կարող ենք հպարտանալ մեր երիտասարդներով, պատշաճն ենք մատուցում նրանց աշխատանքին, սա թե փաստորեն է ճիշտ և թե քաղաքականապես:

Սակայն ժամանակը յուրաքանչյուրից պահանջում է ավելի շատ եռանդ: Եվ, իհարկե, երիտասարդությունը, որը շահագրգռված է վերակառուցումով, պետք է գործի ավելի ակտիվորեն: Նա է ապրելու և աշխատելու նորացված հասարակության մեջ: Կուսակցական կազմակերպությունները, նրանց կոմիտեները, կոմերիտմիությունը պետք է երիտասարդ սերնդի առջև լայնորեն բացեն հեռանկարը, այնպես անեն, որ երիտասարդությունը գործնականորեն դառնա վերափոխումների եռանդուն մասնակիցը: Այդ դիրքերից պետք է մոտենալ նաև ՀամԼԿԵՄ-ի հերթական համագումարի նախապատրաստությանը:

Կոմերիտմիության հետ տարվող աշխատանքում պետք է ուժեղացնենք ուշադրությունը աշխատանքային, գաղափարաքաղաքական ու բարոյական կոփմանը, ավելի արագ և վճռականորեն ազատվենք երիտասարդության հետ տարվող աշխատանքում եղած անհարկի ամեն ինչից, նախ և առաջ՝ խրատական տոնից ու վարչարարությունից: Այո՛, այդ ամենը կա և դրա մասին պետք է ասվի: Եվ ինչով էլ որ դա բացատրվի՝ երիտասարդների հասարակական ձգտումների ու արարքների խնամատությանը և հասունությանը հավատ չընծայելով, պարզ ինքնապահովագրմամբ թե մեր երեխաների համար կյանքի դժվարությունները թեթևացնելու ցանկությամբ, ոչ մի կերպ չի կարելի համաձայնել նման դիրքորոշման հետ:

Ոչ, ընկերներ, անհատի կազմավորման, երիտասարդ մարդու քաղաքացիական դիրքորոշման ձևավորման ուրիշ ռեալ ուղի, քան նրան իրապես հասարակական բոլոր գործերում ընդգրկելն է, չկա: Կոնկրետ փորձի բացակայությունը ոչնչով չի կարող փոխարինվել: Ահա թե ինչու է կարևոր փոխել ստեղծված դրությունը: Ես ի՞նչ նկատի ունեմ:

Դա նախ և առաջ առավել վստահելն է երիտասարդությանը, որը զուգակցեր հմուտ օգնությունն ու սխալների ընկերական քննադատության ազատությունը, առավել ինքնուրույնություն աշխատանքի, ուսման, կենցաղի, ժամանցի կազմակերպման գործում և առավել պատասխանատվություն իր գործերի ու արարքների համար:

Իսկ դա ենթադրում է նաև բոլոր մակարդակներով հասարակության ղեկավարմանը մասնակցելու իրավունքը:

Հասարակական կյանքի դեմոկրատացման կարևոր ուղղություն է անկուսակցական ընկերներին ղեկավար աշխատանքի առաջ քաշելը: Սա սկզբունքային հարց է: Սոցիալիստական հասարակության առողջության և առաջադիմության հաստատուն գրավականներից մեկը առաջավոր բանվորի, գյուղացու, ինժեների, գիտաշխատողի, բժշկի, ուսուցչի, սպասարկման ոլորտի աշխատողի քաղաքական ու գործարար աճն է, ժողովրդի միջից մշտապես տաղանդներ ի հայտ բերելն ու առաջ քաշելը:

Երբեմն հանդիպում ենք այսպիսի տեսակետի. անկուսակցականներին առաջ քաշելու հարցը, իբր, հնացել է, քանի որ այժմ ՍՄԿԿ շարքերում 19 միլիոնից ավելի մարդ կա: Կարծում եմ՝ սա սխալ դատողություն է: Ելնել դրանից՝ նշանակում է խեղել կուսակցության հարաբերությունները մասսաների հետ, ասենք ուղղակի դիպչել քաղաքացիների սահմանադրական իրավունքներին, դրանով իսկ սահմանափակել նաև կադրային հնարավորությունները: Մեզանում եղել են և այժմ էլ քիչ չեն ղեկավար պոստերում անկուսակցական ընկերների բեղուն գործունեության հիանալի օրինակներ: Նրանք գլխավորում են գործարաններ ու փաբրիկաներ, կոլտնտեսություններ և սովխոզներ, շինարարական կազմակերպություններ, գիտական և մանկավարժական կոլեկտիվներ, ինժեներական ծառայություններ, ակտիվորեն հասարակական աշխատանք են կատարում:

Առաջ քաշելու համար մարդկանց բացեիբաց ընտրությունը՝ և կոմունիստների թվից, և անկուսակցականների թվից, կհամապատասխաներ դեմոկրատացման խնդիրներին, աշխատավորների լայն զանգվածների ներգրավմանը կառավարման մեջ:

Այս տեսանկյունով է դրված նաև կանանց էլ ավելի լայնորեն ղեկավար աշխատանքի առաջ քաշելու հարցը: Ներկայումս կուսակցական, պետական ապարատում, գիտության, առողջապահության, կրթության, մշակույթի բնագավառում, թեթև արդյունաբերության մեջ, առևտրում, կենցաղի սպասարկման ասպարեզում շատ կանայք են աշխատում և աշխատում են հաջողությամբ: Այսօր երկիրը կարիք ունի, որ նրանք էլ ավելի ակտիվորեն ներգրավվեն տնտեսության, մշակույթի կառավարման գործում միութենական և հանրապետական մասշտաբներով: Այդպիսի հնարավորություններ մեզ մոտ կան: Միայն պետք է վստահություն ու աջակցություն ցույց տալ կանանց:

Ընկերնե՛ր: Չկա ոչ մի սկզբունքային հարց, որը ինչպես անցյալում, այնպես էլ այժմ մենք կարողանայինք լուծել՝ առանց հաշվի առնելու այն, որ մենք ապրում ենք բազմազգ երկրում: Հազիվ թե հարկ կա ապացուցելու սոցիալիստական հիմունքների կարևորությունը ազգային հարաբերությունների զարգացման ասպարեզում: Հենց սոցիալիզմը վերջ տվեց ազգային ճնշմանն ու անիրավահավասարությանը, մարդկանց իրավունքների ամեն տեսակ ոտնահարմանը ազգային դրդապատճառներով, ապահովեց բոլոր ազգերի և ազգությունների տնտեսական և հոգևոր առաջընթացը: Մի խոսքով, մեր կուսակցության ազգային քաղաքականության հաջողությունները անվիճելի են, և մենք իրավամբ հպարտանում ենք դրանցով:

Բայց մենք պարտավոր ենք տեսնել ազգային հարաբերությունների զարգացման իրական պատկերն ու հեռանկարը: Այսօր, երբ ընդլայնվում են դեմոկրատիան և ինքնակառավարումը, երբ արագորեն աճում է բոլոր ազգերի և ազգությունների ինքնագիտակցությունը, խորանում են ինտերնացիոնալացման պրոցեսները, առանձնակի կարևորություն է ստանում ծագող հարցերի ժամանակին և արդարացի լուծումը միակ հնարավոր հիման վրա՝ ի շահ յուրաքանչյուր ազգի և ազգության բարգավաճման, ի շահ նրանց հետագա մերձեցման, ի շահ բովանդակ հասարակության:

Եվ այս առնչությամբ չի կարելի չասել, որ բացասական երևույթներն ու աղավաղումները, որոնց դեմ մենք պայքար ծավալեցինք, դրսևորվել են նաև ազգային հարաբերությունների ոլորտում: Երբեմն-երբեմն իրենց զգալ են տալիս տեղայնության դրսևորումները, ազգային պարփակվածության միտումները, ազգային սնապարծության տրամադրությունները և նույնիսկ այնպիսի միջադեպեր, որպիսիք հենց վերջերս տեղի ունեցան Ալմա Աթայում:

Ալմա Աթայի դեպքերը և այն, ինչ դրանց նախորդել էր, պահանջում են լուրջ վերլուծություն, սկզբունքային գնահատական: Այդ ամենը դեռևս պետք է ուշի-ուշով քննել: Բայց արդեն այսօր պարզ է. այն, ինչ տեղի ունեցավ, պիտի ոչ միայն Ղազախստանի կոմունիստներին, այլև կուսակցական բոլոր կազմակերպություններին, նրանց կոմիտեներին ստիպի դեմքով շրջվել դեպի ազգային հարաբերությունների հետագա զարգացման, ինտերնացիոնալ դաստիարակության ուժեղացման պրոբլեմները: Նացիոնալիզմի քայքայիչ ներգործությունից առանձնապես կարևոր է զերծ պահել մատաղ սերնդին:

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր «կարողանալ ինտերնացիոնալիստ լինել գործով», և մեր պարտքն է չընդհատել այդ ուսուցումը:

Մեր ամբողջ փորձը ցույց է տալիս. ազգայնամոլ հովերին կարելի է հաջողությամբ հակադրել միայն հետևողական ինտերնացիոնալիզմը: Այն ամենը, ինչ մենք արել ենք, արել ենք ընդհանուր աշխատանքով: Եթե մի ռեգիոնում նավթ է արդյունահանվում, ապա մյուսը հաց է ուղարկում նրան: Նրանք, ովքեր բամբակ են աճեցնում, մեքենաներ են ստանում: Հացահատիկի յուրաքանչյուր տոննայի, ոսկու ամեն մի գրամի, բամբակի, քարածխի, նավթի յուրաքանչյուր տոննայի, ամեն մի մեքենայի մեջ՝ ամենահասարակից մինչև եզակին, կա ամբողջ սովետական ժողովրդի, ամբողջ երկրի, մեր ամբողջ բազմազգ Միության աշխատանքի մասնիկը:

Մեր կյանքի և համատեղ աշխատանքի ամբողջ մթնոլորտը, ընտանիքը և դպրոցը, բանակը, մշակույթը, գրականությունն ու արվեստը կոչված են բոլոր ազգությունների սովետական մարդկանց և, առաջին հերթին, երիտասարդների մեջ ձևավորել ու դաստիարակել ամենաազնիվ զգացումները՝ ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության զգացումները:

Անհրաժեշտ է լենինյան պահանջների ոգով, XXVII համագումարի հիմնադրույթ-

ների ոգով համապատասխանորեն վարել այն գիծը, որ կուսակցական, պետական, տնտեսական մարմիններում, այդ թվում՝ միութենական մակարդակով, ներկայացված լինեն երկրի բոլոր ազգերն ու ազգությունները, որպեսզի ղեկավար կադրերի կազմը առավել լիովին արտացոլի նրա ազգային կառուցվածքը:

Հասկանալի է, խոսքը տեղերն ու պաշտոնները ըստ ազգային հատկանիշի մեխանիկորեն բաշխելու մասին չէ. դա կնշանակեր գռեհկացնել ինտերնացիոնալիզմի բուն գաղափարը: Քաղաքական, գործարար, բարոյական հատկանիշներ. ահա թե ինչն է ամեն դեպքում որոշում աշխատողի կերպարը: Չի կարելի տեսադաշտից բաց թողնել նաև այս կամ այն պրոբլեմի ազգային կողմերի առանձնակի նրբությունը, մարդկանց ապրելակերպի, հոգեբանության ու վարքագծի ժողովրդական ավանդույթները: Այս ամենը հարկավոր է հաշվի առնել ամենամանրակրկիտ կերպով:

Պետք է ասեմ, ընկերներ, որ որոշ ղեկավարներ երբեմն առանց պատշաճ պատասխանատվության են մոտենում ազգամիջյան հարաբերությունների հետ կապված հարցերի լուծմանը:

Ժամանակ առ ժամանակ թյուրիմացություններ են ծագում տարբեր հանրապետությունների հարևան շրջանների կամ մարզերի միջև: Երբեմն դրանք վեճերի տեսք են ընդունում, վերաճում նույնիսկ հայցերի, իսկ կուսակցական և սովետական մարմինների ղեկավարները, փոխանակ կանխելու կամ մարելու կրքերը, խուսափում են սկզբունքային լուծումներից: Քաղաքական աշխատողները պետք է հմտորեն գործեն նման իրավիճակում, սառեցնեն անառողջ հույզերը:

Ազգային հարաբերությունների պրակտիկայի հանդեպ մեծ պարտք ունի մեր տեսական միտքը: Ես նկատի ունեմ երկրի զարգացման արդի փուլին համապատասխան ազգային քաղաքականության հարցերի միանգամայն անբավարար մշակվածությունը: Չէ՞ որ փաստ է, ընկերներ, որ ազգային հարաբերությունների բնագավառի իրական երևույթների օբյեկտիվ հետազոտությունների, բնավ էլ ոչ հասարակ և իրենց էությամբ հակասական բուն սոցիալ-տնտեսական և հոգևոր պրոցեսների վերլուծության փոխարեն մեր որոշ հասարակագետներ երկար ժամանակ գերադասում էին «կենացային» բնույթի տրակտատներ ստեղծել, որոնք երբեմն ավելի շատ գեղեցիկ բաժակաճառեր էին հիշեցնում, քան գիտական լուրջ հետազոտություններ:

Պետք է խոստովանել, որ ազգային հարաբերությունների բնագավառում թույլ տրվող սխալները, դրանց դրսևորումները մնում էին ստվերում, և դրանց մասին ընդունված չէր խոսել: Դա հանգեցրեց բացասական հետևանքների, որոնց հետ այժմ ստիպված ենք գործ ունենալ:

XXVII համագումարում մենք ընդգծեցինք մեր կուսակցության՝ Վ. Ի. Լենինից եկող ավանդույթի անխախտությունը. պետք է առանձնակի զգայուն վերաբերմունք ու զգուշավորություն դրսևորել ամեն բանում, ինչ վերաբերում է ազգային հարաբերությունների զարգացմանը, շոշափում յուրաքանչյուր ազգի և ազգության շահերը, մարդկանց ազգային զգացմունքները, ժամանակին լուծել այդ ոլորտում ծագող հարցերը:

Բոլշևիզմի ավանդույթներից է սկզբունքային պայքարը ազգային սահմանափակվածության ու պարծենկոտության, նացիոնալիզմի ու շովինիզմի, տեղայնության, սիոնիզմի և հակասեմիտիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ, ինչ ձևերով էլ որ դրանք հանդես գան: Մենք պետք է մշտապես հիշենք, որ նացիոնալիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը երկու հակադիր քաղաքականություն են, երկու հակադիր աշխարհայացք:

Ելնելով այս դիրքորոշումներից, մենք կլինենք հաստատակամ ու սկզբունքային: Մարդկանց ազգային զգացմունքները արժանի են հարգվելու, դրանք չի կարելի անտեսել, բայց և չի կարելի դրանք շահարկել: Թող նրանք, ովքեր կցանկանային շահարկել ազգայնամոլ կամ շովինիստական նախապաշարումներ, ոչ մի պատրանք չտածեն այդ առումով և զիջողություններ չսպասեն:

Սկզբունքները, ընկերներ, սկզբունքներ են հենց այն պատճառով, որ դրանք չի կարելի զոհաբերել: Այդ դիրքորոշումը, սկզբունքային, լենինյան դիրքորոշումը, անտարակույս, կպաշտպանվի ամբողջ կուսակցության, ամբողջ սովետական բազմազգ ժողովրդի կողմից:



# III. ԿԱԴՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Ընկերնե՛ր: Կարծում եմ, բոլորս լավ ենք հասկանում, որ վերակառուցման հաջողությունը վճռականորեն կախված է այն բանից, թե մեր կադրերը ինչքան արագ ու խոր կընկալեն փոփոխությունների անհրաժեշտությունը, ինչքան ստեղծագործաբար ու նպատակասլացորեն կկենսագործեն կուսակցության գիծը: Այսօր հարկավոր է այնպիսի կադրային քաղաքականություն, որը համապատասխանի վերակառուցման, սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու անհրաժեշտության խնդիրներին: Ձևակերպելով նրա ելակետային պահանջները, մենք պետք է հաշվի առնենք թե անցյալի դասերը, թե այն նոր մասշտաբային խնդիրները, որն այսօր առաջադրել է կյանքը:

Սոցիալիստական շինարարության տարիներին երկրում ստեղծվել է բարձրորակ կադրային հզոր պոտենցիալ, իսկ բանվորների և գյուղացիների, ամբողջ ժողովրդի կրթության ու կուլտուրայի անչափ աճած մակարդակը նպաստավոր պայմաններ է ստեղծում նրա մշտական համալրման ու նորացման համար: Այն ամենը, ինչ արել ենք, այն ամենը, ինչին հասել ենք, սովետական մարդկանց ձեռքի կերտածն է, մեր կադրերի անձնվեր աշխատանքի արդյունքը:

Դրա հետ մեկտեղ ներկա պլենումում անհրաժեշտ է խոսել նաև կադրային աշխատանքում եղած սխալների, կադրային քաղաքականության մեջ վերջին տարիներս թույլ տրված խեղաթյուրումների մասին, որոնք հանգեցրել են խոշոր թերությունների կուսակցական, պետական ու տնտեսական ապարատի մի շարք օղակների գործունեության մեջ, բացասական երևույթների՝ հասարակության մեջ: Շատ վրիպումներից հնարավոր կլիներ խուսափել, եթե կուսակցական մարմինները մշտապես և հետևողականորեն սկզբունքային, արդյունավետ կադրային քաղաքականություն վարեին, ապահովեին կուսակցական ղեկավարման և տնտեսական կառավարման բոլոր օղակների բարձր գործունությունը:

Հասկանալի է, այսօր չի կարելի սահմանափակվել սոսկ թույլ տրված սխալները խոստովանելով: Ապագայում նմանօրինակ վրիպումներից խուսափելու համար մենք պարտավոր ենք դասեր քաղել անցյալից:

Իսկ որո՞նք են այդ դասերը:

Դրանցից առաջինը հենց կուսակցության Կենտրոնական կոմիտեում, նրա քաղբյուրոյում հասունացած կադրային հարցերը ժամանակին լուծելու անհրաժեշտությունն է, նախ և առաջ ղեկավարության մեջ հաջորդայնությունը՝ թարմ ուժերի ներհոսը ապահովելու տեսակետից:

Այս բնական պրոցեսի խախտումը ինչ-որ փուլում հանգեցրեց քաղբյուրոյի և քարտուղարության, նաև ամբողջությամբ վերցրած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, նրա ապարատի, ինչպես նաև կառավարության աշխատունակության թուլացման:

Իսկապես, ընկերներ, ապրիլյան պլենումից հետո անցած կարճ ժամանակամիջոցում նորացվել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քարտուղարության և բաժինների վարիչների մեծ մասը, փոխվել է ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահության փաստորեն ամբողջ կազմը: Այս փոփոխումը հարկադրական է, որովհետև երկար ժամանակ չէին ապահովվում Կենտկոմի և կառավարության կազմի նորացումը, նոր կադրերով դրանց մշտական համալրումը, ինչպես որ պահանջում էր կյանքը: Այս ամենը վերջին հաշվով անդրադարձավ թե քաղաքականության մշակման վրա և թե հասարակության ղեկավարման ուղղությամբ կուսակցության պրակտիկ գործունեության վրա:

Նման բան այլևս չի կարող կրկնվել ու չպիտի կրկնվի:

Որպեսզի նորացման պրոցեսը չընդհատվի, հաջորդայնությունը չխախտվի, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն և քարտուղարությունը, կառավարությունը, կուսակցական ու պետական ղեկավարության բարձրագույն էշելոնները պետք է բաց լինեն գործունեության տարբեր ոլորտներից թարմ ուժերի ներհոսի համար: Նման հարցադրումը լիովին համապատասխանում է կադրային քաղաքականության լենինյան ըմբռնմանը, կուսակցության և ժողովրդի շահերին:

Իհարկե, կուսակցության Կենտրոնական կոմիտեն կատարել է ու կատարում է հսկայական աշխատանք: Բայց այդ աշխատանքի մակարդակը երբեք, ոչ մի պարագայում չպետք է իջնի: Ընդհակառակը, այն պետք է մշտապես աճի ու համապատասխանի այն պահանջներին, որ ներկայացնում են կյանքը, հասարակության զարգացումը, միջազգային իրադրությունը: Կենտկոմի գործունեության մեջ ամեն մի թուլացում անթույլատրելի է:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կոչված է լենինյան գաղափարների, աշխատանքի սկզբունքների ու մեթոդների մարմնավորման տիպար լինել: Մեր պլենումներում պետք է քննարկվեն կուսակցության կյանքի, երկրի ներքին ու միջազգային դրության իրոք գլխավոր հարցերը: Պետք է քննարկվեն ազատորեն, անկեղծորեն, բարձր պատասխանատվության զգացումով, գաղափարական համախմբվածության և տեսակետների լայն համադրման մթնոլորտում:

Այս առնչությամբ ուզում եմ հատկապես խոսել Կենտրոնական կոմիտեի անդամների դերի, նրանց իրավունքների ու պատասխանատվության մասին: Պլենումներում անհրաժեշտ է ապահովել հարցեր առաջադրելու և դրանց կոլեկտիվ ստեղծագործական քննարկմանը մասնակցելու Կենտկոմի յուրաքանչյուր անդամի իրավունքը: Կուսակցության մեջ և առավել ևս Կենտկոմի պլենումներում չեն կարող լինել քննադատությունից դուրս կանգնած անձինք, հավասարապես նաև քննադատելու իրավունք չունեցող անձինք:

Այստեղ մենք շատ բան պետք է ուղղենք: Եկեք ազնվորեն ասենք. տարիներ շարունակ պլենումների օրակարգերից դուրս էին մնում ոչ քիչ հրատապ պրոբլեմներ, որոնք հուզում էին կուսակցությանը և ժողովրդին: Ընկերները հիշում են, որ Կենտկոմի պլենումները քանիցս անցկացվել են հապճեպորեն, ձևականորեն: Կենտկոմի շատ անդամներ նրա կազմում գտնվելու ամբողջ ընթացքում հնարավորություն չեն ունեցել մասնակցել մտքերի փոխանակմանը և նույնիսկ առաջարկություններ անել: Կենտկոմի պլենումների այդ մթնոլորտը անդրադարձել է նաև տեղական կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների աշխատանքի ոճի վրա:

Անցյալի փորձից երկրորդ դասը, ընկերներ, այն է, որ մենք չպետք է թույլ տանք կադրերի քաղաքական ու տեսական պատրաստման, գաղափարաբարոյական կոփման թերագնահատում: Հակառակ դեպքում դա շատ լուրջ խախտումների կհանգեցնի կուսակցական կոմիտեների՝ որպես քաղաքական ղեկավարման մարմինների, գործունեության մեջ:

Վերջին տարիներս կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործում այդ չափանիշները միշտ չէ, որ հաշվի էին առնվում: Հաճախ առաջին պլան էին մղվում աշխատողի կողմից արտադրության այս կամ այն ճյուղի, գիտության ու տեխնիկայի, տեխնոլոգիայի իմացությունը, նրա կամային հատկությունները:

Այս ամենը, անկասկած, նշանակություն ունի, բայց ընդսմին չի կարելի թույլ տալ, որ տեսադաշտից դուրս մնան ղեկավարների այնպիսի հատկություններ, ինչպիսիք են գաղափարատեսական մտահորիզոնը և քաղաքական հասունությունը, բարոյական հիմքերը, մարդկանց համոզելու և իրենց հետևից տանելու ընդունակությունը:

Պետք է ուղղակի և ազնվորեն ընդունել, որ աշխատանքի տեխնոկրատական, «վարչարարական սեղմիչ» ոճը քիչ վնաս չի հասցրել կուսակցական գործին, ամենից առաջ՝ մարդկանց հետ տարվող աշխատանքին, այսինքն՝ կուսակցության գործունեության մեջ գլխավորին: Կուսակցական շատ աշխատողներ, խրվելով տնտեսական հոգսերի մեջ, մի շարք դեպքերում իրենց վրա վերցնելով իրենց ոչ հատուկ ֆունկցիաներ, թուլացրել են ուշադրությունը քաղաքական հարցերի նկատմամբ, էկոնոմիկայի, սոցիալական և հոգևոր կյանքի ոլորտում հասարակական կարևորության երևույթների նկատմամբ:

Իհարկե, այդ ոճի հիմքում ընկած են նաև օբյեկտիվ պատճառներ: Դրանք կապված են ժողովրդական տնտեսության կառավարման մի շարք հարցերի լուծված չլինելու հետ, արդյունավետ տնտեսական մեխանիզմի բացակայության հետ: Այդ իրավիճակում կուսակցական շատ կոմիտեներ, զգալով իրենց պատասխանատվությունը, իրենց պարտքը ժողովրդի հանդեպ, ստիպված են եղել իրենց վրա վերցնել ոչ քիչ թվով տնտեսական պրոբլեմների լուծումը: Այդ բանը տեղի է ունեցել տարիներ շարունակ, խորապես արմատավորվել աշխատանքի ոճի ու մեթոդների մեջ և հանգեցրել է կուսակցական ղեկավարման սկզբունքների, մեր կադրերի հենց կազմի մեջ որոշակի ձևախեղման:



Երկրում կառավարման և տնտեսական մեխանիզմի վերակառուցման խոշորամասշտաբ միջոցառումների իրականացումը լայն հնարավորություններ է բացել կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների աշխատանքի կատարելագործման համար, հասարակության կյանքի բոլոր ոլորտներում կուսակցական ազդեցության ուժեղացման, բոլոր քննարկվող պրոբլեմներին քաղաքական մոտեցում ցույց տալու համար:

Ուզում եմ ընդգծել, որ ոչ ոք չի կարող կուսակցական կոմիտեներին ազատել էկոնոմիկայի հոգսերից և այդտեղ տիրող դրության համար պատասխանատվությունից: Խոսքը վերաբերում է, ինչպես ես արդեն ասացի, կուսակցական ղեկավարման մեթոդների այնպիսի կատարելագործմանը, որը բացառում է տնտեսական մարմինների փոխարինումն ու մանրախնդիր խնամակալությունը:

Երրորդ դասը, որ մենք պետք է քաղենք, այն է, որ վերջին տարիների կադրային քաղաքականության մեջ տարօրինակ կերպով գոյակցում էին երկու հակադիր միտումներ: Ի՞նչ նկատի ունեմ ես, ընկերներ:

Մի կողմից, կադրային կորպուսում բավական ուժեղ էին դրսևորվում լճացման երևույթները: Մի շարք կուսակցական կոմիտեների քարտուղարների կազմում, տեղական, հանրապետական և միութենական մակարդակների սովետական և տնտեսական մարմինների աշխատողների շրջանում երբեմն տասնամյակներ շարունակ անհրաժեշտ կադրային փոփոխություններ, նոր մարդկանց ներհոս տեղի չէր ունենում:

Խոսելով այս մասին, ես չեմ ուզում նվազագույն իսկ չափով ստվեր նետել հարյուրավոր և հազարավոր հիանալի աշխատողների վրա, առանձնապես շրջանային և քաղաքային օղակի աշխատողների, որոնք բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրաբերել են և նվիրաբերում են կուսակցությանն ու ժողովրդին անձնվիրաբար ծառայելուն: Նրանք իրենց երկարամյա ազնիվ աշխատանքով, իրոք արժանի հեղինակությամբ հաստատում են ղեկավար պոստեր գրավելու իրավունքը: ՍՄԿԿ-ն, ժողովուրդը բարձր են գնահատում նրանց ոչ դյուրին աշխատանքը, նրանց մեծ ծառայությունները, պատշաճն են մատուցում նրանց:

Կարծում եմ, ապացուցման կարիք չունի այն հայտնի, միևնույն ժամանակ ոչ վատ յուրացված դրույթը, որ կադրերի կայունություն սկզբունքորեն հարկավոր է: Բայց չի կարելի այն հասցնել ծայրահեղության, եթե ուզում եք, անհեթեթության:

Մենք շատ լավ գիտենք, թե ինչի էր դա հանգեցնում, թե ինչ գին է դեռ հիմա էլ հարկ լինում վճարել արհեստական կայունության համար, որը ըստ էության վերածվել է կադրային լճացման:

Մյուս կողմից, կադրային աշխատանքում, առանձնապես ժողովրդական տնտեսության սկզբնական օղակի մակարդակով, գոյություն ուներ նաև մի ուրիշ, ոչ պակաս տագնապալի միտում: Խոսքը վերաբերում է արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս կազմակերպությունների ղեկավարների մեծ փոփոխելիությանը, այդ կադրերի հարցում տիրող իսկական աթուրմային:

Դուք գիտեք, թե որքան մեծ է արտադրության բարձրորակ կազմակերպիչների դերը: Կոլեկտիվների ղեկավարները՝ կոմունիստներ և անկուսակցականներ, կուսակցության գլխավոր հենարանն են նրա սոցիալ-տնտեսական քաղաքականության իրականացման գործում, նրանց ուսերին են դրված մեծ ծավալի բազմապիսի խնդիրներ: Այդ դեպքում ես հարց եմ տալիս. ինչպե՞ս կարող էր պատահել, որ շատ շրջաններում և մարզերում հաշված տարիների ընթացքում լրիվ փոխվում էր աշխատավորական կոլեկտիվների ղեկավարների կազմը:

Նման բան կարող է տեղի ունենալ միայն այն դեպքում, երբ կադրերի հետ տարվող կենդանի աշխատանքը, նրանց քաղաքական ու մասնագիտական աճի, նրանց գործնական օգնություն ցույց տալու նկատմամբ իսկական հոգատարությունը երկրորդ պլան են մղվում, փոխարինվում վարչարարությամբ, նրանց գործունեության և հնարավորությունների մասին հապճեպ ու երբեմն թեթևամիտ դատողություններով:

Կադրային քաղաքականության մեջ լուրջ վրիպումների պատճառներից մեկը վերահսկողության մարմինների դերի թուլացումն է ինչպես կուսակցության մեջ, այնպես էլ պետական և հասարակական կազմակերպությունների ոլորտում: Նրանց ուշադրությունից վրիպել են մի շարք ռեգիոններում և ժողովրդական տնտեսության ճյուղերում, մարզերի, երկրամասերի և հանրապետությունների կուսակցական կոմիտեներում եղած չարաշահումների ու խախտումների վերաբերյալ բազմաթիվ ահազանգեր:

Վերահսկիչ մարմինների աշխատանքը հաճախ սահմանափակվել է ոչ խոր ստուգումներով և ձևական ֆինանսական վերստուգումներով, զանազան բողոքների և կենցաղային տարաձայնությունների քննարկմամբ: Այդ հարցերը, անշուշտ, նույնպես ուշադրություն են պահանջում, բայց աշխատանքը դրանց հանգեցնել անթույլատրելի է, հատկապես հիմա:

ՍՄԿԿ XXVII համագումարը նոր ուղղություն տվեց վերահսկիչ մարմինների գործունեությանը: Կարևոր է, որ նրանք բոլորը, սկսած շրջանայիններից և վերջացրած կենտրոնականներով, արդարացնեն իրենց բարձր կոչումը, սկզբունքայնության և արդարության օրինակ տան:

Մի խոսքով, ընկերներ, անցյալի սխալները մենք չենք կարող, չպետք է կրկնենք: Ասենք, կարծում եմ, դա մեզ ոչ ոք էլ թույլ չի տա:

Սրանք են կադրային քաղաքականության հիմնական դասերը, որոնց մասին, քաղբյուրոյի կարծիքով, անհրաժեշտ է զեկուցել պլենումին:

Դրանցից արված գլխավոր հետևությունն այն է, որ մենք պարտավոր ենք լրջորեն նորացնել կադրային քաղաքականությունը, այն ազատել խեղաթյուրումներից ու վրիպումներից, դարձնել իրոք ժամանակակից, ավելի ակտիվ ու նպատակասլաց, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պայքարի կարևոր ուղղությունների հետ անխզելիորեն կապված:

Խոսքը, կրկնում եմ, ոչ թե պարզապես կադրային աշխատանքի կազմակերպման կատարելագործման մասին է, այլ վերակառուցման խնդիրներին համապատասխանող կադրային քաղաքականության մշակման մասին: Միայն այդպիսի լայն մոտեցման դեպքում կադրերի հետ տարվող աշխատանքը կծառայի խոր, իրենց էությամբ հեղափոխական վերափոխումների անցկացմանը:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր կադրերի հետ տարվող աշխատանքին մոտենալ նախ և առաջ քաղաքականապես, այն դիտել տվյալ փուլում լուծվող պրոբլեմների էության հետ անխզելիորեն կապված, կադրերն ընտրել «նոր չափանիշներով, նոր խնդիրներին համապատասխան»: Ի՞նչ է դա նշանակում հասարակական զարգացման արդի փուլի առնչությամբ:

Այսօր կադրային քաղաքականության վճռական չափանիշը, նրա յուրօրինակ կամերտոնը կադրերի վերաբերմունքն է վերակառուցման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների նկատմամբ, վերաբերմունքը ոչ թե խոսքով, այլ գործով: Իհարկե, մենք պետք է հաշվի առնենք, որ կադրերի ձևավորումն ու գործունեությունը երկար ժամանակ ընթացել են բնավ էլ ոչ լավագույն պայմաններում, ուստի և փոփոխությունները հեշտությամբ չեն հաջողվում: Մենք պետք է քրտնաջան և համառ աշխատանք կատարենք կադրային կորպուսի վերակառուցման նպատակով:

Մենք վճռականորեն բռնել ենք ձեռներեց, մտածող, եռանդուն մարդկանց աջակցելու կուրս, մարդիկ, որոնք ունակ են և ուզում են համարձակորեն առաջ ընթանալ, կարողանում են հաջողության հասնել: Այդպիսիները մեզ մոտ շատ են: Ապրիլյան պլենումի և XXVII համագումարի որոշումները թևավորեցին նրանց, լայն ասպարեզ բացեցին ստեղծագործական գործունեության համար: Տեսեք, թե ինչպես նորովի վառ և ուժեղ կերպով է բացահայտվում այնպիսի տնտեսական ղեկավարների տաղանդը, ինչպիսիք են Վլադիմիր Պավլովիչ Կաբաիձեն Իվանովոյից, Բորիս Իվանովիչ Ֆոմինը Լենինգրադի «Էլեկտրոսիլայից», Անատոլի Ալեքսեևիչ Պարշինը Տագանրոգի «Կրասնի կոտելշչիկից», Իվան Վասիլևիչ Ֆրանցենյուկը Նովոլիպեցկի մետալուրգիական կոմբինատից, Նովոչերկասկի կարի ֆաբրիկայի դիրեկտոր Ռաիսա Գեորգիևնա Ռոշչինսկայան, Դոնեցկի «Սոցիալիստական Դոնբաս» հանքվարչության դիրեկտոր Յուրի Իվանովիչ Բարանովը, «Մոսմարզգյուղշինի» № 18 տրեստի կառավարիչ Նիկոլայ Իլյիչ Տրավկինը, Բելոռուսիայի «Խաղաղություն» սովխոզ-



կոմբինատի դիրեկտոր Ալեքսանդր Նիկոլաևիչ Գուդուկը, կուբանցի հայտնի բրիգադավար Միխայիլ Իվանովիչ Կլեպիկովը, կոլտնտեսությունների նախագահներ Վասիլի Յակովլևիչ Գորինը Բելգորոդի մարզից, Նիկոլայ Դմիտրիևիչ Տերեշչենկոն Ստավրոպոլից, Միխայիլ Գրիգորևիչ Վագինը Գորկու մարզից, Յուրի Ֆյոդորովիչ Բուգակովը Նովոսիբիրսկի մարզից և շատ, շատ ուրիշներ:

Մենք պետք է սովորենք ամեն կերպ աջակցել այդպիսի աշխատողներին, գնահատել նրանց ինքնուրույնությունը, նախաձեռնությունը: Կարևոր է յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում ստեղծել այնպիսի մթնոլորտ, որը բոլորին մղեր արդյունավետ լուծումների որոնման, կարծիքների ծայր աստիճան բացահայտ, անկեղծ փոխանակման: Եվ, իհարկե, հարկավոր է վճռականորեն ազատվել այնպիսի, թող թույլ տրվի ասել, մեթոդներից, ինչպիսիք են շշպռումը, մտրակումը, պատիժ սեղմելը, որոնց դեռ հիմա էլ հաճախ դիմում են: Մենք կողմ ենք վերակառուցմանը, բայց ոչ թե կադրերին թափ տալուն: Հարկավոր է հարգել մարդկանց, ընկերներ,' և ավելի շատ վստահել նրանց:

Այսօր յուրաքանչյուրը հնարավորություն ունի դրսևորելու իր ունակությունները: Եվ նրանց, ովքեր ուզում են աշխատել, մենք պետք է օգնենք թե՛ խորհրդով և թե ընկերական խստապահանջությամբ: Դե իսկ նրանց հետ, ովքեր կառչում են հնին, անտարբեր մնում տեղի ունեցող փոփոխությունների նկատմամբ, իսկ երբեմն էլ պարզապես հակազդում դրանց, այդպիսիների հետ, բնականաբար, մեր ճանապարհները տարբեր են:

Այսպիսով, վերակառուցման նկատմամբ վերաբերմունքը, դրա իրականացման ռեալ գործերը վճռական մոտեցումն են կադրերի գնահատման հարցում: Իհարկե, մենք պարտավոր ենք հաշվի առնել նաև ուրիշ սկզբունքային հատկանիշներ: Նախ և առաջ ես նկատի ունեմ անհաշտությունը թերությունների, հնամոլության, անտարբերության և պասիվության նկատմամբ, նվիրվածությունը ամենայն առաջավորին և առաջադիմականին:

Վերակառուցումը աշխատողներից պահանջում է բանիմացություն և բարձր պրոֆեսիոնալիզմ: Այսօր չես գնա առանց ժամանակակից և բազմակողմանի պատրաստության, առանց արտադրության, գիտության և տեխնիկայի, կառավարման, էկոնոմիկայի, աշխատանքի կազմակերպման ու խթանման, հոգեբանության հարցերում խոր գիտելիքների: Մի խոսքով, մենք պետք է առավելագույնս գործի դնենք երկրի մտավոր պոտենցիալը, էապես բարձրացնենք նրա ստեղծագործական հատույցը:

Ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում կազմակերպվածությունն ու կարգապահությունը: Դրանք անհրաժեշտ են միշտ և ամենուրեք, բայց հատկապես կարևոր են ժամանակակից արտադրության նորագույն տեխնոլոգիաների լայն կիրառման պայմաններում: Վերջին տարիներին մենք տնտեսական անի տեմպերի զգալի արագացում ենք ստացել տարրական կարգուկանոնի հաստատման, թափթփվածության հաղթահարման հաշվին:

Բայց այդ խնդրի հրատապությունը մնում է: Կարգապահության անկայունությունը և պատասխանատվության նվազումն իրենց արմատներով անչափ խորն են գնացել և տակավին ցավագին կերպով իրենց զգալ են տալիս: Հենց հանցավոր անպատասխանատվությունն ու անկարգապահությունն էին այնպիսի ողբերգական իրադարձությունների գլխավոր պատճառները, ինչպիսիք են Չեռնոբիլի ատոմային էլեկտրակայանի վթարը, «Ադմիրալ Նախիմով» շոգենավի խորտակումը, մարդկային զոհերի պատճառ դարձած մի շարք ավիացիոն և երկաթուղային աղետները:

Հարկավոր է ամենուրեք ստեղծել այնպիսի իրադրություն, որը բացառեր նման դեպքերի կրկնության ամեն մի հնարավորություն: Կազմակերպվածությունը, հստակությունը, ճշտակատարությունը պետք է օրենք դառնան յուրաքանչյուրի համար:

Վերջապես, կարևորագույն պահանջը՝ մեր կադրերի բարձր բարոյականությունը, այնպիսի մարդկային գծեր, ինչպիսիք են ազնվությունը, անկաշառությունը, համեստությունը: Հիմա արդեն ոչ միայն անցյալից, այլև ներկա փորձից մենք գիտենք, որ առանց հասարակության բարոյական առողջության ամրապնդման մեզ չի հաջողվի լուծել վերակառուցման խնդիրները: Եվ պատահական չէ, որ մենք այսօր այնքան սուր կերպով բախվել ենք հենց բարոյական ոլորտի բացասական երևույթներին: Ես նկատի ունեմ հարբեցողությունը, հափշտակումները, կաշառակերությունը,

պաշտոնեական դիրքի չարաշահումները, պրոտեկցիոնիզմն արմատախիլ անելու համար մղվող պայքարը:

Հասարակության մեջ հատկապես սուր է ընկալվում այն ամենը, ինչ կապված է կուսակցության անդամների և առաջին հերթին ղեկավարների բարոյական նկարագրի հետ: Մեր առաջնահերթ խնդիրն է վերականգնել կոմունիստ ղեկավարի անաղարտ ու ազնիվ նկարագիրը, նկարագիր, որի վրա որոշակի ստվեր են նետել մի շարք վերասերվածների հանցագործությունները:

Մի խոսքով, ընկերներ, հաշվի առնելով ժամանակի առաջադրած պահանջները, մենք պետք է վճռականորեն վերակառուցենք կադրային աշխատանքը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ղեկավարության բոլոր էշելոններում՝ ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում:

Քաղբյուրոն ժամանակակից կադրային քաղաքականության էությունն ու գլխավոր խնդիրը նախ և առաջ հասկանում է որպես իր նկատմամբ, իր կադրերի նկատմամբ կուսակցության պահանջկոտության բարձրացում: Հասարակության մեջ վերակառուցումը խորացնել նշանակում է վերակառուցել կուսակցության, նրա կադրերի աշխատանքը բոլոր մակարդակներում՝ Կենտրոնական կոմիտեից մինչև սկզբնական կազմակերպությունները: Դա նշանակում է բոլոր օղակներում ստեղծագործաբար իմաստավորել ու հետևողականորեն իրականացնել կուսակցական կյանքի լենինյան սկզբունքներն ու նորմերը:

Ինչպե՞ս է ընթանում վերակառուցումը կուսակցության մեջ, ինչպիսի՞ օրինակ են տալիս կուսակցական կոմիտեները, կուսակցական ղեկավարներն ու ակտիվիստները:

Այսօր մենք կարող ենք ասել, որ կուսակցական կոմիտեների ու նրանց ղեկավարների մեծամասնությունը բարձր պատասխանատվությամբ, անկեղծ ցանկությամբ է գործի կպել: Նրանց մոտ շատ բան դեռ չի ստացվում, բայց նրանք օրեցօր փորձ են կուտակում, ավելի վստահորեն են գործում: Այդ փոփոխությունները հուսալի նախադրյալներ են ստեղծում մեր շարժումն արագացնելու համար:

Վերակառուցման քննություն են հանձնում բոլոր կուսակցական կադրերը: Բայց քննության արդյունքները տարբեր են լինում: Նկատելի խզում է առաջացել վճռականորեն առաջ անցածների և նրանց միջև, ովքեր դոփում են տեղում: Որոշ կուսակցական ղեկավարների հեշտորեն չի տրվում վերակառուցման դպրոցը: Նրանք ոչ մի կերպ չեն կարողանում հրաժարվել կուսակցական կոմիտեներին ոչ հատուկ դիսպետչերական ֆունկցիաներից, բոլորի փոխարեն հարցերը լուծելու, ամեն ինչ, ինչպես ասում են, բուռը հավաքելու ձգտումից: Իսկ դա, առաջվա նման, խանգարում է հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվության աճին, նրանց նախաձեռնության ու ինքնուրույնության զարգացմանը:

Փոխանակ զարգացնելու նորարարական որոնումը, կուսակցական աշխատողները հաճախ հիվանդագին են արձագանքում մարդկանց նախաձեռնությանն ու ակտիվությանը, դրանք համարում են գրեթե տարերային աղետ: Իսկ չէ՞ որ վերակառուցման պայմաններում կուսակցական կոմիտեների առաջնահերթ պարտականությունն է քայլել ժողովրդական զանգվածների առջևից, մարդկանց օգնել ավելի արագորեն արմատախիլ անելու թերությունները, իսկապես կարգավորելու գործը:

Դրա հետ մեկտեղ հարկավոր է ընկերներին նախազգուշացնել իրադարձությունների արհեստական արագացումից, առաջ վազելուց: Վերակառուցումը, մեր շարժման արագացումը հիմնված են հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների վրա: Բայց, ինչպես ամեն մի հասարակական շարժման մեջ, սուբյեկտիվ, անձնական հանգամանքի դերն այստեղ էլ բավականին մեծ է: Դրա ազդեցությունը կարող է լինել թե՛ դրական, թե՛ բացասական: Ուստի անչափ կարևոր է, որ նորացման պրոցեսը, որը չափազանց էականորեն է շոշափում մարդկային ճակատագրերը, հուսալիորեն պաշտպանված լինի մերկ վարչարարության և գործի նկատմամբ մեխանիկական մոտեցումների վերապրուկներից: Ոչ մի տեղ, մեր սոցիալական ու արտադրական համակարգի ոչ մի օղակում չի կարելի թույլ տալ վերակառուցման հասկացության արժեզրկում: Հարկավոր է տեսնել և անմիջապես արձագանքել, երբ նրա դրոշակի ներքո հանդես են գալիս հարմարվողականությունը, անձնական պատվա-



խնդրությունը, շահադիտական հաշիվը, երբ վերակառուցման կոնկրետ աշխատանքը նենգափոխվում է դատարկահունչ խոսքով, ճամարտակությամբ:

Ուզում եմ կրկնել՝ առանց դեմոկրատիայի զարգացման, առանց աշխատավորների լայն մասնակցության մենք չենք կարող լուծել վերակառուցման խնդիրները: Կուսակցական կոմիտեները, բոլոր կադրերը պետք է սովորեն աշխատել խորացող դեմոկրատիայի, ժողովրդի քաղաքական ու աշխատանքային հարահուն ակտիվության պայմաններում:

Բազմիցս հարկ է եղել համոզվելու, որ վերակառուցումն ավելի արագ է թափ առնում այնտեղ, որտեղ ավելի եռանդուն, նորովի են գործում կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները: Եվ դա հասկանալի է: Նրանք ամենից մոտ են կանգնած սկզբնական կուսակցական կազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին, ուրեմն և՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու համար մղվող պայքարի առաջավոր գծին: Այդ կոմիտեների մեծամասնությունը ճիշտ դիրք է բռնել և սկսել է վճռականորեն ու հետևողականորեն վարել կուսակցության նշած վերակառուցման կուրսը:

Դրա հետ մեկտեղ, տեղերում իրադրության ուսումնասիրումը, մամուլի ելույթները, կուսակցության Կենտրոնական կոմիտեում ստացված աշխատավորների նամակները վկայում են, որ կուսակցության ոչ քիչ թվով քաղաքային ու շրջանային կոմիտեներ, որոնց աշխատողները շարունակում են ապրել անցյալով, գործում են հին ձևով, ասես մնում են վերակառուցման ճամփեզրին: Անգամ եթե խոսքը մեկ քաղկոմի կամ շրջկոմի մասին լիներ, ապա դա էլ չէր կարելի անուշադրության մատնել: Իսկ տվյալ դեպքում խոսում ենք տարածված երևույթի մասին: Եվ դա, ընկերներ, պետք է մեր մտահոգության առարկան դառնա: Շատ դեպքերում կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեներում տիրող նման իրավիճակը բացատրվում է կոմիտեների քարտուղարների աշխատանքի ոճով ու մեթոդներով, դիրքորոշմամբ:

Կարծում եմ ճիշտ կլինի, եթե մենք ավելի մեծ ուշադրություն նվիրենք կուսակցության այդ կարևորագույն օղակին, շրջկոմներին ու քաղկոմներին օգնենք ավելի արագորեն ակտիվ դիրք բռնել վերակառուցման գործում: Այն ժամանակ էլ ավելի լավ կգործեն նաև սկզբնական կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվներին կառաջնորդեն առաջադրված խնդիրների լուծմանը: Մենք տեսնում ենք, թե ինչպես է անշեղորեն աճում կոմունիստների ակտիվությունը, ինչպես են աստիճանաբար մի կողմ քաշվում, իրենց դիրքերը զիջում անտարբերությունն ու ձևականությունը կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ: Բայց, ինչպես ասում են, այստեղ էլ դեռ անսպառ անելիքներ կան: Սկզբնական կուսակցական կազմակերպություններին գործուն օգնություն ու աջակցություն է պետք:

Ընկերնե՛ր: Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական կուրսի իրականացման համար հսկայական պատասխանատվություն է ընկնում տնտեսական կադրերի վրա: Երկրում լայնորեն անցում է կատարվում տնտեսավարման վարչական մեթոդներից տնտեսագիտական մեթոդների, գործերի պատասխանատու և ստեղծագործական վարման:

Ձեռնարկությունների ու միավորումների աշխատավորական կոլեկտիվներն այսօր իրենց տրամադրության տակ ֆինանսական ու նյութատեխնիկական խոշոր ռեսուրսներ են ստանում արտադրության վերազինման, սոցիալական հարցերի լուծման համար: Ղեկավարների համար լայն իրավունքներ են նախատեսվում ոչ միայն տակտիկական տնտեսական մանևրման, այլև հնգամյակի շրջանակներում կամ նրա սահմաններից դուրս հեռանկարային նպատակների իրացման համար: Մի խոսքով, ստեղծվում է տնտեսական, սոցիալական ու քաղաքական նոր իրադրություն, որտեղ կարող է իր ընդունակությունները լավ դրսևորել եռանդուն ու գիտակ տնտեսական աշխատողը:

Տնտեսական կադրերի մեծամասնությունը ողջունում է այն խոշոր միջոցները, որ կուսակցությունն ու կառավարությունը ձեռնարկում են կառավարման ռեֆորմի բնագավառում, ավելի ու ավելի ակտիվորեն է ներգրավվում դրանց իրագործման մեջ: Մենք արդեն տեսնում ենք օգտակար շատ նախաձեռնությունների իրականացման լավ սկիզբը: Ավելի ու ավելի լայնորեն է տարածվում և առաջին պտուղներն է տա-

լիս արդյունաբերական ձեռնարկությունների բազմահերթ աշխատանքի անցնելու լենինգրադցիների ու խարկովցիների փորձը:

Բուն Լենինգրադում և մարզում երկհերթ-եռահերթ աշխատանքի ռեժիմի են փոխադրվել փաստորեն բոլոր առաջատար ձեռնարկությունները: Դա թույլ է տվել երկրորդ հերթափոխում զբաղվածների թիվը մեծացնել գրեթե 50 հազար մարդով: Հիմա ավելի լավ են օգտագործվում և ավելի արագորեն են նորացվում հիմնական ֆոնդերը: Հնարավորություն է առաջացել ազատել 350 հազար քառակուսի մետր գործող տարածություն և 120 հազար քառակուսի մետրով կրճատել նոր շինարարության պահանջմունքը: Այս ամենը, նախնական գնահատումների համաձայն, կտա ավելի քան 100 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումների տնտեսում, որոնց մեծ մասը կհատկացվի բնակարանների և սոցիալական այլ օբյեկտների շինարարությանը:

Քիչ ստեղծագործություն հանդես չեն բերում այն միավորումների ու ձեռնարկությունների ղեկավարներն ու մասնագետները, որոնք այս տարվա սկզբից, ՎԱԶ-ի և Սումիի Ֆրունզեի անվան մեքենաշինական միավորման օրինակով անցել են լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման:

Տնտեսավարման նոր մեթոդների յուրացման հետաքրքրական փորձ է կուտակվել երկրի Բելոռուսական և մի շարք այլ երկաթուղիներում, որն ապահովել է ճյուղի աշխատանքի ցուցանիշների բարելավում, բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը: Ուշիմություն ու տնտեսական ձեռներեցություն են դրսևորել Ուկրաինայի մի շարք մարզերի աշխատավորական կոլեկտիվներ, լայնորեն ծավալելով ռեսուրսախնայողության շարժումը: Պաշտպանության է արժանի հանքագործների ու մետալուրգների բանվորական բրիգադների նախաձեռնությունը, որոնք ի հայտ են բերել պլանային առաջադրանքների ժամկետից շուտ կատարման ռեզերվներ: Լավ օրինակ են տալիս Սվերդլովսկի, Լիպեցկի և մի քանի այլ քաղաքների աշխատավորական կոլեկտիվները բնակարանային և այլ սոցիալական պրոբլեմների լուծման գործում:

Գյուղում ընդլայնվում են ինդուստրիալ տեխնոլոգիաների արմատավորման հիման վրա հացահատիկային և մի շարք այլ կուլտուրաների աճեցման մասշտաբները: Կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմակերպվում են տնտհաշվարկային կապալային կոլեկտիվներ, որոնք արագորեն մեծացնում են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարձրացնում էկոնոմիկայի արդյունավետությունը:

Եվ, այնուամենայնիվ, պետք է ասել անկեղծորեն. կադրերի կողմից տնտեսավարման ժամանակակից մեթոդների և աշխատանքում ժամանակակից մոտեցումների յուրացման պրոցեսը ընթանում է ոչ դյուրին ճանապարհով, հակասական, նկատվում են հիվանդագին երևույթներ ու հին վերապրուկներ: Դրա ակնբախ օրինակն է պետընդունման արմատավորումը: Հասկանալով այդ միջոցառման հսկայական կարևորությունը, շատ կոլեկտիվներ լավ են նախապատրաստվել նոր պայմաններում աշխատելուն: Եվ նրանց մոտ գործը, ոչ առանց դժվարությունների, բայց առաջ է գնում, ամրապնդվում է աշխատանքային կարգապահությունը, բարձրանում արտադրանքի որակը:

Բայց գտնվել են նաև այնպիսի աշխատողներ, որոնք բարձր պահանջների առաջ ընկրկել են: Փոխանակ թևերը քշտած ձեռնամուխ լինելու որակի բարձրացմանը, նրանք սկսել են իրենց և ուրիշներին վախեցնել հնարավոր բարդություններով, կոնֆլիկտային իրավիճակներով և անգամ գործարանների աշխատանքը կանգնեցնելով:

Ես, ընկերներ, հեռու եմ վիճակը թեթևացնելու մտքից: Բայց պարզ է մի բան. մենք՝ կոմունիստներս, սովետական բոլոր մարդիկ, այլևս չենք կարող հաշտվել այն բանի հետ, որ շատ ձեռնարկություններում տարիներով թողարկվում է այնպիսի արտադրանք, որը անհուսալիորեն հնացել է, առաջ է բերում սպառողների լուրջ դժգոհությունը, դանդաղեցնում է երկրի գիտատեխնիկական առաջադիմությունը: Մենք մեծ գործի ենք ձեռնամուխ եղել և պարտավոր ենք այն հասցնել մինչև վերջ:

Տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների անցնելը, միավորումների ու ձեռնարկությունների իրավունքների ընդլայնումը նոր իրավիճակ են ստեղծում մինիստրությունների ու գերատեսչությունների համար: Կենտկոմի 1986 թվականի հունիսյան պլենումում մենք արդեն քննարկել ենք նրանց աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցման հարցերը: Ի՞նչ է արվել այդ ժամանակից ի վեր:



Դանդաղ, թեև ոչ առանց ցավագին երևույթների, բայց մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքում փոփոխություններ են տեղի ունենում: Ճյուղերի շտաբները անմիջական մասնակցություն են ցուցաբերում ձեռնարկությունները տնտեսավարման նոր պայմանների փոխադրելու առաջարկությունների մշակմանը: Նրանք ավելի մեծ ուշադրություն են նվիրում գիտատեխնիկական քաղաքականության, ձեռնարկությունների վերակառուցման հարցերին, արդիական պահանջներին համապատասխանող արտադրանքի թողարկմանն անցնելուն:

Մենք որոշ ճյուղեր ու նրանց ստորաբաժանումներ ամրապնդել ենք ընդունակ մարդկանցով: Ղեկավարման են անցել, որպես կանոն, եռանդուն մասնագետներ, որոնք ցանկանում են նորովի սկսել գործը, ապահովել աշխատանքի ժամանակակից մեթոդների արմատավորումը: Այս գիծը հարկավոր է շարունակել, ակտիվորեն կատարելագործել մինիստրությունների ու գերատեսչությունների ապարատի գործունեությունը, այն համալրելով նախաձեռնող ու բարձրորակ կադրերով: Դրա հետ մեկտեղ, մենք շարունակում ենք հանդիպել այն բանին, որ կուսակցության ու կառավարության որոշումների իրականացման ուղղությամբ մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքում թույլ են տրվում քաշքշուկ ու անպատասխանատվություն: Ապարատն ասես գտնվում է հին դրույթների ու հրահանգների գերության մեջ, գործում է իներցիայով, չցանկանալով հրաժարվել իր իրավունքներից:

Մենք, ընկերներ, առաջին անգամ չէ, որ մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների ու ապարատի աշխատողների ուշադրությունն ենք հրավիրում նրանց գործունեության արմատական վերակառուցման անհրաժեշտության վրա: Դրանով իսկ բոլորին հնարավորություն է տրվում ներգրավվելու աշխատանքի մեջ, յուրացնելու գործի նկատմամբ նոր մոտեցումներ: Բայց չի կարելի թույլ տալ, որ մինիստրությունը կամ նրա աշխատողները անգործության մատնվեն, առավել ևս՝ խանգարեն վերակառուցմանը: Այս նախազգուշացումը պլենումի ամբիոնից անհրաժեշտ է, քանի որ խոսքը պետության ու ժողովրդի շահերի, մեծ քաղաքականության հարցերի մասին է: Այստեղ ավելորդ չէ վերհիշել լենինյան ցուցումը. «Ապարատն է քաղաքականության համար..., և ոչ թե քաղաքականությունը՝ ապարատի»:

Կադրերին նոր պայմանների մեջ է դնում արտաքին տնտեսական գործունեության վերակառուցումը, շատ մինիստրությունների, միավորումների անմիջականորեն արտաքին շուկա դուրս գալու իրավունքի և բոլոր ձեռնարկություններին սոցիալիստական երկրների պարտնյորների հետ ուղղակի կոոպերացիոն կապերի մեջ մտնելու իրավունքի տրամադրումը: Սա այն է, ինչին վաղուց ձգտում էին հասնել ճյուղային մինիստրությունները:

Բայց պետք է լավ հասկանալ, որ արտաքին տնտեսական գործունեության մեջ հաջողությունը հնարավոր է գիտության ու տեխնիկայի նվաճումների ակտիվ օգտագործման, կադրերի համապատասխան պատրաստության, նոր շուկաների յուրացման դեպքում միայն և այլն: Բացվող հնարավորությունների իրացման գլխավոր նախադրյալը որակի համաշխարհային մակարդակի արտադրանքի թողարկումն ապահովելն է:

Որոշումների ընդունումից հետո քիչ ժամանակ ու ջանքեր չեն ծախսվել կազմակերպական տարբեր հարցերի, իրավունքների ու պարտականությունների ճշգրտման վրա, արտաքին առևտրական կազմակերպությունների և կառավարման ճյուղային մարմինների հարաբերությունների վրա: Բայց կազմակերպական ժամանակաշրջանն արդեն ավարտվել է: Այժմ հարկավոր է ջանքերը տեղափոխել պրակտիկ գործերի բնագավառ, ավելի եռանդագին ձեռնամուխ լինել բոլոր արտասահմանյան պարտնյորների և առաջին հերթին սոցիալիստական երկրների հետ արտաքին տնտեսական կապերի հաստատմանը:

Ես արդեն առիթ ունեցել եմ ասելու, որ արագացման ստրատեգիայի հաջողությունը նախ և առաջ կախված է այն բանից, թե ինչպես ենք մենք լուծում գիտատեխնիկական առաջադիմության խնդիրները, որքան հմտորեն ենք միավորում սոցիալիզմի առավելությունները գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հետ:

Ռեալ նվաճումներն այստեղ որոշվում են գիտական գիտելիքի վիճակով, այնպիսի ինքնատիպ գաղափարների առաջքաշմամբ, որոնք ընդունակ լինեն մարմնավորվել սկզբունքորեն նոր մեքենաների ու տեխնոլոգիաների մեջ, որոնք հնարավորու-

թյուն ընձեռեն առաջ անցնել գիտության ու տեխնիկայի առաջատար ուղղություններում: Սա է գիտության առջև վերակառուցման դրած ստրատեգիական խնդիրը:

Այդ խնդրի իրականացման գործում կարևոր է ամեն ինչ՝ ուսանողներին բուհ ընդունելուց, մասնագետների պատրաստման որակից մինչև գիտությունների ակադեմիաները տաղանդավոր գիտնականներով համալրելը, ուսանողական գիտական ընկերությունների աշխատանքից մինչև առաջատար ակադեմիական ու ճյուղային ինստիտուտների հետազոտական ծրագրերը, գիտական կոլեկտիվներում ստեղծագործական մթնոլորտից մինչև գիտության կազմակերպման ու խթանման առավել արդյունավետ ձևերը:

Ներկայումս առանձնակի նշանակություն է ստացել արտադրության հետ գիտության ինտեգրացումը:

Այդ գործում կարևոր դեր է հատկացվում միջճյուղային գիտատեխնիկական համալիրներին: Այսօր ստեղծված է արդեն ավելի քան քսան այդպիսի համալիր: Այդ համալիրների գործունեության հետ մենք նոր գաղափարների մշակումն արագացնելու և հատկապես գիտատեխնիկական նվաճումներն արմատավորելու մեծ հույսեր ենք կապում: Ահա թե ինչու պետք է ավելի մեծ ուշադրություն հանդես բերել միջճյուղային գիտատեխնիկական համալիրների աշխատանքի նկատմամբ: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությունը, համապատասխան մինիստրությունները ու գերատեսչությունները պարտավոր են նրանց ապահովել անհրաժեշտ ամեն ինչով, հարկ եղած օգնություն ցույց տալ, ըստ ամենայնի նպաստել արդյունավետ գործունեությանը:

Առաջվա նման սուր, մեծ մասամբ չլուծված են մնում այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են ակադեմիական, բուհական և ճյուղային գիտության հստակ կոորդինացումը, բնական, տեխնիկական ու հասարակական գիտությունների ջանքերի ինտեգրացումը, կատարվող հետազոտությունների կոմպլեքսայնությունը, հիմնարար պրոբլեմների առաջադրման խորությունն ու կոնկրետ հետազոտությունների արդյունավետության բարձրացումը:

Պլենումի անունից դիմելով մեր գիտնականներին, բոլոր գիտաշխատողներին, ուզում եմ ասել. վերակառուցման ակտիվ մասնակիցը դառնալու համար գիտությունն ինքը պետք է մեծապես վերակառուցվի: Կյանքը շտապեցնում է մեզ: Նա, ով գիտական գաղափարներով առաջ չի անցնում, ենթակա է ամեն ինչում հետ մնալու վտանգին:

Այսպես է հարցն առաջադրում մեր ժամանակը՝ գիտության ու տեխնիկայի մեջ ամենախոր վերափոխումների ժամանակը, որպիսիք դեռ մարդկությունը չի իմացել:

Դա կուսակցական կոմիտեներին, մինիստրություններին ու գերատեսչություններին, տնտեսական մարմիններին պարտավորեցնում է դեմքները շրջել դեպի գիտության պահանջմունքները, որը պետք է մշտապես գործարար աջակցություն զգա: Մենք գիտենք, որ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությունն ու նրա պրեզիդենտ ակադեմիկոս Գ. Ի. Մարչուկը այդ առումով հետաքրքրական գաղափարներ, առաջարկություններ ունեն: Կարող եմ հավաստիացնել՝ դրանք աջակցություն կգտնեն Կենտկոմում և կառավարությունում:

Սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական ու հոգևոր առաջադիմության հեռանկարների հիմքը մեծապես դրվում է կրթության համակարգի ու որակի միջոցով: Մենք ձեռնամուխ ենք եղել հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմին: Այն, ինչպես դուք, ըստ երևույթին, գիտեք, հեշտ չի իրագործվում, ուստի և իր նկատմամբ անդուլ ուշադրություն է պահանջում բոլոր գծերով՝ դպրոցի նյութատեխնիկական բազայի ամրապնդումից մինչև ուսումնադաստիարակչական պրոցեսի բովանդակությունը, ձևերն ու մեթոդները: Որոշումներ են ընդունվել բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության վերակառուցման, բարձրագույն դպրոցի աշխատողների աշխատավարձի, ինչպես նաև ասպիրանտների և ուսանողների կրթաթոշակի բարձրացման մասին:

Այս ամենը նպաստավոր նախադրյալներ կստեղծի գիտության ու արտադրության արագացված զարգացման, կուսակցական համագումարի որոշումների կատարման համար: Մենք պարտավոր ենք իրագործել դրանք, ավելի արագորեն ապահովել վերջնական բարձր արդյունքների ձեռքբերումը:

Նոր հիմքի վրա կկառուցվի մասնագետների որակավորման բարձրացման ու



վերապատրաստման համակարգը: Ժամանակակից արտադրության պայմաններում կոնկրետ գիտելիքները, ունակություններն ու հմտությունները պետք է անընդհատ համալրվեն ու կատարելագործվեն բոլոր աշխատողների մեջ: Անընդհատ կրթության պետական համակարգի ստեղծումը XXVII համագումարն առաջադրեց որպես այն կարևորագույն խնդիրներից մեկը, որ մենք պետք է իրագործենք: Միայն այսպես կարելի է կադրերի բանիմացությունը պահպանել արդի պահանջների մակարդակի վրա, հատկապես տեխնիկայի ու տեխնոլոգիայի նոր և նորագույն բնագավառներում: Հազիվ թե կարիք կա ապացուցելու, թե որքան կարևոր է արագացնել այդ հարցի վերաբերյալ առաջարկությունների նախապատրաստության ավարտումը:

Վերջապես, մի քանի խոսք մեր պլանային, ֆինանսական և այլ տնտեսագիտական մարմինների կադրերի խնդիրների մասին: Այժմ նրանք պետք է արմատապես վերակառուցեն աշխատանքը, հաշվի առնելով տնտեսական ռեֆորմի խնդիրները:

Երկրի տնտեսագիտական գերատեսչությունները քիչ առաջարկություններ չեն արել կառավարման և տնտեսական մեխանիզմի վերակառուցման վերաբերյալ: Բայց, անկեղծ ասած, նրանց կադրերը իրենք են դանդաղ վերակառուցվում և անգամ, ես կասեի, հետ են մնում արտադրության ոլորտում տնտեսական վերափոխումներից: Իսկ չէ որ այն ամենը, ինչ այնտեղ տեղի է ունենում, պահանջում է զգալի փոփոխություններ կատարել ընդհանուր տնտեսագիտական գերատեսչությունների, տեղերում նրանց մարմինների ֆունկցիաներում:

Նրանց աշխատանքում կողմնորոշիչ պետք է լինեն քաղաքական այն հիմնադրույթները, որոնք ձևակերպված են XXVII համագումարի կողմից: Երկրում տնտեսական ռեֆորմի անցկացումը ինչպես էկոնոմիկայի ստորին օղակների ինքնուրույնության լայն զարգացման, այնպես էլ կառավարման մեջ կենտրոնացված սկզբունքի հետագա ամրապնդման նպատակ է հետապնդում՝ միաժամանակ կենտրոնն ազատելով ճյուղերի, միավորումների ու ձեռնարկությունների նկատմամբ մանր խնամակալությունից: Բոլոր կադրերը և առաջին հերթին տնտեսագիտական գերատեսչությունների ղեկավարները այժմ պետք է գործեն հենց այդպես, հրաժարվելով աշխատանքում եղած հին մոտեցումներից:

Եվս մեկ հարցի մասին, որն անմիջականորեն կապված է տնտեսագիտական ու տնտեսական կադրերի գործունեության հետ: Տասներկուերորդ հնգամյակի պլանում առանձնակի ուշադրություն է նվիրված սոցիալական ոլորտի զարգացմանը: Դա թելադրված է այստեղ տիրող իրադրությամբ:

Մենք պետք է ավելի արագորեն հաղթահարենք արտադրական ու սոցիալական ոլորտների զարգացման մակարդակների միջև գոյացած խզումը:

Կուսակցական համագումարը լուրջ ուղղումներ մտցրեց այդ հարցերի վերաբերյալ քաղաքական հիմնադրույթների մեջ, այն հետևությունն անելով, որ սոցիալական ոլորտի նկատմամբ ոչ բավարար ուշադրությունը դարձել է գիտատեխնիկական առաջադիմության, արտադրության արդյունավետության աճի մեջ թերանալու պատճառներից մեկը, խանգարել է առկա պոտենցիալի օգտագործմանը:

Այն փաստը, որ երկար տարիներ շարունակ տնտեսական աշխատողներից ինչպես հարկն է հաշիվ չեն պահանջել սոցիալական հարցերի լուծման համար, լուրջ հետք է թողել աշխատանքի նկատմամբ նրանց մոտեցումների վրա: Հարկավոր է վճռականորեն շտկել ստեղծված վիճակը: Առանց կուսակցական կոմիտեների հաստատակամ դիրքորոշման, առանց կառավարության գծով հետևողական գործնական քայլերի՝ դժվար կլինի այդ բանն անել:

Վերցրեք ամենաթարմ օրինակը: Անցյալ տարվա վերջին շարք մտցվեց Աստրախանի գազահամալիրի առաջին հերթը: Այստեղ իրացվել է ավելի քան մեկուկես միլիարդ ռուբլի կապիտալ ներդրում, աշխատում է բանվորների ու մասնագետների ութհազարանոց մի կոլեկտիվ, բայց նրանցից մշտական բնակարան ունի ընդամենը երեք հազարը: Ընդ որում, բնակարանների, պոլիկլինիկաների, ճաշարանների, սոցիալ-կուլտուրական ոլորտի մյուս օբյեկտների շինարարության մեջ թերացման հիմքը հենց սկզբից դրվել էր պլաններում: Ահա պլանային մարմինների մակարդակով սոցիալական գործերի նկատմամբ ոչ ճիշտ, սխալ մոտեցման ցավալի արդյունքը: Հարկավոր է որքան կարելի է արագորեն շտկել գործը:

Կուսակցության սոցիալական ակտիվ քաղաքականության վարման համար պատասխանատվություն են կրում բոլոր ղեկավար կադրերը՝ ներքևից վերև: Իսկ կյան-

քըն է պահանջել, որ մարդու շահերը համարվեն ղեկավար կադրերի գործունեության կարևորագույն բնագավառը, իսկ սոցիալական հարցեր լուծել կարողանալը դառնա նրանց գործարար ու քաղաքական հասունության գլխավոր չափանիշներից մեկը:

Ընկերնե՛ր: XXVII համագումարի որոշումների իրականացման գործում մեծ դեր է պատկանում սովետական, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններին, նրանց կադրերին: Նրանց առջև նույնպես ամբողջ հասակով մեկ ծառացել է իրենց գործունեությունը վերակառուցելու խնդիրը: Այն, ըստ էության, արդեն սկսվել է:

Ո՞ր ուղղությամբ պետք է շարունակվի այն: Դա քաղաքական մեծ հնչողության հարց է, քանի որ խոսքը մեր քաղաքական սիստեմի շատ կարևոր հաստատությունների մասին է:

Իրականացնելով վերակառուցումը, պետք է նկատի ունենալ թե՛ ներկա իրավիճակը և թե ամբողջությամբ վերցրած սովետական հասարակության, քաղաքական սիստեմի, սոցիալիստական դեմոկրատիայի, տնտեսական մեխանիզմի զարգացման ուղղությունները:

Ուզում եմ մեկ անգամ ևս ընդգծել հետևյալ միտքը. դեմոկրատացման գիծը, կառավարման և տնտեսավարման նոր մեխանիզմի ստեղծումը հնարավորություն են ընձեռում հասնելու պետական մարմինների, արհմիությունների, մյուս հասարակական կազմակերպությունների ակտիվ դերի հետ կուսակցության քաղաքական ղեկավարման ճիշտ զուգորդման:

Մենք արդեն հիմնարար որոշումներ ենք ընդունել ներկա պայմաններում սովետների գործունեության կատարելագործման վերաբերյալ: Այդ որոշումները թույլ են տալիս նրանց դրսևորելու որպես իրենց տերիտորիայում իշխանության իսկական մարմինների: Սովետների գործունեության մեջ փոփոխություններ տեղի են ունենում, բայց դեռևս մեզ չեն կարող բավարարել: Մենք բոլորս շահագրգռված ենք, որ սովետներն ավելի արագորեն գործի անցնեն հարկ եղածին պես, ժամանակի ոգով:

Կուսակցական կոմիտեները պետք է հաստատորեն սովետների դերը բարձրացնելու գիծ վերցնեն և թույլ չտան չհիմնավորված միջամտություն նրանց գործերին և մանավանդ չփոխարինեն նրանց:

Ոչ պակաս կարևոր է, որ սովետների ղեկավարները, սովետական ապարատը նույնպես սկսեն գործել լրիվ ուժով և ազատվեն իներցիայից, միշտ որևէ մեկին նայելու, ցուցումների սպասելու սովորությունից: Հարկավոր է ուժեղացնել դեմոկրատական հիմունքները սովետների և նրանց գործադիր մարմինների գործունեության մեջ:

XXVII համագումարում մենք ասացինք, որ աշխատավորների արմատական շահերը շոշափող շատ հարցեր կան, որոնք սովետների փոխարեն ոչ ոք չի լուծի: Խոսքը վերաբերում է սոցիալական քաղաքականության, բնակչության սպասարկման բարելավման պրոբլեմներին: Սակայն սովետները ոչ լրիվ չափով են տիրապետել իրենց նոր իրավունքներին, հարկ եղած պահանջները չեն ներկայացնում տնտեսական աշխատողներին: Եվ սա նույնպես այն բանի պատճառներից մեկն է, թե ինչու անցած տարվա պլանները սոցիալ-կուլտուրական շինարարության շատ ցուցանիշների գծով ձախողվեցին:

Կամ վերցրեք կոմունալ տնտեսությունը: Այժմ ինչքան կշտամբանքներ կան նրա աշխատանքի առթիվ, առանձնապես ցրտերի պայմաններում:

Իսկ չէ որ դա սովետների ուղղակի և հարազատ գործն է: Նրանք պետք է արմատապես փոխեն առևտրի, աշխատավորների կենցաղային սպասարկման, հանգստի կազմակերպման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ուղղությամբ տարվող աշխատանքը, ավելի լայնորեն օգտագործեն ռեզերվները պարենի ռեսուրսների համալրման համար:

Մենք խոշոր միջոցառումներ ենք նախատեսում առողջապահության, ժողովրդական կրթության ոլորտում: Դրանք անմիջական կերպով կապված են տարբեր մակարդակների սովետների գործունեության հետ: Այնպես որ խնդիրները շատանում են, և սովետները պետք է գործեն ավելի արդյունավետորեն ու ավելի հաստատակամորեն: Ահա թե մենք ինչ պետք է պահանջենք սովետներում և նրանց ապարատում աշխատող կադրերից: Այդ բանը նրանցից սպասում են սովետական մարդիկ:



Վերակառուցումը բոլոր կողմերով շոշափում է արհեստակցական միությունները: Ձեռնարկությունների և միավորումների տնտեսական ինքնուրույնության ուժեղացման համեմատ նրանց իրավունքները էականորեն ընդլայնվում են: Միաժամանակ զգալիորեն մեծանում է նաև պատասխանատվությունը աշխատավորական կոլեկտիվների լիազորությունների աճի, ինքնակառավարման զարգացման կապակցությամբ: Եվ իհարկե, ոչ ոք արհմիություններին չի ազատում սոցիալական քաղաքականության խնդիրների լուծման, աշխատավորների շահերի պաշտպանության գործում ունեցած պարտականություններից:

Կարճ ասած, արհմիութենական մարմինների կադրերին ներկայացվող պահանջները խիստ մեծացել են: Պետք է նրանց օգնել ակտիվ դիրք գրավելու վերակառուցման մեջ, պայմաններ ստեղծել բոլոր մակարդակներով կառավարչական որոշումների ընդունմանը նրանց ավելի լայն մասնակցության համար:

Այժմ, երբ արհմիութենական կազմակերպություններում ավարտվում են հաշվետվություններն ու ընտրությունները և մոտենում է ՍՍՀՄ արհեստակցական միությունների հերթական համագումարը, կարևոր է, որ վերակառուցմանը վերաբերող հրատապ պրոբլեմների այդ ամբողջ կոմպլեքսը համագումարի պատգամավորների ուշադրության կենտրոնում դրվի: Վերակառուցման կենտրոնական օղակը աշխատավորական կոլեկտիվներն են: Հենց այնտեղ արհմիությունները պետք է բացահայտեն իրենց պոտենցիալը, նոր ձևով գնահատեն իրենց հնարավորություններն ու իրավունքները և դրանով իսկ մեծացնեն ներդրումը սոցիալ-տնտեսական արագացման համաժողովրդական գործում:

Պայքար ծավալելով հասարակության առողջացման համար, կուսակցությունը հենց սկզբից ելել ու ելնում է այն բանից, որ այդ հսկայական աշխատանքը անհրաժեշտ է դնել համոզման ամուր հիմքի վրա: Գաղափարախոսական գործունեության գլխավոր ուղղություններից մեկը միլիոնավոր աշխատավորների գիտակցությունը վերակառուցման ոգով ձևավորելն է:

Մեզ որոշակի չափով հաջողվել է գաղափարախոսական աշխատանքը մոտեցնել կյանքին, հասարակության մեջ այսօր ընթացող պրոցեսներին: Եվ այն բանում, որ նորացման գաղափարները իսկապես հետաքրքիր են դառնում մասսաների համար, քիչ ծառայություն չունեն կուսակցական կազմակերպությունները, մեր պրոպագանդիստական կադրերը:

Բայց գաղափարախոսական ճակատում աշխատանքը դեռ ինչպես հարկն է պետք է ծավալվի շատ ուղղություններով, այդ թվում նաև քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման, դասախոսական և արտաքին քաղաքական պրոպագանդայի, աթեիստական դաստիարակության գծով և այլ ուղղություններով:

Կենտրոնական կոմիտեն կուսակցական կազմակերպություններին կողմնորոշում է այն բանին, որ գաղափարախոսական աշխատանքին մասնակցեն կուսակցության ամբողջ ակտիվը, բոլոր կոմունիստները: Բայց դա օրակարգից բնավ չի հանում գաղափարախոսական տեղամասերը բարձրորակ, պատրաստված կադրերով ամրապնդելու խնդիրը, որոնք լիովին զգան ժամանակի երակազարկը, խորապես ըմբռնեն առաջադրված խնդիրների էությունը, կարողանան արդյունավետորեն պրոպագանդել կուսակցության քաղաքականությունը, համոզել ու կազմակերպել մարդկանց:

Ժամանակակից պայմանները հրամայաբար պահանջում են, որ կուսակցության գաղափարախոսական կորպուսը համալրվի էկոնոմիկան, իրավագիտությունը, փիլիսոփայությունը, սոցիոլոգիան, գրականությունն ու արվեստը լավ իմացող, XXVII համագումարի ընդունած որոշումների, վերակառուցման կուրսի կենսական անհրաժեշտությանը ներքուստ համոզված մարդկանցով:

Ընկերնե՛ր: Երկրում սոցիալիստական օրինականության և իրավակարգի ամրապնդման անհրաժեշտությունից են բխում նաև սովետական դատարանների, դատախազության, միլիցիայի և մյուս իրավապահպան մարմինների կադրերի առջև կանգնած նոր պատասխանատու խնդիրները:

Կենտրոնական կոմիտեն, հսկայական նշանակություն տալով հասարակության համար այդ կարևոր հարցերին, վերջերս հատուկ որոշում ընդունեց՝ «Սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդման, քաղաքացիների իրավունքների և օրինական շահերի պահպանության ուժեղացման մասին»: Այդ որոշումը իրավապահպան մարմիններին, նրանց կադրերին կարևոր և ավելի բարդ

տանքի նոր մեթոդներին տիրապետելու, սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերը ղեկավարելու հասունության քաղաքական քննություն։

Մի խոսքով, նոր տարին նաև բացել է XXVII համագումարի գլխավոր կուրսի իրացման նոր, միանգամայն պատասխանատու խնդիրներ։ Քաղբյուրոն վստահ է, որ համագումարի գաղափարները, որոնք խորապես գիտակցվել են մեր բոլոր կադրերի կողմից, համակել են նրանց մտքերն ու խոհերը, ավելի ու ավելի հաստատակամորեն ու մասշտաբայնորեն նանապարհ կհարթեն դեպի կյանք, սահմանելով մեր զարգացման ընթացքը, երկրի դուրսբերումը տնտեսական, սոցիալական և հոգևոր առաջադիմության որակապես նոր բնագծեր։

Շարադրվածը կարելի է ամփոփել այսպես. մենք բոլորս միասին և յուրաքանչյուրս պարտավոր ենք աշխատել ավելի լարված։ Նոր իրադրության մեջ պետք է առանձնահատուկ ուժով դրսևորվի մեր կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների, բոլոր կոմունիստների մոբիլիզացնող դերը։ Կարևոր է մշտապես ձեռքը պահել կյանքի զարկերակին, ամեն ինչ անել, որպեսի նախատեսված պլանները իրագործվեն։

Կցանկանայինք այս կապակցությամբ խորհրդակցել մի այսպիսի սկզբունքային հարցի շուրջը։ Գուցե նպատակահարմար է եկող տարի, կուսակցական հաշվետուընտրական կամպանիայից առաջ գումարել համամիութենական կուսակցական կոնֆերանս, որտեղ լայն պլանով քննարկել ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրացման ընթացքը, հանրագումարի բերել հնգամյակի առաջին կեսի արդյունքները։ Ճիշտ կլիներ այդ կոնֆերանսում նաև քննարկել կուսակցության, ամբողջ հասարակության կյանքի հետագա դեմոկրատացման հարցերը։

Կոնֆերանսում սկսված խոսակցությունը կարող էր շարունակվել հաշվետուընտրական կուսակցական ժողովներում ու կոնֆերանսներում, որտեղ խստապահանջ կերպով կվերլուծվեին վերակառուցման ուղղությամբ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության աշխատանքի արդյունքները։

ՍՄԿԿ կանոնադրությանը համապատասխան համամիութենական կուսակցական կոնֆերանսի անցկացման փաստը ինքնին լուրջ քայլ կլիներ մեր կուսակցական կյանքի պրակտիկ դեմոկրատացման, կոմունիստների ակտիվության զարգացման գործում։

Ընկերնե՛ր։

Ձևավորելով կադրային քաղաքականությունը վերակառուցման, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պայմաններում, կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը դրանով իսկ սահմանում է մեր աշխատանքի գլխավոր ուղղությունները շատ տարիների համար։ Այսօր պլենումում մենք մշտապես դիմում ենք Վլադիմիր Իլյիչ Լենինին, նրա մտքերին, գաղափարներին։ Սա սոսկ հոկայական հարգանքի տուրք չէ, ոչ միայն Լենինի հեղինակության ընդունում։ Սա հրամայական ձգտում է արդի պայմաններում վերակոչելու և որքան կարելի է լրիվ վերակոչելու լենինիզմի ոգին, մեր կյանքում հաստատելու կադրերին ներկայացվող լենինյան պահանջները։ Հիշեցեք, թե Լենինը ինչպես կրքոտությամբ, ինչպես անդուլ կերպով սովորեցնում էր. հեղափոխական պայքարի հաջողությունը, հասարակության ցանկացած արմատական վերակառուցման հաջողությունը մեծապես որոշվում է այն տրամադրությամբ, որ կառաջացնի կուսակցությունը։

Մենք ուզում ենք մեր երկիրը դարձնել զարգացած պետության տիպար, ամենաառաջավոր էկոնոմիկայի, ամենալայն դեմոկրատիայի, ամենամարդասիրական ու բարձր բարոյականության հասարակություն, որտեղ աշխատավոր մարդը իրեն զգար որպես լիիրավ տեր, կարողանար օգտվել նյութական ու հոգևոր մշակույթի բոլոր բարիքներից, որտեղ հուսալի է նրա զավակների ապագան, որտեղ նա կունենար այն ամենը, ինչ հարկավոր է լիարյուն, բովանդակալից կյանքի համար։ Եվ որպեսզի նույնիսկ հոռետեսները ստիպված լինեն ասելու. այո, բոլշևիկները ամեն ինչ կարող են։ Այո, նրանց կողմն է ճշմարտությունը։ Այո, սոցիալիզմը այն հասարակարգն է, որը ծառայում է մարդու բարօրությանը, նրա սոցիալական ու տնտեսական շահերին, նրա հոգևոր վեհացմանը։

(Զեկուցումը լսվեց մեծ ուշադրությամբ և ընդունվեց երկարատև ծափահարություններով)։

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ

# ԵԶՐԱՓԱԿՄԱՆ ԽՈՍՔԸ

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1987 թվականի հունվարի 28-ին

Ընկերնե՛ր։ Մեր պլենումը ավարտում է աշխատանքը, օրակարգի գլխավոր հարցի քննարկումը։ Պլենումի աշխատանքի մթնոլորտը, տեղի ունեցած դիսկուսիան թույլ են տալիս հավաստել, որ այստեղ հայացքների միասնություն էր տիրում այն բոլոր հարցերում, որ ներկայացվել էին կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի քննարկմանն ու լուծմանը։ Դա ոչ թե ձևական միասնություն է, այլ ապրիլյան պլենումի և ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած ստրատեգիական կուրսի հաջող կենսագործման համար Կենտրոնական կոմիտեի պատասխանատվության ըմբռնման վրա հիմնված միասնություն։

Հիմա, երբ մենք ավարտեցինք մտքերի փոխանակությունը և պետք է որոշում ընդունենք, բնական է հարց տալը՝ արդարացրե՞ց, արդյոք, մեր պլենումը կոմունիստների, սովետական մարդկանց սպասելիքները։ Ինչպե՞ս պատասխանել այդ հարցին։ Ամենախիստ չափանիշներով այսօրվա պլենումը խոշոր քաղաքական իրադարձություն է թե՛ ՍՄԿԿ-ի կյանքում և թե՛ սովետական հասարակության կյանքում։

Կարծում եմ, մենք հիմք ունենք ասելու, որ պլենումը կուսակցությանը, երկրին, ամբողջ հասարակությանը էապես առաջ է տանում վերակառուցման ուղիով։ Բայց պլենումի նշանակությունը լրիվ չափով կարող է դրսևորվել միայն մի անհրաժեշտ պայմանի դեպքում. այն ամենը, ինչի մասին մենք պայմանավորվեցինք այստեղ, հետևողականորեն կկենսագործվի ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեների, կուսակցության երկրկոմների, մարզկոմների, քաղաքային, շրջանային, օկրուգային կոմիտեների, երկրի բոլոր կուսակցական կազմակերպությունների կողմից։

Ուստի ես այսպես կասեի. պլենումը սպասելիքները կարդարացնի, եթե մենք այդպես գործենք պլենումից հետո։ Այս պլենումը հիմնարար նախադրյալներ է ստեղծում պատմական զարգացման ներկա փուլի խնդիրներին համապատասխանող արագացման, վերակառուցման, կադրային քաղաքականության կատարելագործման ուղիով այսուհետև էլ հիմնավորապես առաջ ընթանալու համար։

Լայն դիսկուսիան, որին մասնակցեցին 77 ցուցակագրված ընկերներից 34-ը, մեզ եզակի հնարավորություն տվեց կուսակցության և պետության աշխատանքի տարբեր մակարդակներից և տարբեր ուղղություններից մեկ անգամ ևս հայացք գցել վերակառուցման վրա, իմաստավորել դրա դերն ու նշանակությունը, մեկ անգամ ևս գնահատել վերակառուցման բուն պրոցեսը, ասես, գնահատական ստանալ սկզբնաղբյուրից։

Մեզ համար ծայրաստիճան կարևոր է՝ ես կարծում եմ, մենք իրավունք ունենք այդ մասին ասելու, ամենից առաջ պլենումի կողմից այն փաստի քաղաքական արձանագրումը, որ կուսակցությունը, հասարակության բոլոր առողջ ուժերը հանդես են գալիս վերակառուցման օգտին։ Իսկ քանի որ դա այդպես է, այլ ուղի չի էլ կարող

լինել: Եվ դրանով պետք է ավարտել այն դիսկուսիան՝ հարկավոր է, թե հարկավոր չէ վերակառուցումը: Ես լրիվ համաձայն եմ ընկեր Դ. Կ. Մոտոռնու հետ, որն այստեղ ասաց, որ վերակառուցումը արդեն սոսկ գաղափար չէ, վերակառուցումը իրողություն է:

Սովետական մարդիկ վերակառուցման հետ կապում են իրենց կենսական պլանները, երկրի բախտը, նրա միջազգային հեղինակությունն ու կշիռը: Ուրեմն մի՞թե մենք կարող ենք թույլ տալ որևէ տատանում վերակառուցման անցկացման մեջ: Ոչ, ընկերներ:

Այո, վերակառուցումը արդեն իրողություն է: Այժմ մենք ավելի պարզորոշ և ավելի խորն ենք հասկանում, որ թե երկրի ներքին զարգացման տեսակետից և թե արտաքին պայմանների, միջազգային իրադրության տեսակետից մենք պետք է ապահովենք երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը: Բայց արագացում չի լինի առանց հասարակության նորացման, ինչպես որ առանց հասարակության նորացման նրա կյանքի բոլոր ոլորտների վերակառուցում չի լինի: Հին մոտեցումներով անհնար է լուծել նոր խնդիրները, առավել ևս՝ այսօր ծառացած պատմական մասշտաբի խնդիրները:

Վերակառուցումը հարթված ճանապարհով զբոսանք չէ: Դա վերելք է սարն ի վեր, հաճախ չտրորված արահետներով: Մեր հասարակության մեջ, ինչպես որ մեկ անգամ ևս ցույց տվեց Կենտկոմի պլենումը, պրոբլեմներ շատ են կուտակվել: Հսկայական ստեղծագործական ջանքեր ու տևական անձնվեր պայքար կպահանջվեն վերակառուցման մեծ գործը մինչև վերջ հասցնելու համար, ինչպես որ պահանջում է մեր ժողովուրդը, ինչպես որ պահանջում է մեր ապրած ժամանակը:

Մենք ճանապարհի սկզբին ենք միայն: Դա պետք է ստույգ սահմանել Կենտկոմի պլենումում, քանի որ այն բանի ըմբռնումը, թե մենք որտեղ ենք գտնվում, տալիս է նաև այն բանի ըմբռնումը, թե մենք ինչ պետք է անենք և ինչպես պետք է գործենք: Եթե որևէ մեկը որոշել է, որ ինքն արդեն վերակառուցվել է, ապա նրան պետք է հիշեցնել, որ մենք դեռ նոր ենք սկսել զբաղվել վերակառուցմամբ: Եվ ամենագլխավորը առջևում է: Սա կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի նույնպես կարևոր եզրակացությունն է:

Կատարելով, ծավալելով վերակառուցումը, մենք չպետք է այս կամ այն ծայրահեղության մեջ ընկնենք գնահատումների հարցում: Պետք է հաստատապես կանգնել միակ ամուր հիմքի վրա՝ իրողության հիմքի վրա: Մեր նվաճումների գերագնահատումը կործանարար հետևանքներ կունենար, բայց, մյուս կողմից, նույնպիսի ուժով ուզում եմ շեշտել. մենք չենք կարող չնկատել նույնիսկ նվազագույն առաջխաղացումը վերակառուցման մեջ, նույնիսկ փոքրի ոչ մեծ հաղթանակները: Դա պակաս կործանարար չէր լինի: Դա անթույլատրելի է նախ և առաջ թեկուզև ահա թե ինչու:

Մենք դեռ նոր ենք սկսում ծավալել գործերը, մեր քաղաքական գիծը զինելով կոնկրետ մոտեցումներով, սահմանելով մեր առաջադրած նպատակների իրագործման ուղիները: Մենք դեռ նոր ենք գործի դնում վերակառուցման մեխանիզմն ու միջոցները, առաջին քայլերն անում, որպեսզի դրանք սկսեն գործել ու հատույց տան: Բայց արդեն քննության առնելով 1986 թվականի արդյունքները, մենք տեսանք, որ առաջընթաց տեղի է ունեցել:

Որտեղի՞ց է այդ առաջընթացը: Դա մեր ժողովրդի կողմից վերակառուցման, արագացման գծին ցույց տրվող պաշտպանության ուղղակի արդյունքն է:

Ուրեմն մի՞թե մենք չենք կարող դա տեսնել, համարել, թե ոչինչ տեղի չի ունեցել և ոչինչ տեղի չի ունենում: Հեղափոխականը նա չէ, ով անտեղի հեղափոխական ֆրազներ է ասում, այլ նա, ով կարողանում է հեռանկար կառուցել, ժողովրդին և կուսակցությանը ոտքի հանել տևական ու համառ պայքարի, նկատելով առաջընթաց ամեն մի քայլ, այն օգտագործելով նոր, ավելի լայն քայլի համար ևս մի հենակետ գտնելու: Այսօր Կենտկոմի պլենումում մենք պետք է կուսակցական խորին շնորհակալություն հայտնենք մեր ժողովրդին այն բանի համար, որ նա հասկացավ, հոգով զգաց, իր ժողովրդական ինտուիցիայով զգաց, որ իրեն դժվարին պայքարի են կոչ անում, բայց այնպիսի փոփոխությունների, այնպիսի նպատակների համար, որոնք հիանալի պտուղներ կբերեն ամբողջ հասարակությանը, ամեն մի ընտանիքի, ամեն



մի մարդու: Սովետական մարդիկ հավատացին մեզ, նրանք պաշտպանեցին կուսակցությանը: Ահա թե ինչու մեզ համար այնքան կարևոր են 1986 թվականին ձեռք բերված դրական փոփոխությունները: Դրանք կարևոր են այն պատճառով, որ դրանցում արտահայտվեց մեր ժողովրդի հզոր աջակցությունը կուսակցության քաղաքականությանը, արագացման նրա կուրսին:

Ուզում եմ ընդգծել ևս մի քանի մոմենտներ, որոնք հնչեցին պլենումում: Կարծում եմ, որ քաղբյուրոյի զեկուցման մեջ միանգամայն օրինաչափորեն է առաջին պլան մղված որպես կարևորագույն թեմա սովետական հասարակության լուրջ, խորացված դեմոկրատացման թեման:

Դա, ընկերներ, այն լծակն է, որը թույլ կտա վերակառուցման մեջ ներգրավել նրա վճռական ուժը՝ ժողովրդին: Եթե մենք այդ բանը չանենք, ապա չենք լուծի արագացման խնդիրները, չենք ապահովի վերակառուցումը, վերակառուցում պարզապես չի լինի:

Մյուս կողմից, զարգացնելով, առաջ մղելով սոցիալիստական դեմոկրատիան, բացահայտելով նրա պոտենցիալը, մենք դրանով իսկ ամենահուսալի երաշխիքներն ենք ստեղծում, որպեսզի անցյալի սխալները չկրկնվեն: Բայց բանը միայն դա չէ:

Դեմոկրատիան մեզ օդի պես հարկավոր է: Եթե մենք դա չըմբռնենք ու եթե նույնիսկ ըմբռնենք, բայց ռեալ լուրջ քայլեր չանենք այն ընդլայնելու, առաջ տանելու, վերակառուցման պրոցեսի մեջ երկրի աշխատավորներին լայնորեն ներգրավելու ուղղությամբ, ապա մեր քաղաքականությունը կխեղդվի, վերակառուցումը շնչահեղձ կլինի, ընկերներ:

Սա է մեր գլխավոր մտահոգությունը: Ինչպես և քաղբյուրոյի բոլոր անդամները, իսկ մենք ամեն մի ընդմիջման ժամանակ կարծիքներ էինք փոխանակում պլենումի ընթացքի մասին, ես շատ գոհ եմ, որ արագացման նպատակների համար մղվող պայքարի ներկա փուլում ՍՄԿԿ-ի գործունեության այդ կարևորագույն ուղղությունը Կենտկոմի պլենումի լիակատար պաշտպանությունը գտավ:

Կոմունիստական կուսակցությունը հաստատորեն կողմ է այն բանին, որ ժողովուրդն ամեն ինչ իմանա: Հրապարակայնությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը, մասսաների վերահսկողությունը սովետական հասարակության առողջ զարգացման երաշխիքներն են: Քանի որ դրանք պետք են ժողովրդին՝ ուրեմն դրանք անհրաժեշտ են ամենքին: Դա կարևոր է, մանավանդ որ ՍՄԿԿ-ն կառավարող կուսակցություն է: Եվ նա շահագրգռված է հրապարակայնությամբ, քննադատությամբ ու ինքնաքննադատությամբ, քանի որ դրանք ՍՄԿԿ-ի նորմալ գործունեության ռեալ և հուսալի ձևերն են: Դրանք հենց այն միջոցներն են, որոնք կարող են կուսակցությանը զերծ պահել քաղաքականության մեջ սխալներից: Այդ սխալների գինը մեզ բոլորիս հայտնի է:

Այսօր պլենումում մենք բոլորս հանգում ենք մի միասնական եզրակացության. մեզ պետք է հրապարակայնությունը, մեզ պետք են քննադատությունն ու ինքնաքննադատությունը՝ որպես սոցիալիստական դեմոկրատիայի արդյունավետ ձևեր: Մեր պետության՝ բանվորների ու գյուղացիների պետության մեջ ամեն ինչ ժողովրդի գործն է, քանի որ դա նրա պետությունն է: Նա պետք է ամեն ինչ իմանա և ամեն ինչի մասին դատի գիտակցաբար: Այս խոսքերը, ինչպես գիտեք, պատկանում են Վ. Ի. Լենինին:

Ժողովրդին հարկավոր է ամբողջ ճշմարտությունը: Այս կապակցությամբ ես կուզենայի հիշեցնել լենինյան դիրքորոշումը, որը շարադրված է «Իսկրայի» խմբագրությանն ուղարկած նամակում: «Իսկապես ժամանակն է,— գրում էր Վ. Ի. Լենինը,— վճռականորեն դեն շպրտել աղանդավորական խմբակայնության ավանդույթները և ՄԱՍՍԱՆԵՐԻ վրա հենվող կուսակցության ներսում առաջադրել վճռական լոզունգ՝ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԼՈՒՅՍ, թող կուսակցությունն ամեն ինչ իմանա»: Մեզ ավելի, քան երբևէ, հիմա ավելի շատ լույս է հարկավոր, որպեսզի կուսակցությունն ու ժողովուրդը իմանան ամեն ինչ, որպեսզի մեզ մոտ չլինեն մութ անկյուններ, որտեղ կրկին բորբոս կբռներ, այն ամենը, ինչի դեմ մենք հիմա վճռական պայքար ենք սկսել և դեռևս հեռու ենք դրա ավարտումից: Ուստի և՝ ավելի շատ լույս:

Մի՞թե մենք այսպիսի հզոր կուսակցության հետ, սոցիալիզմի գաղափարներին, հայրենիքին նվիրված այսպիսի հայրենասեր ժողովրդի հետ չենք կարողանա գլուխ

հանել, եթե ինչ-որ մեկը փորձի լայն հրապարակայնությունից, դեմոկրատական պրոցեսից օգտվել շահադիտական և հակահասարակական նպատակներով, արատավորման նպատակով:

Ես ուզում եմ հայտնել այն դիտողությունը, որն արեցի, վերլուծելով իմ ուղևորությունները: Նախկինում հաճախ առաջին պլան էին դուրս գալիս հենց դեմագոգները, ցուցադրելով իրենց «համարձակությունը»: Հիմնականում դա այսպիսի դեմագոգիա էր. իբր ուր է նայում ղեկավարությունը, հատկապես Մոսկվայում: Իսկ այժմ այլ իրավիճակ է: Ես դա եզրակացնում եմ տասնյակ հանդիպումներից: Հիմա, ըստ որում ամենաանսպասելի լսարաններում ու վայրերում, ինչպես ասում են, ամենաանպատրաստ լսարանում անմիջական խոսակցության մեջ են մտնում հասուն, լուրջ մարդիկ: Նրանք գործարար կերպով հարցեր են առաջադրում, հարցնում այն մասին, ինչը իրենց համար պարզ չէ, պարզում են, թե ինչպես է լուծվելու այս կամ այն հարցը:

Հենց հրապարակայնության և դեմոկրատիայի իրադրությունը հնարավորություն տվեց, որ բանվոր դասակարգը, գյուղացիությունը, մեր մտավորականությունը, բոլոր առողջ ուժերը բարձր պահեն գլուխները: Հայտնվում է դեմագոգը, և նրանք իրենք էլ նրա բերանը փակում են: Դա իմ աչքի առաջ տասնյակ անգամներ տեղի է ունեցել: Մարդիկ միշտ էլ գլուխ կհանեն բոլոր հարցերից:

Հրապարակայնությունը, քննադատությունը, ինքնաքննադատությունը մեզ պարզապես անհրաժեշտ են: Դրանք սոցիալիստական ապրելակերպի կարևորագույն գծերն են: Եվ եթե որևէ մեկը ենթադրում է, որ դա մեզ անհրաժեշտ է միայն անցյալի թերությունները քննադատելու համար, ապա նա խորապես սխալվում է: Ամենագլխավորն այն է, որ հրապարակայնությունը, քննադատությունն ու ինքնաքննադատությունը, դեմոկրատիան անհրաժեշտ են մեր առաջընթաց շարժման համար, հսկայական խնդիրների լուծման համար: Առանց ժողովրդի ակտիվ մասնակցության մենք այդ խնդիրները չենք լուծի: Ահա թե ինչի համար է մեզ այդ բոլորն անհրաժեշտ:

Եվ եթե ինչ-որ մեկին թվում է, թե այսպիսի իրավիճակում աշխատելը դյուրին չէ, ապա ուզում եմ հիշեցնել, որ ես արդեն վեց ամիս առաջ խորհուրդ էի տալիս. սկսեք սովորել աշխատել ծավալվող դեմոկրատիայի պայմաններում: Եկեք բոլորս սովորենք:

Մամուլը պետք է երկրում պաշտպանի հրապարակայնությունը, իրազեկ դարձնի մեր ժողովրդին: Բայց նա պետք է դա անի պատասխանատու կերպով՝ այսպիսի ցանկություն ենք մենք հայտնում: Չիջնել սենսացիաների, «եփված փաստերի» որոնումների մակարդակին: Մեզ մամուլն անհրաժեշտ է որպես վերակառուցման ակտիվ մասնակից:

Մենք պետք է ավելացնենք գործարարությունն աշխատանքում: Այստեղ ճիշտ հնչեցին շատ ընկերների այն դիտողությունները, կարծիքները, որ խոսքեր արդեն շատ են ասվել:

Դա բոլորին է վերաբերում, այդ թվում նաև՝ մամուլին: Այժմ մեզ համար շատ կարևոր է տեսնել գոյություն ունեցող ամենայն դրականը, կոնստրուկտիվը, զինվել դրանով, դարձնել ամբողջ կուսակցության, ամբողջ ժողովրդի սեփականությունը, նոր մոտեցումների ծիլերն օգտագործել վերակառուցման պայմաններում: Այստեղ նույնպես հարկավոր են մեծ հրապարակայնություն և ամենայն առաջավորի պրոպագանդում:

Կենտկոմի հունվարյան պլենումից մենք թևակոխում ենք, չեմ ուզում, որ ինձ մեղադրեն, թե մենք դարձյալ ինչ-որ փուլ ենք հնարում, բայց մենք, այնուամենայնիվ, այժմ թևակոխում ենք մեր շարժման, վերակառուցման մեր աշխատանքի նոր փուլը: Ես այդ միտքը այսպես կպարզաբանեմ. իրավիճակի վերլուծությունը կատարված է, քաղաքական կուրսը՝ մշակված, այդ կուրսի իրականացման հիմնական որոշումները՝ ընդունված: Այժմ հարկավոր են գործեր ու գործեր:

Մեր քաղաքականության մասին, վերակառուցման մասին մարդիկ կդատեն (և որքան ուշ, այնքան ավելի խիստ) ըստ միլիոնավորների աշխատանքի ու կյանքի պայմանների գործնական բարելավման շոշափելի արդյունքների. թե որքան ավելի հստակ են դարձել արտադրության կազմակերպումը, ավելի արդար՝ աշխատանքի



վարձատրությունը, որքան է արագացել բնակարանային շինարարությունը, բարելավվել առևտուրը, կենցաղային սպասարկումը, քաղաքային տրանսպորտի, պոլիկլինիկաների, հիվանդանոցների աշխատանքը, որքան ավելի մաքուր, թարմ է դարձել բարոյական կլիման կուսակցական կազմակերպությունում, աշխատավորական կոլեկտիվում:

Մի խոսքով, ամենօրյա կյանքի բազմահազար փաստերով մենք՝ կոմունիստներս, պետք է ապացուցենք մեր քաղաքականության ճշտությունը, վերակառուցման կենսականությունը: Դա հատկապես բարձր պահանջներ է ներկայացնում կադրերին, նրանց կողմնորոշում գործնական արդյունքների: Ուստի և հիմա այդքան կարևոր է մեծացնել ջանքերը, թափ առնել, բարելավել բոլորի աշխատանքը, ինչպես որ այդ մասին արդեն ասվեց զեկուցման մեջ:

Հատկապես կուզենայի առանձնացնել այն խնդիրների կարևորությունը, որ մենք լուծում ենք հոբելյանական՝ 1987 թվականին: Խնդիրները հսկայական են ըստ մասշտաբների, ըստ բնագծերի, որոնց մենք պետք է հասնենք: Դրանք հատկապես կարևոր են տնտեսավարման նոր մեթոդները յուրացնելու, ամբողջ էկոնոմիկայի, նրա բազմաթիվ ճյուղերի տնտեսավարման նոր սկզբունքները անցնելու տեսակետից:

Վերակառուցումը, ընկերներ, մեծ դպրոց է: Նա բարդ խնդիրներ է առաջադրում: Եվ մենք պետք է լավ անցնենք այդ դպրոցը: Կուզենայի մեկ անգամ ևս կրկնել. հարկավոր է գործել, գործել և մեկ անգամ ևս գործել՝ ակտիվորեն, համարձակորեն, ստեղծագործաբար, բանիմացորեն: Դա, եթե կուզեք, պահի գլխավոր խնդիրն է: Այն պետք է իրենց վերագրեն բոլորը՝ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր կուսակցական կոմիտե, յուրաքանչյուր ղեկավար, յուրաքանչյուր կոմունիստ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անունից ես կուզենայի դիմել կուսակցության բոլոր ընկերներին, բոլոր սովետական մարդկանց. վերակառուցման գործը, հասարակության հեղափոխական նորացման գործը, երկրի բախտը ժողովրդի ձեռքին են: Եվ այդ բախտը կլինի այնպիսին, ինչպիսին մենք այն կստեղծենք՝ մեր ընդհանուր աշխատանքով, մեր բանականությամբ և մեր խղճով:

Վերակառուցումը պայքարի առաջավոր գիծ է յուրաքանչյուր ազնիվ մարդու համար, յուրաքանչյուր հայրենասերի համար: Գործերը բոլորին կբավականացնեն, և առջևում մեծ ճանապարհ կա:

Մենք հաստատակամ ենք XXVII համագումարի որոշումները կատարելու մեր ձգտման մեջ: Մենք կձգտենք հասնել սովետական հասարակության որակապես նոր վիճակի: Մենք վստահ ենք. վերակառուցման գործը անշրջելի է:

Կենտկոմի անդամները արտահայտվեցին համամիութենական կուսակցական կոնֆերանսի անցկացման օգտին: Կուսակցության համար այդպիսի կոնֆերանսը քաղաքական խոշորագույն իրադարձություն է: Ես այսպես եմ հասկանում, որ մաքերի փոխանակմանը չմասնակցողները նույնպես կողմնակից են այդ առաջարկությանը, որ քաղբյուրոն ներկայացրեց պլենումում:

Մենք, ընկերներ, պատմությունից հիշում ենք շատ կոնֆերանսներ, որոնք բեկումնային փուլերում օգնել են տեսնելու առաջադրված նպատակներին հասնելու նոր ուղիներ ու միջոցներ, լուծել տակտիկական՝ շրջանակներից մեծապես դուրս եկած պրոբլեմներ:

Մենք նպատակահարմար ենք գտնում, և ես դա ներկայացնում եմ ձեր քննարկմանը, որ քաղբյուրոն Կենտկոմի առաջիկա պլենումներից մեկի համար առաջարկություններ պատրաստի կոնֆերանսի անցկացման ժամկետների և կարգի մասին: Մենք կարծում ենք, որ կուսակցական կոնֆերանսը լավ լիցք կտա հաշվետու-ընտրական կամպանիային, մի նոր ազդակ՝ վերակառուցման ուղղությամբ կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների կողմից կատարվող աշխատանքին:

Համառոտակի այսպիսին են այն նկատառումները, որոնք կուզենայի արտահայտել կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումում տեղի ունեցած դիսկուսիայի վերջում:

Ուզում եմ ձեզ բոլորիդ շնորհակալություն հայտնել պլենումի աշխատանքին ակտիվորեն մասնակցելու համար և նրա բոլոր մասնակիցներին մեծ հաջողություններ մաղթել մեր ընդհանուր գործերում:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ

## Ո Ր Ո Շ Ո Ւ Մ Ը

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱԴՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը, լսելով և քննարկելով **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. **Մ. Ս.** Գորբաչովի «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» զեկուցումը, լիովին հավանություն է տալիս Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումին նախորդած ժամանակաշրջանում սովետական հասարակության մեջ ստեղծված իրադրության վերլուծության հիման վրա **ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոյի արած քաղաքական ու պրակտիկ հետևություններին, վերակառուցման ընթացքի սկզբունքային գնահատականին և կուսակցության XXVII համագումարի որոշումների կատարման առաջին արդյունքներին, ինչպես նաև **ՍՄԿԿ**-ի ժամանակակից կադրային քաղաքականության՝ Կենտկոմի քաղբյուրոյի ձևակերպած խնդիրներին, որոնք պետք է լուծեն բոլոր կուսակցական, պետական ու հասարակական կազմակերպությունները:

## I.

**ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեն նշում է, որ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումից և **ՍՄԿԿ** XXVII համագումարից հետո անցած ժամանակը հաստատեց սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, մեր հասարակության կյանքի բոլոր կողմերը որակապես վերափոխելու՝ կուսակցության մշակած և սովետական ժողովրդի պաշտպանությունն ստացած ստրատեգիական կուրսի ճշտությունը և կենսական անհրաժեշտությունը:

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո անցած գրեթե 70 տարում սոցիալիստական շինարարության ուղիներում սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումները հսկայական են ու անվիճելի: Բայց այդ հաջողությունները չպետք է իրենցով սքողեն այն փաստը, որ 70—80-ական թվականների ժամանակահատվածում երկիրը սկսեց կորցնել առաջընթացի տեմպերը: Էկոնոմիկայի մեջ, սոցիալական ու հոգևոր ոլորտներում սկսեցին կուտակվել դժվարություններ ու չլուծված պրոբլեմներ, երևան եկան լճացման և սոցիալիզմին խորթ այլ երևույթներ: Կուսակցության, նրա կադրերի հսկայական աշխատանքով հանդերձ, **ՍՄԿԿ** Կենտկոմը, երկրի ղեկավարությունը չկարողացան ժամանակին և լրիվ ծավալով գնահատել բացասական միտումների մեծանալու վտանգը, մշակել դրանց հաղթահարման հստակ գիծ: Սոցիալ-տնտեսական հասունացած հարցերի լուծման վրա բացասական ազդեցություն էր գործում ուշադրության թուլացումը տեսական մտքի զարգացման նկատմամբ, շարժիչ ուժերի դիալեկտիկայի և զարգացող սոցիալիզմի հակասությունների հետազոտման նկատմամբ: Լուրջ թերություններ էին կուտակվել սոցիալիստական դեմոկրատիայի հաստատությունների գործունեության մեջ, պլանավորման պրակտիկայում, կառավարման ոճի ու մեթոդների մեջ: Կուսակցական շատ կազմակերպություններ չկարողացան մնալ սկզբունքային դիրքերում, անհրաժեշտ ուշադրություն չէին դարձնում կուսակցական կյանքի լենինյան սկզբունքների ու նորմերի խստիվ պահպանմանը, վճռական պայքար չէին մղում բացասական երևույթների դեմ, կարգապահության թուլանալու, հարբեցողության տարածման, հափշտակումների, կաշառակերության դեմ: Միշտ չէ, որ պատշաճ հակահարված էր հասցվում գերատեսչականությանն ու տեղայնությանը, նացիոնալիստական դրսևորումներին:



Պլենումը նշում է այն բանի կարևոր նշանակությունը, որ այդ իրավիճակում կուսակցությունն իր մեջ ուժ և արիություն գտավ վերցնելու վերակառուցման կուրս, գլխավորելու վերակառուցումը, կազմակերպելու իր բնույթով հեղափոխական այն աշխատանքը, որ նպատակամղված է լճացման երևույթների վճռական հաղթահարմանը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հուսալի և գործուն մեխանիզմի ստեղծմանը: Այլ ուղի, բացի վերակառուցումից, մենք պարզապես չունենք, նահանջել մեզ չի կարելի, և նահանջելու տեղ չկա:

Վերակառուցման վերջնական նպատակն է մեր հասարակության կյանքի բոլոր կողմերի նորացումը, սոցիալիզմին հասարակական կազմակերպման ամենաարդիական ձևեր տալը, սոցիալիստական կարգերի ստեղծագործական պոտենցիալի առավել լրիվ բացահայտումը: Թափանցելով կյանքի խորքային շերտերը, ծավալվելով ամբողջ ճակատով, վերակառուցումը ավելի ու ավելի մեծ ազդեցություն է գործում երկրի իրադրության վրա, ձեռք բերում որակական նոր հատկանիշներ:

Ընդհանուր քաղաքական արդյունքն այն է, որ սովետական հասարակության կյանքում տեղի են ունենում նկատելի վերափոխումներ, զորեղանում են դրական միտումները, ստեղծվում է բարոյական նոր մթնոլորտ: Որպես ակտիվորեն գործող սկզբունքներ, ավելի ու ավելի են հաստատվում հրապարակայնությունը, ճշմարտացիությունը, թերությունների նկատմամբ անհաշտությունը, գործը բարելավելու ձգտումը: Հնգամյակի առաջին տարում ժողովրդական տնտեսությունը հիմնական ցուցանիշներով գերազանցեց պլանով նախատեսված բնագծերը, լուրջ հիմքեր ստեղծվեցին հետագա առաջընթացի համար:

Սակայն ամենուրեք չէ, որ ձեռնարկվող միջոցները և կատարվող աշխատանքը համապատասխանում են կուտակված պրոբլեմների մասշտաբներին ու սրությանը, իրագործվում պատշաճ արդյունավետությամբ և հարձակողականությամբ: Մի շարք կարևորագույն ուղղություններում, նախ և առաջ արդյունավետության ու որակի բնագավառում, գիտության ու տեխնիկայի զարգացման գործում, սոցիալական ոլորտում վերափոխումներն ընթանում են մեծ դժվարություններով: Դանդաղ է քանդվում և իր դիրքերը հանձնում սոցիալ-տնտեսական զարգացումն արգելակող՝ երկար տարիների ընթացքում առաջացած մեխանիզմը, ուժն ու ազդեցությունը դեռ չեն կորցրել պահպանողականությունը, իներցիան, հնացած մտածողությունը:

**ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների, մարզկոմների, օկրուգկոմների, քաղկոմների, շրջկոմների, կուսակցական, պետական ու հասարակական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը պլենումը համարում է վերակառուցման աշխատանքի հետագա ակտիվացումը, ջանքերի մեծացումը վերակառուցման բոլոր ուղղություններում: Այսօր՝ սկզբնական փուլում, շատ կարևոր է կանգնել իրատեսության դիրքերում, օբյեկտիվորեն գնահատել արվածը, ձեռք բերվածին նայել ոչ միայն համեմատելով անցյալի հետ, այլ, որ գլխավորն է, ելնել կուսակցության մշակած ու հավանություն տված պլաններից, որ յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր քաղաքացի տրամադրվի երկարատև, լարված, անձնվեր աշխատանքի: Սա է միակ ճիշտ կուսակցական մոտեցումը: Վերակառուցման հաջողության գրավականը առանց բացառության բոլորի արդյունավետ, բարեխիղճ աշխատանքն է: Պետք է հաստատակամորեն, քայլ առ քայլ, առանց տատանումների իրացնել նախատեսված կուրսը, թույլ չտալով խզում ընդունված որոշումների և դրանց պրակտիկ իրագործման միջև, ապահովել անցկացվող վերափոխումների անշրջելիություն:

Վերակառուցման հաջողությունը վճռական չափով կորոշվի նրանով, թե մեր կադրերը որքան արագ և խորապես կտոգորվեն հեղափոխական վերափոխումների անհրաժեշտության ըմբռնումով, թե նրանք որքան վճռականորեն, եռանդագին ու բանիմաց կերպով կգործեն: Այս նպատակներին է կոչված ծառայելու կուսակցության ակտիվ, նպատակասլաց, լենինյան սկզբունքների վրա հիմնված, վերակառուցման խնդիրներին համապատասխանող կադրային քաղաքականությունը: Այդ քաղաքականությունը պարտավոր է լիակատար չափով արտացոլել ժամանակակից իրադրության առանձնահատկությունները, ներկա պահի բնույթն ու խնդիրները, ապահովել կուսակցության ու պետության բոլոր օղակների, մեր ամբողջ հասարակական օր-

ցանիզմի բարձր գործունակություն: Կադրային քաղաքականությունը ՍՄԿԿ-ի ծրագրային նպատակների իրացման վճռական միջոցն է, այն հուսալի գործիքը, որը կուսակցությանը հնարավորություն է ընձեռում իրագործել հասարակության քաղաքական ղեկավարումը, մշակել և հաջողությամբ կենսագործել ժողովրդի շահերին, սոցիալիզմի ամրապնդման ու զարգացման խնդիրներին համապատասխանող ստրատեգիական գիծը:

## II.

1. Պլենումն ընդգծում է, որ երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պայմանն են սոցիալիզմի՝ որպես նոր հասարակարգի, հսկայական հնարավորությունների ավելի ու ավելի լրիվ բացահայտումը և օգտագործումը, նրա տնտեսական հիմքերի կատարելագործումը, սոցիալիստական դեմոկրատիզմի համակողմանի ծավալումը, ժողովրդի ինքնակառավարման խորացումը: Միայն այդ հիման վրա կարող են իսկապես թափ ստանալ ժողովրդական զանգվածների կենդանի ստեղծագործությունը, նրանց իրական մասնակցությունը հասարակության կյանքի բոլոր հարցերի լուծմանը, իրեն ամբողջ ուժով դրսևորել մարդկային գործոնը:

Հավանություն տալով կուսակցության XXVII համագումարի դրույթներին համապատասխան այդ ուղղությամբ ձեռնարկված կոնկրետ քայլերին, պլենումը անհրաժեշտ է համարում առավելագույնս օգտագործել սոցիալիստական դեմոկրատիայի ընդլայնման, սովետական քաղաքական սիստեմի զարգացման հնարավորությունները, կուսակցական, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների աշխատանքը հագեցնել իրական դեմոկրատական բովանդակությամբ, պայմաններ ապահովել կադրերի ընտրության և նրանց աշխատանքի վերահսկման վրա աշխատավորների ներգործությունը զգալիորեն ուժեղացնելու համար: Պետք է հասնել այն բանին, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունները լիովին կատարեն կադրային քաղաքականության իրականացմանը ակտիվորեն մասնակցելու կանոնադրական պարտականությունը:

2. Պլենումը առաջնահերթ նշանակություն է տալիս դեմոկրատիայի զարգացմանը արտադրության ոլորտում, աշխատավորական կոլեկտիվների կյանքում ինքնակառավարման հետևողական ներդրմանը, այնպիսի պայմանների ստեղծմանը, որոնք յուրաքանչյուր աշխատավորի թույլ տային իրեն զգալ իր ձեռնարկության իսկական տերը: Դրան պետք է նպատակամղվեն ձեռնարկությունների և միավորումների աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների ստեղծումը, դրանք, ինչպես նաև կոլեկտիվների ընդհանուր ժողովները արտադրական, սոցիալական ու կադրային բազմապիսի հարցերում վճռական լիազորություններով օժտելը:

Անհրաժեշտ համարել ձեռնարկությունների, արտադրությունների, արտադրամասերի, բաժինների, տեղամասերի, ֆերմաների և օղակների ղեկավարների, բրիգադավարների ու վարպետների ընտրովիություն մտցնելը: Ընդլայնել ղեկավարների և մասնագետների ընտրության ու փոխարինման կոնկուրսային համակարգի պրակտիկան և սահմանել դրա կիրառման պայմանները:

Նոր պայմաններում կարևոր նշանակություն է ստանում ճիշտ ըմբռնումն այն բանի, որ աշխատավորական կոլեկտիվներում ղեկավար աշխատողների ընտրովիությունը ոչ միայն չի խարխլում, այլև, ընդհակառակը, ամրապնդում է միանձնյա ղեկավարությունը, բարձրացնում ղեկավարների հեղինակությունը և դրա հետ մեկտեղ ավելացնում նրանց պատասխանատվությունը գործի համար, փոխադարձ խստապահանջության ու պահանջկոտության մթնոլորտ ստեղծում յուրաքանչյուր կոլեկտիվում: Միանձնյա ղեկավարության և կարևորագույն հարցերի վերաբերյալ որոշումների ընդունմանը կոլեկտիվների մասնակցության օրգանական զուգակցումը խորացնում և զարգացնում է դեմոկրատական ցենտրալիզմի, կոլեկտիվի վրա հենվող պլանային ղեկավարման սկզբունքը:

Պլենումը նպատակահարմար է համարում որպես հիմք հավանություն տալ պետական ձեռնարկության (միավորման) մասին ՍՍՀՄ օրենքի նախագծին, նկատի ունենալով այն հետագայում դնել համաժողովրդական քննարկման:

3. Պետք է ավելի լրիվ օգտագործել աշխատավորների նախաձեռնության և ինքնագործունեության զարգացման, էկոնոմիկայի ու սոցիալական ոլորտի կառավարման



դեմոկրատացման լայն հնարավորությունները, որ ունեն կոլտնտեսությունները և, ամբողջությամբ վերցրած, սոցիալիստական կոոպերացիան: Կարևոր է ապահովել կոլտնտեսությունների և մյուս կոոպերատիվ կազմակերպությունների կանոնադրությունների դրույթների խստիվ կիրառումը, դրանց մեջ փոփոխություններ մտցնել, որոնք նպաստեին կոոպերատիվների անդամների ակտիվության հետագա զարգացմանը, կոոպերատիվի յուրաքանչյուր անդամի համար կոլեկտիվ աշխատանքի և դրա ռեալ արդյունքների հարցում նրանց շահագրգռության մեծացմանը:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, համապատասխան հանրապետական և տեղական մարմիններին հանձնարարել միջոցներ ձեռնարկել լայնորեն տարածելու հասարակական սննդի, կենցաղսպասարկման և սովետական մարդկանց պահանջմունքների բավարարման հետ անմիջականորեն կապված ու նրանց շահերին համապատասխանող որոշ այլ ոլորտների կազմակերպման կոոպերատիվ ձևերը:

4. Հասարակական կյանքի դեմոկրատացման, կադրային քաղաքականության հանգուցային ուղղություններից մեկը սովետական ընտրական սիստեմի կատարելագործումն է: Կարևոր է սովետների դեպուտատության թեկնածուների առաջադրման ու քննարկման պրակտիկան ազատել ձևականության տարրերից, ընտրողին հնարավորություն ընձեռել արտահայտելու իր վերաբերմունքը մեծ թվով թեկնածուների նկատմամբ, արդյունավետորեն մասնակցելու ընտրական պրոցեսին՝ նրա բոլոր փուլերում:

5. Պլենումը պաշտպանում է ներկուսակցական դեմոկրատիան ընդլայնելու, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կոնֆերանսների և պլենումների աշխատանքի աշխուժացման արդյունավետ ուղիներ որոնելու, բոլոր մակարդակների կուսակցական ընտրովի մարմինների կազմավորման մեխանիզմը կատարելագործելու (նրա հետագա դեմոկրատացման նկատառումով) անհրաժեշտության հարցի սկզբունքային առաջադրումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի կողմից:

6. Պլենումը կարևոր նշանակություն է տալիս կադրերի գործունեության վերահսկողության ուժեղացմանը «վերևից» և հատկապես «ներքևից», լենինյան այն պահանջի հետևողական իրականացմանը, որ ղեկավար մարմինների աշխատանքը բացահայտ լինի բոլորի համար, արվի ի տես մասսայի: Այդ նպատակով պետք է ապահովվի ընտրովի և նշանակովի պաշտոնատար անձանց կանոնավոր հաշվետու լինելը աշխատավորական կոլեկտիվների ու բնակչության առջև, աշխատավորներին իրավունք ընձեռելով գնահատական տալու ղեկավարների գործունեությանը, ընդհուպ մինչև իրենց պարտականությունները չկատարած կամ իրենց վարկաբեկած աշխատողներին ազատելու հարցը դնելը: Անհրաժեշտ է ստեղծել ղեկավար կադրերի աշխատանքի վերահսկողության հստակ համակարգ, դրա համար օգտագործելով կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կոնֆերանսները, ժողովրդական դեպուտատների սովետների նստաշրջանները, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կոմիտեների պլենումները, ՍՍՀՄ Գերագույն սովետի, միութենական և ինքնավար հանրապետությունների Գերագույն սովետների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների մշտական հանձնաժողովների գործունեությունը, հետևողականորեն ընդլայնելով դեպուտատական հարցապնդումների պրակտիկան:

Նպատակահարմար գտնել ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահության կողմից ձեռնարկություններում և կազմակերպություններում ստուգումների և տեսչական ստուգումների գոյություն ունեցող պրակտիկայի կարգավորման միջոցների ձեռնարկումը, նկատի ունենալով, որ այդպիսի ստուգումները օգնեն գործին և ոչ թե տուրք տան ձևականությանը, որը գործից կտրում է մեծ թվով մարդկանց:

Կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես տեսադաշտում պահեն ղեկավար կադրերի, մասնագետների, պետական մարմինների ապարատի և հասարակական կազմակերպությունների աշխատողների ատեստավորումը, այն համարելով կադրերի աշխատանքի կոլեկտիվ վերահսկողության, նրանց գործարար որակավորման աճի խթանման ներգործուն ձև:

7. Պլենումը բոլոր կուսակցական կոմիտեներին ու կուսկազմակերպություններին պարտավորեցնում է ձեռնարկել հրապարակայնության ընդլայնման, քննադատության ու ինքնաքննադատության, հատկապես ներքևից եկող քննադատության, զար-

գացմանը նպատակամղված լրացուցիչ միջոցներ: Այդ փորձված զենքը լիովին օգտագործել թերությունների նկատմամբ անհանդուրժողականության, ձեռք բերվածից առողջ անբավարարվածության, սոցիալիստական բարոյականության նորմերից ամեն տեսակ նահանջները արմատախիլ անելու ոգով կադրերի դաստիարակման նպատակով: Անհրաժեշտ է միշտ ելնել այն բանից, որ քննադատության նկատմամբ վերաբերմունքը կադրերի քաղաքական հասունության, փոփոխություններին նրանց պատրաստության, գործով վերակառուցում իրականացնելու ունակության կարևոր ցուցանիշն է: Կուսակցության մեջ չեն կարող լինել քննադատությունից դուրս կանգնած անձինք, ինչպես նաև քննադատելու իրավունք չունեցող անձինք:

Պետք է վճռականորեն կասեցվեն քննադատությունը ճնշելու բոլոր փաստերը, ինչպես նաև ազնիվ, գործին նվիրված աշխատողներին անվանարկելու, անստորագիր նամակների և ուրիշ անվայել մեթոդների դիմելով անձնական հաշիվներ մաքրելու զրպարտիչների փորձերը:

8. Հաշվի առնելով, որ իսկական դեմոկրատիան գոյություն չունի օրենքից դուրս և օրենքից վեր, պլենումը մեծ նշանակություն է տալիս նոր օրենսդրական ակտերի մշակմանը և ընդունմանը, սովետական դատարանի դերի բարձրացմանը, դատավորների անկախության սկզբունքի խստիվ կիրառմանը, դատախազական հսկողության վճռական ուժեղացմանը, քննչական մարմինների աշխատանքի, սովետական պետության շահերի պաշտպանության, քաղաքացիների իրավունքների և ազատությունների ապահովման բոլոր ուղիների ու միջոցների կատարելագործմանը: Կուսակցությունը ելնում է այն բանից, որ սոցիալիստական դեմոկրատիան ընդհանուր ոչինչ չունի անարգելության, անպատասխանատվության, անարխիայի հետ: Նա կոչված է իրապես ծառայելու մարդուն, կոլեկտիվին ու հասարակությանը, աշխատավորների նախաձեռնության զարգացմանը, սոցիալիստական կարգերի ստեղծագործական պոտենցիայի բացահայտմանը, մեր հասարակության մեջ օրինականության և արդարության, առողջ բարոյական մթնոլորտի ամրապնդմանը: Հարկավոր է ուժեղացնել ղեկավար կադրերի, ամբողջ բնակչության իրավական դաստիարակությունը:

9. Պլենումը անհրաժեշտ է գտնում հոգալ սովետական դեմոկրատիայի սոցիալական բազայի հետևողական ընդլայնման մասին, վերակառուցման իրականացմանը, պետական և հասարակական կյանքին յուրաքանչյուր քաղաքացու, վետերանների և երիտասարդության, բնակչության բոլոր խավերի ներկայացուցիչների ավելի ակտիվ մասնակցության մասին:

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ բոլոր տեղամասերում ավագ սերունդների ստուգված կադրերի հետ ձեռք ձեռքի տված աշխատեն, փորձ կուտակեն, կոփվեն և ավելի ու ավելի համարձակորեն առաջ քաշվեն երիտասարդ, հեռանկարային աշխատողները:

Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են հմտորեն ուղղություն տալ այդ բնական պրոցեսին, այն դիտելով որպես ղեկավարման հաջորդայնության, մեր քաղաքական կուրսի ապահովման, քարացածության ու լճացման հաղթահարման պարտադիր պայման: Կարևոր է, որ երիտասարդությանը վստահելը, աշխատանքի, ուսման, կենցաղի, ազատ ժամանցի կազմակերպման գործում նրա ինքնուրույնությունը զարգացնելը զուգորդվեն անմիջական օգնություն ցույց տալու, սխալների ընկերական քննադատության հետ: Անհրաժեշտ է արմատապես բարելավել առաջքաշման համար կադրերի հուսալի ռեզերվի պատրաստման աշխատանքը:

Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական մարմիններ ղեկավար աշխատանքի հարկավոր է ավելի շատ երաշխավորել արժանավոր բանվորներին ու կոլտնտեսականներին: Ամեն կերպ խրախուսել նրանց ուսուցումը բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում, նրանցից մանրակրկիտորեն ընտրել և դաստիարակել ապագա ղեկավարների: Հարկավոր է անկուսակցական ընկերների շարքից առավել ակտիվորեն պատասխանատու պաշտոնների առաջ քաշել լավ կազմակերպիչներին: Պլենումը սկզբունքորեն կարևոր է համարում ղեկավար պաշտոնների կանանց առաջադրումը կառավարման բոլոր մակարդակներում և հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտներում:

10. Կենտկոմի պլենումը ուշադրություն է հրավիրում կադրերի հետ տարվող աշխատանքում լենինյան ազգային քաղաքականության պահանջների խիստ հետե-



վողական իրականացման, երկրի տնտեսական ու հասարակական կյանքի խորացող ինտերնացիոնալացման պրոցեսների համակողմանի հաշվառման անհրաժեշտության վրա: Ազգային հարաբերությունների զարգացմանը վերաբերող ամեն ինչում հարկավոր է հանդես բերել առանձնակի նրբազգացություն և շրջահայացություն, կուսակցական սկզբունքայնություն, մեր երկրի ժողովուրդների բարեկամության և եղբայրության ամրապնդման նկատմամբ հոգատարություն, վճռականորեն հաղթահարել այդ ոլորտի բացասական երևույթները, անզիջում հակահարված տալ նացիոնալիզմի և շովինիզմի, սիոնիզմի և հակասեմիտիզմի, տեղայնության ամեն տեսակ դրսևորումներին, խնամառական տրամադրություններին, ազգային սահմանափակությանն ու սնապարծությանը, դրանց հակադրել հետևողական, հաստատուն ինտերնացիոնալիզմ:

Կուսակցական, պետական, տնտեսական մարմիններում, հասարակական կազմակերպություններում ապահովել երկրի բոլոր ազգերի և ազգությունների պատշաճ ներկայացուցչությունը, հասնել այն բանին, որ ղեկավար կադրերի կազմը առավել լրիվ արտացոլի բնակչության ազգային կառուցվածքը: Կադրերի ինտերնացիոնալ կոփումն ուժեղացնելու, նրանց կուսակցական և պետական աշխատանքի փորձով հարստացնելու նպատակով անհրաժեշտ է ակտիվացնել կադրերի փոխանակումը հանրապետությունների ու ռեգիոնների միջև, տեղական և կենտրոնական մարմինների միջև:

## III.

1. Պլենումը հավանություն է տալիս կուսակցական սկզբունքների անցյալում թույլ տրված խախտումների, կադրային քաղաքականության վարման խեղաթյուրումների հաղթահարման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության ձեռնարկած միջոցներին: Ղեկավարության մեջ նոր ուժերի ներհոսը, այն ղեկավարների փոխարինումը, որոնց համար նոր խնդիրները ուժերից վեր եղան, ովքեր իրենց արատավորել են անարժան վարքով, դարձել են վերակառուցման անհրաժեշտ բաղկացուցիչ մասն ու կարևորագույն գործոնը:

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո հարկավոր է լրջորեն նորացնել կադրային քաղաքականությունը, այն դարձնել իրոք ժամանակակից, սոցիալ-տնտեսական արագացման պայքարի կարևոր ուղղությունների հետ անխզելիորեն կապված, հաստատակամորեն հասնել այն բանին, որ կուսակցական, պետական, տնտեսական, հասարակական աշխատանքի յուրաքանչյուր օղակ գլխավորեն կուսակցությանն ու ժողովրդին նվիրված մարդիկ, իսկական նորարարներ, որոնք խորապես գիտակցում են մեր հասարակության մեջ որակական փոփոխությունների անհրաժեշտությունը, ունակ են կոտրելու իներցիան ու հնամոլությունը, ստեղծագործաբար վարելու կուսակցության գիծը:

Անցյալի դասերի համակողմանի վերլուծության հիման վրա ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն սկզբունքորեն կարևոր է համարում.

կադրային քաղաքականության լենինյան ըմբռնմանը համապատասխան բոլոր մակարդակներում, ՍՄԿԿ Կենտկոմից և կառավարությունից սկսած, ժամանակին լուծել հասունացած կադրային հարցերը, ապահովել թարմ ուժերով ղեկավար կադրերի կազմի մշտական համալրումը, որպեսզի չընդհատվի նորացման պրոցեսը, չխախտվի հաջորդայնությունը.

ուժեղացնել կադրերի մարքս-լենինյան տեսական պատրաստությունը, գաղափարաբարոյական կոփումը, նրանց մեջ ձևավորել քաղաքական ու բարոյական բարձր կուլտուրա, կուսակցության արագացման կուրսի էության խոր ըմբռնում և յուրաքանչյուր տեղամասում ծրագրային նպատակները ամենօրյա կազմակերպչական, տնտեսական ու դաստիարակչական աշխատանքի հետ սերտորեն շաղկապելու, կուսակցական կոմիտեների գործունեության մեջ, կադրերի ընտրության հարցում տեխնոկրատական մոտեցման դրսևորումները հաստատակամորեն հաղթահարելու ունակություն.

կադրերի ընտրության և փոխարինման ժամանակ ապահովել նրանց նկատմամբ ուշադիր, լրջմիտ, սկզբունքային վերաբերմունք, բոլոր դեպքերում ղեկավարվելով բացառապես գործի շահերով: Այստեղ անթույլատրելի են ինչպես լճացումը,

այնպես էլ աշխատողների չհիմնավորված, հապճեպ փոխարինումը, վարչարարությունը, սուբյեկտիվիզմը, ինքնուրույն մտածողության ու նախաձեռնության նկատմամբ անհանդուրժողականությունը.

Մշտապես բարձրացնել կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, ամենուրեք ստեղծել փոխադարձ պահանջկոտության, ամուր կարգապահության ու կազմակերպվածության մթնոլորտ, վճռականորեն կասեցնել թափթփվածության դրսևորումները: Կադրերի նկատմամբ իսկական հոգատարությունը ընդհանուր ոչինչ չունի բարեհոգության ու ամենաթողության, բարեկամության ու սիրաշահման հետ.

Կադրային քաղաքականության մեջ խստիվ պահպանել ու զարգացնել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, ստեղծել անհրաժեշտ քաղաքական և իրավական նախադրյալներ այն բանի համար, որ կուսակցության և պետության մեջ, արհմիություններում, կոմերիտմիության մեջ և մյուս հասարակական կազմակերպություններում ընտրովի մարմինները լրիվ չափով օգտագործեն իրենց տրված իրավունքները, գործնական վերահսկողություն իրականացնեն գործադիր մարմինների նկատմամբ, ապարատի աշխատանքի նկատմամբ.

Ընտրովի մարմիններում հաստատել իսկական կոլեկտիվության, հավասարության, հարցերի ազատ և սկզբունքային քննարկման մթնոլորտ: Ղեկավարի դիրքը, ինչպիսին էլ որ լինի, նրան ոչ թե ընտրովի մարմնի մյուս անդամներից վեր է դասում, այլ միայն ընդգծում է նրա ավելի մեծ պատասխանատվությունը կուսակցական նորմերի և սկզբունքների խստագույն կիրառման համար.

Պրակտիկ միջոցառումներ իրականացնել կուսակցական, պետական և հասարակական վերահսկողության մարմինների գործունեության արմատական բարելավման ուղղությամբ, ուժեղացնելով նրանց ներգործությունը կարգապահության ամրապնդման, ամեն կարգի խախտումների ու չարաշահումների իսպառ վերացման, ապարատի աշխատանքում հստակության բարձրացման վրա:

2. Կենտկոմի պլենումը ընդգծում է, որ կադրերի, նրանց քաղաքական և քաղաքացիական դիրքորոշման գնահատման վճռական չափանիշն են վերաբերմունքը վերակառուցման նկատմամբ, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրների նկատմամբ, ռեալ գործերը դրանց իրականացման ասպարեզում: Կուսակցությունը առաջ կքաշի ու կպաշտպանի այն աշխատողներին, որոնք ոչ միայն համամիտ են վերակառուցման կուրսին, այլև ակտիվորեն, ստեղծագործաբար ներգրավվել են նորացման պրոցեսի մեջ, իրենց բոլոր ուժերը նվիրաբերում են ընդհանուր գործին, կարողանում են հաջողության հասնել: Ով ի վիճակի չէ բարելավելու գործերի վիճակը իրեն հանձնարարված տեղամասում, անտարբեր է տեղի ունեցող փոփոխությունների նկատմամբ, կառչում է հնից, նա իրավունք չունի ղեկավար պոստ գրավելու:

3. Վերակառուցման պրոցեսը անխզելիորեն կապված է սոցիալիստական հասարակության, սովետական ապրելակերպի բարոյական հիմքերի ամրապնդման հետ: Գաղափարական խոր համոզվածություն, երկրի բախտի համար մեծագույն քաղաքական և բարոյական պատասխանատվություն, բոլշևիզմի լենինյան էթիկայի անշեղ հետամտում՝ այս պահանջները արդի իրադրության մեջ առանձնակի սրությամբ են ներկայացվում մեր բոլոր կադրերին: Նրանք պետք է գաղափարական տոկունության, կուսակցական ու պետական կարգապահության անշեղ պահպանման, խոսքին հավատարմության, ազնվության, օրինավորության, անկաշառության, համեստության, սոցիալիստական բարոյականության նորմերից ամեն կարգի շեղումների հանդեպ անհանդուրժողության օրինակ ծառայեն:

Անհրաժեշտ է անշեղորեն ազատվել հարմարվողներից, կարիերիստներից, կոնյունկտուրականներից, նրանցից, ովքեր վարկաբեկում են կուսակցության անդամի, սովետական ղեկավարի կոչումը դրամաշորթությամբ, տնտեսական հղփացմամբ, հարբեցողությամբ, բարոյապես անմաքուր վարքով: Պետք է վճռական պայքար մղել պրոտեկցիոնիզմի, ընտանեկանության, խնամիականության դեմ, հայրենակցության և անձնական նվիրվածության հատկանիշներով աշխատողների առաջքաշման դեմ: Կուսակցական կանոնադրության և սովետական օրենքների ամենայն խստությամբ պետք է հաշիվ պահանջել նրանցից, ովքեր փորձում են իրենց պաշտ-



պանության տակ առնել խաբեբաներին, հափշտակիչներին, կաշառակերներին: Հրապարակայնորեն հասարակական դատապարտման ենթարկել նրանց, ովքեր գիտակցաբար քամահրում են մեր սկզբունքները: Ղեկավարի անաղարտ և ազնիվ նկարագրի մասին հոգալը յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության առաջնահերթ պարտքն է:

Պլենումը պարտավորեցնում է կուսակցական կոմիտեներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին վճռականորեն կասեցնել գործը տապալած կամ իրենց վարկաբեկած ղեկավարներին պատասխանատվությունից զերծ պահելու ամեն տեսակ փորձերը, ում կողմից էլ որ դրանք արվեն: Պետք է ամենուրեք վերջ դնել դեռևս գոյություն ունեցող այն պրակտիկային, երբ ղեկավար աշխատողների զանցանքներին վերաբերող հարցերը քննվում են թաքուն կերպով, լռության են մատնվում գրաված պաշտոնից այս կամ այն պատասխանատու անձի ազատման իսկական պատճառները: Պետք է անշեղորեն կիրառել ՍՄԿԿ կանոնադրության այն դրույթը, որ կոմունիստը թույլ տված զանցանքների համար պատասխանատու է ամենից առաջ սկզբնական կուսակցական կազմակերպության առջև: Կուսակցության և պետության մեջ ամենքի համար օրենքը մեկն է, և կարգապահությունն էլ ամենքի համար մեկն է:

4. Վերակառուցման խորացումը նշանակում է ամենից առաջ վերակառուցել հենց կուսակցության, նրա կադրերի աշխատանքը բոլոր մակարդակներում՝ Կենտրոնական կոմիտեից մինչև սկզբնական կուսակցական կազմակերպությունները, բոլոր օղակներում հետևողականորեն կիրառել կուսակցական կյանքի լենինյան սկզբունքներն ու նորմերը: Կենտրոնական կոմիտեն սա է համարում ժամանակակից կադրային քաղաքականության էությունն ու գլխավոր խնդիրը:

Պետք է ելնել այն բանից, որ այսօր կուսակցության, նրա կոմիտեների ուղղություն տվող, կոորդինացնող դերը պետք է դրսևորվի նրանով, որ բոլոր ոլորտներում աշխատող կադրերին օգնություն ցույց տրվի գիտակցելու մոմենտի խնդիրները և նրանցից խիստ հաշիվ պահանջվի հանձնարարված գործի համար: Պետք է վճռականորեն հրաժարվել կուսակցական մարմիններին ոչ հատուկ կառավարչական ֆունկցիաներից, ուրիշների տեղը հարցերը լուծելու, սովետական մարմիններին, տնտեսական և հասարակական կազմակերպություններին փոխարինելու ձգտումից: Հատուկ ուշադրություն նվիրել կուսակցության շրջկոմների և քաղկոմների աշխատանքի վերակառուցմանը, որոնք անմիջականորեն իրականացնում են կուսակցության կապերը նրա սկզբնական օղակների, աշխատավորական կոլեկտիվների հետ:

Հաստատակամորեն ձգտել այն բանին, որ յուրաքանչյուր կուսակցական կոմիտե՝ որպես քաղաքական ղեկավարման մարմին, հանդես գա իբրև նոր գաղափարների իսկական գեներատոր և իրագործիչ, իբրև բոլոր ուժերի փոխգործակցության կազմակերպիչ, կարողանա ճիշտ տեղաբաշխել դրանք, կանխատեսել ու հաշվի առնել ընդունվող որոշումների հետևանքները:

Կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում պետք է լինեն հոգատարությունը մարդու, նրա աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների նկատմամբ, մարդկանց գիտակցության ձևավորումը: Պետք է կուսակցական ղեկավարման ոճի մեջ գործնականորեն շեշտը տեղափոխել մասսաների մեջ տարվող կենդանի աշխատանքի վրա, ընդունվող որոշումների և նախատեսվող պլանների գործնական կատարման կազմակերպման, ժողովրդական նախաձեռնության պաշտպանության, նորարարական որոնման խրախուսման վրա:

Վերակառուցման, արագացման համար մղվող պայքարի հիմնական օղակը սկզբնական կուսակցական կազմակերպություններն են, որտեղ կուսակցության քաղաքականությունը իրացվում է միլիոնավոր կոմունիստների ջանքերով, շաղկապվում աշխատավորների ամենօրյա կյանքին, գործերին ու հոգսերին: Սկզբնական կուսակցական կազմակերպությունների կազմակերպական և գաղափարաքաղաքական ամրապնդումը, նրանց մարտունակության և ակտիվության բարձրացումը կուսակցության շրջկոմների, քաղկոմների, օկրուգկոմների, մարզկոմների, երկրկոմների, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների կարևորագույն խնդիրն են:

Անհրաժեշտ է կուսակցական աշխատողների մեջ դաստիարակել գործի նկատմամբ քաղաքական, պետական մոտեցում, խորացող դեմոկրատիայի, մարդկանց հա-

րանում հասարակական և աշխատանքային ակտիվության պայմաններում աշխատելու, նրանց համոզելու և իրենց հետևից տանելու կարողություն, պահպանողականության, բյուրոկրատիզմի, տեղայնության, գերատեսչականության դրսևորումների նկատմամբ անհանդուրժողականություն: Պլենումը հավանություն է տալիս կուսակցական-քաղաքական կրթության համակարգի կոմպլեքսային վերակառուցման, կյանքի հետ, ժամանակակից խնդիրների հետ նրա ամենասերտ կապի վերաբերյալ քաղբյուրոյի նախատեսած միջոցառումներին և կուսակցական կոմիտեներին պարտավորեցնում է ուժեղացնել կուսակցական կազմակերպություններին և պրոպագանդայի միջոցներին ցույց տրվող գործնական օգնությունը, բարելավել մասսաների մեջ գործող ստորին կուսակցական ակտիվի ուսուցման և իրազեկման կազմակերպումը:

5. Հաշվի առնելով սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության ստրատեգիական կուրսի իրացման համար այն վիթխարի պատասխանատվությունը, որ ընկնում է էկոնոմիկայի ոլորտում զբաղված կադրերի վրա, պլենումը ուշադրություն է հրավիրում ձեռնարկությունների և միավորումների իրոք բանիմաց, ձեռներեց ղեկավարների առաջքաշման և դաստիարակության անհրաժեշտության վրա, որոնք կարողանան աշխատել մարդկանց հետ և տնտեսավարման նոր պայմաններում ապահովել գիտատեխնիկական առաջադիմության առաջավոր բնագծեր դուրս գալը, թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավումը, արտադրության բարձր արդյունավետությունը: Պետք է նրանց օգնություն ցույց տալ ավելի արագորեն յուրացնելու ղեկավարման տնտեսագիտական մեթոդները, որոնք հիմնված են միավորումների և ձեռնարկությունների լրիվ տնտհաշվարկի ու ինքնաֆինանսավորման, լայն ինքնուրույնության և աշխատանքի արդյունքների համար նրանց ավելի մեծ պատասխանատվության վրա, արտաքին տնտեսական գործունեության նկատմամբ նոր մոտեցման վրա: Մեծ կարևորության գործ է պետընդունման ներդրումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն սկզբունքային նշանակություն է տալիս վերակառուցման մեջ, արագացման համար, մեր հասարակության բոլոր օղակներում բարձր կարգապահության, բարոյական անաղարտության ամրապնդման համար մղվող պայքարի մեջ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության, բոլոր աշխատավորների ակտիվ ներգրավմանը: Անհրաժեշտ է ելնել այն բանից, որ վերակառուցման պայմաններում աշխատանքի ամեն մի տեղամասում բոլոր աշխատավորներից պահանջվում են հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվություն, պրոֆեսիոնալ վարպետության և աշխատանքի կուլտուրայի մշտական բարձրացում, ժամանակակից առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի տիրապետում, նախաձեռնություն և ստեղծագործություն:

6. Պլենումը կարևորագույն խնդիր է համարում ժողովրդական տնտեսության մեջ ինտելեկտուալ, կադրային պոտենցիալի որակի և ստեղծագործական հատույցի էական բարձրացումը, մասնագետների պատրաստման և օգտագործման բարելավումը, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցի աշխատանքի վերակառուցումը, հանրակրթական և պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցի ռեֆորմի հետևողական անցկացումը, երկրում անընդհատ կրթության միասնական համակարգի ստեղծումը: Պետք է հատուկ ուշադրություն նվիրել ժողովրդական տնտեսության գերադաս զարգացում ստացող ճյուղերի, նոր ստեղծվող արտադրությունների առաջնահերթ կադրային ապահովմանը, նոր տեխնիկայի թողարկումը յուրացնող և այն շահագործող մասնագետների ու բանվորների պատրաստմանը:

7. Ելնելով այն բանից, որ տեխնիկայի և տեխնոլոգիայի արագացված զարգացումը պահանջում է հիմնարար գիտական գաղափարների և կիրառական մշակումների գինանոցի հարաճուն համալրում, դեպի ժողովրդական տնտեսության կարիքները գիտության կտրուկ շրջադարձ, պլենումը հույժ կարևոր է համարում մեծացնել ակադեմիական, ճյուղային և բուհական գիտության կադրերի հատույցը արտադրության համակողմանի ինտենսիվացման, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման հետ կապված խնդիրների իրականացման մեջ, ուժեղացնել գիտության ինտեգրացումը արտադրության հետ: Ավելի մեծ ուշադրություն նվիրել գիտաարտադրական միավորումների և միջճյուղային գիտատեխնիկական համալիրների աշխատանքին: Անհետաձգելի միջոցներ ձեռնարկել կատարելագործելու գիտական կադ-



րերի պատրաստումը, նրանց կազմը համալրելու ընդունակ երիտասարդներով, պայմաններ ստեղծելու գիտնականների արգասավոր աշխատանքի համար, բարձրացնելու գիտության տեխնիկական զինվածությունը, ամրապնդելու նրա փորձառական բազան:

8. Անհրաժեշտ է, հաշվի առնելով ժամանակակից պահանջները, արագացնել պլանային, ֆինանսական և մյուս ընդհանուր տնտեսական մարմինների, բոլոր մինիստրությունների և գերատեսչությունների ստրուկտուրայի, նրանց աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների վերակառուցումը, ավելի հստակորեն սահմանել նրանց ֆունկցիաներն ու խնդիրները, օգնել ազատվելու մանրախնդիր խնամակալությունից, միավորումների և ձեռնարկությունների օպերատիվ գործունեությանը ցույց տրվող միջամտությունից, ուշադրությունը կենտրոնացնել ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման, կադրերի վերապատրաստման և նրանց որակավորման բարձրացման խոշոր, հեռանկարային հարցերի վրա:

9. Պլենումը սկզբունքորեն կարևոր է համարում ղեկավար կադրերի գործունեության մեջ սոցիալական ուղղվածության ուժեղացումը, նրանց մեջ սոցիալական պրոբլեմների՝ որպես կարևորագույն քաղաքական գործի նկատմամբ վերաբերմունքի դաստիարակումը: Սոցիալական հարցերը ճիշտ լուծելու, մարդկանց բարձրարտադրողական աշխատանքի, նրանց կյանքի ու կենցաղի համար բարենպաստ պայմաններ ստեղծելու, կոլեկտիվներում ստեղծագործական որոնման մթնոլորտ հաստատելու կարողությունը ամեն մի ղեկավարի քաղաքական և գործնական հասունության անհրաժեշտ չափանիշ է:

Սևեռուն ուշադրություն նվիրել մարդկանց ամենօրյա կարիքների բավարարման, քաղաքացիների կենսական շահերին վերաբերող հարցերի լուծման հետ անմիջականորեն կապված բոլոր ոլորտներում զբաղված կադրերի գործունեությանը: Այստեղ առանձնապես կարևոր է գործի լավ կազմակերպումը, անհանդուրժելի են կոպտության, կոշտության, մարդու նկատմամբ անուշադրության դրսևորումները:

10. Վերակառուցման աշխատանքում կուսակցությունը հենվում է սովետական, արհմիութենական, կոմերիտական կադրերի վրա: Հավանություն տալով սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու գործում ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման և նրանց պատասխանատվության ուժեղացման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած միջոցներին, պլենումը կարևոր նշանակություն է տալիս այն բանին, որ սովետների և նրանց գործադիր մարմինների գործունեության մեջ ուժեղացվեն դեմոկրատական հիմունքները, որ ավելի ու ավելի լրիվ ու արդյունավետ կերպով օգտագործվեն նրանց տրված լիազորությունները: Անհրաժեշտ է բարձրացնել սովետներում կուսակցական խմբերի աշխատանքի մակարդակը, ուժեղացնել նրանց ազդեցությունը սովետական մարմինների գործունեության վրա:

Արտադրական և սոցիալական կոնկրետ հարցերի լուծման, մրցության զարգացման, աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդման, մարդկանց դաստիարակության գործում արդի պայմաններում պետք է ավելի ակտիվ դիրք գրավեն արհմիութենական կադրերը: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ արհմիութենական աշխատանքում ընտրվեն հեղինակավոր, կյանքն իմացող մարդիկ, որոնք կարողանան կազմակերպել կոնկրետ գործը, պաշտպան կանգնել աշխատավոր մարդու, կոլեկտիվի շահերին:

Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են ամեն օր և կոնկրետ կերպով իրականացնել կոմերիտական կազմակերպությունների ղեկավարումը, թույլ չտալ խրատական տոն, վարչարարություն, ամեն կերպ զարգացնել կոմերիտմիության նախաձեռնությունը, օգնել բարձր մակարդակով կառուցելու դաստիարակչական աշխատանքը երիտասարդների հետ, արագորեն արձագանքել երիտասարդության պահանջմունքներին, օգնել նրանց լինելու օգտակար ձեռնարկումների նախաձեռնողներ աշխատանքում, ուսման, հանգստի մեջ:

11. Պլենումը պաշտպանում է դատարանի, դատախազության, արդարադատության և միլիցիայի, պետական արբիտրաժի, նոտարիատի աշխատողների, հասարա-

կական կարգի պահպանության հազարավոր կամավոր մասնակիցների հեղինակությունը բարձրացնելու, նրանց գործունեության արդյունավետությունն ուժեղացնելու ուղղությամբ Կենտկոմի քաղբյուրոյի կողմից ձեռնարկվող միջոցները: Դրա հետ մեկտեղ կուսակցության աջակցությունը իրավապահպան մարմինների կադրերին պարտավորեցնում է ավելի հաստատակամորեն պայքարել սոցիալիստական հասարակության և պետության շահերի, սովետական քաղաքացիների օրինական իրավունքների պաշտպանության հետ կապված իրենց գործունեության արմատական վերակառուցման համար: Անհրաժեշտ է լրջորեն բարելավել իրավապահպան մարմինների կադրերի հետ տարվող աշխատանքը, նրանց սովորեցնել դեմոկրատիայի և հրապարակայնության ընդլայնման պայմաններում գործելու կարողություն, հիշելով, որ նա, ով ծառայում է իրավակարգի գործին, ինքը պետք է լինի բյուրեղի պես մաքուր օրենքի հանդեպ, կուսակցության հանդեպ, ժողովրդի հանդեպ:

**12.** Պլենումը կարևոր նշանակություն է տալիս արտաքին քաղաքական գերատեսչությունների աշխատանքի վերակառուցմանը, դրանք այնպիսի աշխատողներով ամրապնդելուն, որոնք կարողանան ստեղծագործաբար, հետևողականորեն վարել կուսակցության գիծը միջազգային քաղաքականության բնագավառում:

**13.** Ժամանակակից բարդ միջազգային իրադրությունը, ռազմաստրատեգիական հավասարակշռությունը խախտելու, միջուկային գերազանցության հասնելու ԱՄՆ-ի ռազմատենչ իմպերիալիստական շրջանների ձգտումը պահանջում են մեր երկրի տնտեսական պոտենցիալի ավելի արագ մեծացում, նրա պաշտպանական հնարավորությունների ըստ ամենայնի ամրապնդում, պատշաճ մակարդակի վրա երկրի պաշտպանունակության պահպանում, զինված ուժերի բարձր մարտավիճակ և մարտական պատրաստություն, մշտական զգոնություն: **ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեն բարձր է գնահատում սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի զինվորական կադրերի, ռազմիկների գործունեությունը, որոնք հուսալիորեն պաշտպանում են ժողովրդի խաղաղ աշխատանքը, հայրենիքի անվտանգությունը, պատվով են կատարում ինտերնացիոնալ պարտքը: Անհրաժեշտ է այսուհետև էլ բարձրացնել բանակի ու նավատորմի հրամանատարների, քաղաշխատողների, ամբողջ սպայական կազմի, կուսակցական կազմակերպությունների պատասխանատվությունը զինվորական կարգապահությունը բարձր մակարդակում պահելու, ռազմիկների գաղափարական ու բարոյական դաստիարակության, նրանց մարտական ու քաղաքական պատրաստության համար, մշտապես հոգալ զինծառայողների, նրանց ընտանիքների կենցաղային պայմանների մասին:

**14.** Պատասխանատու խնդիրներ են դրվում գաղափարախոսական աշխատողների վրա, որոնք կոչված են կուսակցության գաղափարները, քաղաքականությունը հասցնել մասսաներին, նրանց զինել վերակառուցման պատմական անհրաժեշտության ըմբռնումով, յուրաքանչյուր մարդու օգնել գտնելու իր տեղը արագացման համաժողովրդական պայքարում: Ամենօրյա դաստիարակչական աշխատանքով պետք է զբաղվեն ղեկավար կադրերը, կուսակցության ակտիվը, բոլոր կոմունիստները: Գաղափարախոսական տեղամասերը պետք է հանձնարարել տեսական ու պրոֆեսիոնալ պատրաստություն ունեցող մարդկանց, որոնք լիովին զգում են ժամանակի երակազարկը, ընդունակ են գործելու ստեղծագործաբար, հասնելու գաղափարախոսական դաստիարակչական աշխատանքի ամուր շաղկապմանը վերակառուցման պրակտիկ իրագործման հետ:

Պլենումը նշում է, որ մեր հասարակության առջև կանգնած խնդիրների իրագործմանը, հրապարակայնության, առողջ քննադատական մթնոլորտի հաստատմանը ակտիվորեն նպաստում են մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն: Բացասական երևույթների նկատմամբ անհանդուրժողությունը և վերակառուցման շնորհիվ ծնվող փորձի բացահայտումը, բարեխիղճ, բարձրարտադրողական աշխատանքի վեհացումը մասսայական ինֆորմացիայի միջոցների առաջնահերթ և փոխկապակցված խնդիրներն են: Մամուլի, հեռուստատեսության, ռադիոհաղորդումների աշխատողներին լիովին վերաբերում են այն ընդհանուր պահանջները, որ կուսակցությունը ներկայացնում է կադրերին. գաղափարայնություն, պրոֆեսիոնալիզմ, պարտքի զգացում, սկզբունքայնություն և բարձր պատասխանատվություն հասարակական դատին



ներկայացվող փաստերի հավաստիության և ճշտության համար, քննադատության նկատմամբ կուսակցական վերաբերմունք:

**15.** Հասարակական վերափոխումների նոր փուլը պատասխանատու խնդիրներ է դնում արվեստագետ մտավորականության, մշակույթի ոլորտի բոլոր աշխատողների առջև: Նրանց պարտքն է հարստացնել հասարակության հոգևոր կյանքը, նպաստել աշխատավոր մարդու գաղափարական ու բարոյական աճին, կերտել մեր իրականությունը իր ողջ բազմազանությամբ ու վեհությամբ արտացոլող տաղանդավոր, ճշմարտացի ստեղծագործություններ, վճռականորեն դիմագրավել իմպերիալիզմի գաղափարամշակութային ագրեսիային, որը ձգտում է մեր ժողովրդին, նախ և առաջ երիտասարդությանը պարտադրել հումանիզմին խորթ կեղծ արժեքներ:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, համապատասխան պետական մարմինները, ստեղծագործական միությունների վարչություններն ու կուսակցական կազմակերպությունները, մշակույթի հիմնարկները կոչված են հմտորեն, տաղանդի նկատմամբ հարգանքով և միևնույն ժամանակ կուսակցական սկզբունքայնությամբ օգնել գեղարվեստական պրոցեսին, նպաստել դեմոկրատիզմի ու հասարակական ինքնագործունեության ձևերի կատարելագործմանը մշակութային շինարարության մեջ, զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը ստեղծագործական կոլեկտիվներում: Հատուկ ուշադրություն նվիրել գրաքննադատության դերի բարձրացմանը, ստեղծագործող երիտասարդների գաղափարական կոփմանն ու դաստիարակությանը, նրանց ընդունակությունների և տաղանդների բացահայտմանը: Գեղարվեստական ստեղծագործության ղեկավարման մեջ անթույլատրելի են ոչ բանիմաց միջամտությունը զուտ ստեղծագործական պրոցեսներին, ճաշակային համակրանքներն ու հակակրանքները, գաղափարական ազդեցության մեթոդների փոխարինումը վարչական որոշումներով:

**16.** Պլենումը Կենտկոմի քաղբյուրոյին հանձնարարում է. հաշվի առնելով Կենտրոնական կոմիտեի անդամների առաջարկությունները, կոնկրետ միջոցներ ձեռնարկել կատարելագործելու կադրային աշխատանքի կազմակերպումը **ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեի ապարատում և տեղական կուսակցական մարմիններում, խորացնելու ժամանակակից կադրային քաղաքականության պրոբլեմների տեսական ու մեթոդաբանական մշակումը:

Պետք է արմատապես բարելավվի կադրային ծառայությունների աշխատանքը մինիստրություններում, գերատեսչություններում, ձեռնարկություններում, հիմնարկներում ու կազմակերպություններում:

**ՍՄԿԿ** Կենտկոմը կուսակցական կոմիտեներին, սովետական մարմիններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, **ՀԱՄԿԽ**-ին, **ՀամԼԿԵՄ** Կենտկոմին, մյուս հասարակական կազմակերպությունների ղեկավար մարմիններին հանձնարարական է տալիս պրակտիկ միջոցներ ձեռնարկել կադրերի հետ տարվող աշխատանքը բարելավելու կուսակցության XXVII համագումարի հիմնադրույթների և սույն որոշման լույսի ներքո:

* * *

**ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ սովետական հասարակության տնտեսական, սոցիալական ու հոգևոր ոլորտներում կատարվող վերափոխումները կծավալվեն և կխորանան: Սրա գրավականն են կոմունիստների, ամբողջ սովետական ժողովրդի ջերմ պաշտպանությունը կուսակցության ներքին ու արտաքին լենինյան քաղաքականությանը, սկսված վերակառուցմանը, լայնորեն ծավալված հայրենասիրական շարժումը տասներկուերորդ հնգամյակի պլանները հաջողությամբ կատարելու, մեծ Հոկտեմբերի 70-ամյակը արժանավայել դիմավորելու համար:

Անհրաժեշտ է ոչ միայն ամրապնդել հնգամյակի առաջին տարում ձեռք բերվածը, այլև ընթանալ ավելի առաջ, աշխատանքի մեջ ավելի լայնորեն ընդգրկել էկոնոմիկայի աճի երկարաժամկետ գործոնները, բոլոր ուղղություններում հասնել շոշափելի դրական տեղաշարժերի: Ոտքի հանել աշխատավորության ամենալայն խավերին, նրանց նախաձեռնությունն ու եռանդը նպատակամղել սոցիալիզմի անսպառ հնարավորությունների օգտագործմանը, նորացման և արագացման կուրսի իրագործմանը. այսպիսին է այսօր Սովետական Միության կոմունիստական կուսակցության քաղաքական առաքելությունը:

---

5. «Լենինյան ուղիով», № 2

կան ընդունումը որքանով է նպաստում որակի բարձրացմանը, ռեզերվների լրիվ օգտագործմանը, աշխատանքային ու պայմանագրային կարգապահության ամրապնդմանը։

Արդյունաբերության բնագավառում մեր ամենանեղ տեղերից մեկը տակավին մնում է այն, որ մի շարք ձեռնարկություններ պետական պլանները սիստեմատիկաբար չեն կատարում, որի հետևանքով խախտվում է արտադրության համաչափ ռիթմը։ Շատ ձեռնարկությունների, տնտեսությունների ղեկավարներ տարեսկզբին տալիս են շռայլ խոստումներ, որոնք մամուլի միջոցով հասարակական հնչեղություն են ստանում։ Սակայն իրականանո՞ւմ են, արդյոք, այդ խոստումները։ Նման հարցերը, դժբախտաբար, մնում են մամուլի տեսադաշտից դուրս։ Մեր թերթերը լավագույն դեպքում միայն տարեվերջին են անդրադառնում պարտավորությունների կատարմանը, մինչդեռ անհրաժեշտ է, որպեսզի այդ հսկողությունը լինի ամենօրյա, մշտական։ Մեր մամուլը գրեթե չի անդրադառնում ձեռնարկությունների ֆինանսական գործունեության վերլուծությանը։ Դեռևս պահանջվող խորությամբ չեն լուսաբանվում գիտատեխնիկական առաջընթացի հարցերը։

Մամուլի մշտական ուշադրության կենտրոնում պետք է գտնվի հանրապետության պետագրոարդի գործունեությունը։ Ժուռնալիստների պարտքն է լավատեղյակ լինել այն բնագծերին, որոնց նվաճման համար պայքարում են հանրապետությունը, տվյալ շրջանը կամ տնտեսությունը։ Նրանք պետք է լայնորեն լուսաբանեն պարենային ծրագրի իրականացման նպատակով տնտեսություններում կատարվող աշխատանքը, դրա նոր, առաջադիմական եղանակները և հատկապես բրիգադային կապալը, որն աստիճանաբար ավելի ու ավելի է դառնում արտադրության կազմակերպման առավել հուսալի և արդյունավետ ձև։

Պակաս կարևոր չեն կապիտալ շինարարության հարցերը։ Կուսակցության XXVII համագումարը խնդիր է դրել երկու անգամ կրճատել շինարարության ժամկետները, էապես բարելավել որակը։ Շինարարության թեմաներով հանդես եկող մեր ժուռնալիստները պետք է խորամուխ լինեն այս ճյուղի զարգացումը խոչընդոտող այնպիսի պատճառների մեջ, ինչպիսիք են չհաշվեկշռված պլանավորումը, շինարարության նորմատիվային ժամկետների և կապիտալ ներդրումների անհամապատասխանությունը, շինարարության ինդուստրիալ թույլ բազան և այլն։ Իրենց հրապարակումներում նրանք պետք է ուժեղացնեն վերլուծականությունը։

Ներկա պայմաններում նոր իմաստ ու հատուկ հրատապություն է ստանում մեր մամուլի գլխավոր սկզբունքներից մեկը՝ կուսակցականությունը։ Ժուռնալիստի կուսակցական դիրքորոշումը մեր օրերում չափազանց կարևոր է, որովհետև նա գտնվում է գաղափարախոսական պայքարի առաջավոր գծում։ Նրան վստահված է կուսակցության խոսքը ժողովրդին հասցնելու պատիվն ու պատասխանատվությունը, այնպիսի հարցերի մասին ողջ ճշմարտությունը ասելու իրավունքը, որոնց դեռ երեկ խուսափում էինք անդրադառնալ։ Ընթերցողների, հեռուստադիտողների, ռադիոունկնդիրների հետ պետք է շիտակ ու անկեղծ խոսակցություն վարել, լուսավորչականությունից, մակերեսայնությունից անցնել կյանքի խորքային պրոցեսների, հրատապ պրոբլեմների բազմակողմանի բացահայտմանը։

Հարկավոր է էապես բարելավել խմբագրությունների կազմակերպչական գործունեությունը։ Խմբագրական շատ կոլեկտիվներ հնգամյակի խոշոր կառույցների շինարարության նկատմամբ շեֆական աշխատանքի ավանդական փորձ ունեն։ Այժմ անհրաժեշտ է զարգացնել այդ փորձը, որոնել ու գտնել շեֆությունն իրականացնելու նոր ձևեր՝ շեֆական օգնություն ցույց տալ այս կամ այն ձեռնարկության վերակառուցմանը, կոնկրետ ճյուղի կամ միավորման արտադրանքի որակի բարելավմանը։ Օրինակ, մինչև ե՞րբ կարելի է բավարարվել կոշկագործների փորձը մատնացույց անելով։ Մի՞թե մամուլը չի կարող գործարար օգնություն ցույց տալ, որպեսզի այլ արտադրատեսակներ ևս, օրինակ, տրիկոտաժեղենը, նույնպիսի լավ համբավ ձեռք բերեն Միությունում և նրա սահմաններից դուրս։ Իսկ հայկական հյութե՞րը, օշարակնե՞րը,



որոնց պահանջարկը օրըստօրե մեծանում է և որոնց արտադրության համար մեզանում կան լավ պայմաններ։ Նպատակահարմար է համագործակցել պետագրոարդի սննդի արդյունաբերության ճյուղի հետ և համամիութենական ճանաչում ապահովել այդ արտադրատեսակների համար։

ՍՄԿԿ XXVII համագումարը մշակեց երկրի սոցիալական զարգացման լայն ծրագիր։ Մինչդեռ այդ կարևոր ոլորտը աններելիորեն մեր մամուլի հետհամագումարյան խորագրերի ներքո դեռևս իր արժանի տեղը չի գտել։ Սոցիալական ծրագրերի իրականացման հարցը չափազանց կարևոր է, որովհետև անմիջականորեն վերաբերում է մարդուն, աշխատավորին։ Այս բնագավառում մեր հանրապետությունում ևս մշակվել են մեծ ու լարված պլաններ, կատարվել է նաև որոշակի աշխատանք։ Սակայն տարօրինակ կերպով այդ բնագավառը պատշաճ ուշադրության չի արժանանում։ Չի կարելի, օրինակ, նորմալ համարել, որ Կենտկոմի հանձնարարությունից հետո միայն մեր մամուլը և հեռուստատեսությունը ակտիվորեն անդրադարձան արտադրական և սոցիալական հարցերի լուծման ասպարեզում Սպիտակի կարի արտադրական միավորման փորձին։ Ընդ որում, անդրադարձան և լռեցին։ Մինչդեռ խոսքն այսօր ոչ միայն և ոչ այնքան անընդհատ մեկի փորձին անդրադառնալու մասին է, որքան այն մասին, որ այն տարածվի և ներդրվի նաև մյուս ձեռնարկություններում ու ճյուղերում։

Հաշվի առնելով սովետական մարդկանց կրթվածության ու պահանջմունքների աճած մակարդակը՝ անհրաժեշտ է ավելի արդյունավետ օգտագործել և ստեղծագործաբար կիրառել գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական աշխատանքի զինանոցի բոլոր հնարավորությունները, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր հրապարակում աչքի ընկնի ասելիքի թարմությամբ ու խորությամբ, ինչպես հարկն է ներազդի ընթերցողի մտքի ու զգացմունքների վրա, նրան մղի ակտիվ գործունեության, ձևավորի նրա վարքագծի նորմերը։

Կարևոր է բարձրացնել մեր մամուլի պրոֆեսիոնալ մակարդակը, հրապարակումների որակը, յուրաքանչյուր նյութում հասնել թեմայի խոր քննության, նրա տպավորիչ պատկերման։ Դժբախտաբար, մեզանում դեռևս քիչ չեն մակերեսային, դեկլարատիվ առաջնորդողները, դժգույն, անհետաքրքիր հոդվածներն ու ակնարկները, որոնք մեծապես գցում են մամուլի հրապարակումների ներգործության ուժը։

Այսօր առավել մեծանում են հեռուստատեսությանը ներկայացվող պահանջները։ Հեռուստատեսությունն ավելի, քան մասսայական ինֆորմացիայի որևէ այլ միջոց, չի հանդուրժում արհեստականություն, շինծու եղանակների ու ձևերի կիրառում։ Մինչդեռ մեր հեռուստատեսությամբ տրվող ելույթների ոչ քիչ մասը բռնազբոսիկ է, շինծու։

Լուրջ բարելավման կարիք է զգում հեռուստատեսային հրապարակախոսությունը, այդ ժանրը ընդհանրապես՝ նաև մամուլում։ Հեռուստաժուռնալիստներից շատերը չեն կարողանում թափանցել երևույթների խորքը, լուրջ ընդհանրացումներ անել, հաճախ նաև՝ առաջնայինը երկրորդականից տարբերել, չունեն խոսքի անհրաժեշտ կուլտուրա։ Տեղին է հարցնել, թե վերջին շրջանում մեր հանրապետության հեռուստատեսությամբ ի՞նչ նշանակալից, վառ ու տպավորիչ հաղորդումներ են տրվել, որոնց ներհատուկ լինեին նոր մտածողությունը, արտահայտչամիջոցների թարմությունը և որոնք հասարակական մեծ արձագանք առաջացնեին։ Իսկ թե ինչպիսին պետք է լինի հեռուստահաղորդումը, ինչպես պետք է հեռուստատեսությունը օգտագործի իր անսպառ հնարավորությունները՝ կարելի է տեսնել կենտրոնական հեռուստատեսության օրինակով։ Որ հայկական հեռուստատեսությունը նույնպես ունակ է լավ գործերի, ակնբախ կերպով երևաց կենտրոնական հեռուստատեսության համագործակցությամբ նրա պատրաստած հետաքրքիր հաղորդումից, որը նվիրված էր արտադրանքի պետական ընդունման հույժ կարևոր հարցին։

Քիչ չեն թերությունները հրատարակչությունների աշխատանքում։ Դանդաղ են կատարելագործվում նրանց աշխատանքի ոճն ու մեթոդները։ Անբավարար հետևողականության պատճառով կտրուկ շրջադարձ չի կատարվում

դեպի ժամանակակից թեմատիկան, առանձին գործեր չեն արտացոլում գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները։ Պատշաճ կերպով չեն մշակվում ժամանակակից այնպիսի հույժ կարևոր թեմաներ, ինչպիսիք են արագացումն ու վերակառուցումը։ Քիչ են ագրոարդի հրատապ պրոբլեմներին՝ ինտենսիվ այգեգործությանը, ինտենսիվ անասնապահությանը, գյուղատնտեսության նորագույն տեխնոլոգիային և առաջավոր փորձին, նվիրված գրքերն ու բրոշյուրները։ Անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ռազմահայրենասիրական գրականությունն առավել արդիական դարձնելու հարցին։ Խիստ խմբագրման ու ճշգրտման կարիք են զգում հայ ժողովրդի պատմության ու հայ գրականության դասագրքերը։ Գեղարվեստական գրականության հրատարակչությունները դեռևս ընթերցողին են ներկայացնում սոցիալական տեսակետից պասիվ, նվազ արտահայտիչ, երբեմն էլ ժամանակակից կյանքը սխեմատիկ, անհրապույր պատկերող առանձին գործեր։ Մի շարք գրքեր լույս են տեսել լեզվաոճական մեղանչումներով, տպագրական սխալներով։

Ամենևին գոհացուցիչ չէ քաղաքային և շրջանային թերթերի ու ռադիոխմբագրությունների աշխատանքը։ Նրանցից շատերը հեռու են հրապարակայնության, տեղական կյանքի ամբիոն լինելուց։ «Շրջանային և քաղաքային թերթերի գործունեության հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո, ճիշտ է, որոշ առաջընթաց նկատվում է, բայց և այնպես մամուլի այդ կարևոր ու մասսայական միջոցները՝ շրջանային և քաղաքային թերթերը, դեռևս անբավարար են լուսաբանում քաղաքների ու շրջանների կյանքը, կուսակցական կազմակերպությունների գործունեությունը։ Հրապարակումների մի ստվար մասը զուրկ է փաստարկվածությունից, զգացնել է տալիս սուր, պրոբլեմային հարցերը շրջանցելու միտումը։ Վերակառուցման, նորովի աշխատելու և մտածելու ոգին դանդաղ է մուտք գործում խմբագրությունների աշխատանքի մեջ։ Հատկապես ցածր է շրջանային մամուլի հրապարակումների ներգործունությունը։ Եվ պատահական չէ, որ նրանց ելույթները դեպքից դեպք են դառնում կուսակցության քաղկոմ-շրջկոմների քննարկման առարկա։

Շրջանային մամուլի հաջողությունը պայմանավորված է կուսակցական ղեկավարմամբ։ Մինչդեռ որոշ քաղկոմներ ու շրջկոմներ իրենց մի տեսակ մեկուսացրել են շրջանային թերթերի աշխատանքից, իսկ նրանց մի մասն էլ գործնական օգնության ու ղեկավարության փոխարեն ցուցաբերում է մանր խնամակալություն։ Նրանք կարծես գործում են «շրջկոմն իր համար, թերթը՝ իր» մերժելի սկզբունքով, մոռանալով այն հանրահայտ ճշմարտությունը, ըստ որի՝ ինչպիսին շրջանային թերթի աշխատանքի ոճն է, այնպիսին է և համապատասխան կուսակցական կոմիտեի ոճը։ Վերակառուցման ոգին դեռևս չի զգացվում մասնավորապես Եղեգնաձորի «Վերելք», Գորիսի «Զանգեզուր», Կալինինոյի «Արևածագ», Ամասիայի «Աշխատանք» և մի շարք այլ թերթերի էջերում։ Դանդաղ են վերակառուցվում Լենինականի «Բանվորը», Շամշադինի «Այգաբացը», Կրասնոսելսկի «Բարեկամությունը», «Անին»։

Այս տարվա հունիս—օգոստոս ամիսներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնարարությամբ հանրապետական թերթերի ու հանդեսների մի խումբ փորձված ժուռնալիստներ գործուղվեցին շրջանային թերթերի խմբագրություններ։ Փորձը ցույց է տալիս, որ հմուտ ղեկավարության դեպքում տեղի ժուռնալիստները ևս ի վիճակի են վճռականորեն բարելավելու թերթի աշխատանքը, հաջողությամբ լուծելու առաջադրված խնդիրները։

Կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է լուրջ ուշադրություն նվիրեն շրջանային և քաղաքային մամուլի կադրերի, հատկապես ղեկավար կադրերի ընտրությանը։ Վերակառուցումը վերաբերում է բոլորին և յուրաքանչյուրին։ Այն պետք է կրի համապարփակ բնույթ և անպայմանորեն ներառնի նաև մամուլի այդ կարևոր օղակը։

Մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքում առկա է նաև մեկ ուրիշ թերություն։ Բանն այն է, որ թեև վերջին ժամանակներս աճել են մամուլի քննադատության հեղինակությունն ու ներգործունությունը, որ պետք է դիտել որպես կուսակցության կողմից իրականացվող վերակառուցման կուր-



սի արգասիք, բայց և այնպես նրան դեռևս չի հաջողվում առավել արդյունավետ ու հետևողականորեն կիրառել այդ փորձված զենքը։ Առանձնապես մտահոգում է այն հանգամանքը, որ խմբագրությունները սկսած գործը միշտ չէ, որ հասցնում են մինչև վերջ։ Արծարծված պրոբլեմները հաճախ չեն լուծվում այն պատճառով, որ ժուռնալիստները հանդես չեն բերում անհրաժեշտ հետևողականություն ու սկզբունքայնություն։ Քննադատական շատ հրապարակումներ մակերեսային են, երկչոտ, անհասցե։ Նրանցում բացակայում են կոնստրուկտիվ տարրը, փաստերի խոր և գիտակ վերլուծությունը, հանձնարարականներն ավանդական են, բազմիցս կրկնված ու անորոշ։ Այս իմաստով գործը դանդաղ է բարելավվում հատկապես շրջանային մամուլում, որտեղ քննադատության մակարդակը չի բարձրանում ղեկավարների միջին օղակից։

Պակաս վտանգավոր ու վնասակար չեն քննադատամոլությունը, քննադատության միակողմանի, ծայրահեղ ու ինքնանպատակ ծավալումը։ Քննադատամոլության և սենսացիաների մեջ չընկնելու համար պետք է մշտապես հիշել, որ կուսակցությունը մամուլից, հեռուստատեսությունից ու ռադիոյից առաջին հերթին պահանջում է ավելի խորությամբ, մասնագիտական հմտությամբ թափանցել կյանքի բոլոր բնագավառները, հասնել իրենց ելույթների արդյունավետության բարձրացման։ Քննադատությունը պետք է ուղղել այնպիսի արատավոր երևույթների դեմ, ինչպիսիք են բյուրոկրատիզմը, մեր բարոյականությանը և գաղափարախոսությանը խորթ բացասական երևույթները։

Փաստերի հավաստիություն և քննադատության կոնստրուկտիվություն, նպատակաուղղվածություն և ճիշտ տոնայնություն՝ ահա մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի հրապարակումներին ներկայացվող սովորական, բայց և խիստ էական պահանջները։

Մատնանշված, ինչպես նաև մի շարք ուրիշ հրատապ խնդիրների մասին սկզբունքային և խստապահանջ խոսակցություն տեղի ունեցավ վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմում մամուլի աշխատողների մի մեծ խմբի հետ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի հանդիպման ժամանակ, որտեղ մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների առջև դրվեցին մի շարք նոր խնդիրներ։ Ընթացիկ ու հեռանկարային այդ խնդիրների իրականացումը պետք է գտնվի մամուլի աշխատողների ուշադրության կենտրոնում։

Հայտնի է, որ մեր մամուլում հրապարակվող նյութերի ընտրության և և դրանց գաղափարաքաղաքական բովանդակության համար պատասխանատվությունը առաջին հերթին դրված է մասսայական ինֆորմացիայի միջոցների ղեկավարների վրա։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը անդրադարձել է հրապարակվող նյութերի գաղափարաքաղաքական բովանդակության համար գաղափարախոսական հիմնարկների ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու հարցին և խնդիր դրել նրանց առջև՝ բացառելու գաղափարաքաղաքական սայթաքումներ պարունակող հրապարակումների երևան գալը։ Սակայն, ինչպես ցույց են տալիս փաստերը, դրանից հետո էլ մասսայական ինֆորմացիայի միջոցների և հրատարակչությունների որոշ ղեկավարներ, և ոչ միայն ղեկավարներ, լուրջ հետևություններ չեն արել այդ քննադատությունից, սկզբունքայնություն հանդես չեն բերում գեղարվեստական տեսակետից թույլ, գաղափարական բնույթի մեղանչումներ պարունակող հրապարակումների լույսընծայումը կանխելու գործում։

Արմենպրես ինֆորմացիոն գործակալության և մեր թերթերի ու ամսագրերի, հեռուստառադիոպետկոմի խմբագրությունների մեղքով տեղ են գտնում սխալներ ու վրիպումներ, որոնք առաջին հերթին անփութության, խստապահանջության բացակայության հետևանք են։ Հանրապետության թերթերի, ամսագրերի, հրատարակչությունների, հեռուստառադիոպետկոմի խմբագրություններում աշխատում է ժուռնալիստական կադրերի մի ստվար բանակ, որի մեծ մասը աշխատանքի հարուստ փորձ ունի։ Մեծ վստահությամբ վերաբերվելով մամուլի, մասսայական ինֆորմացիայի բոլոր միջոցների աշխատողներին, գնահատելով նրանց ոչ դյուրին աշխատանքը՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը միաժամանակ գտնում է, որ խմբագրական կոլեկտիվների

# ԱՊԱՀՈՎԵԼ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐՁՐ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Լ. ՍԱՀԱԿՅԱՆ**
ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ ամենուրեք անցկացվող վերակառուցումը դարձել է հիրավի համաժողովրդական գործ և ընդգրկել մեր հասարակական կյանքի բոլոր կողմերը, այդ թվում՝ հոգևոր, գաղափարախոսական ոլորտը։ ՍՄԿԿ XXVII համագումարից հետո բարեփոխվում է ամբողջ հասարակական մթնոլորտը, ավելի մեծ ասպարեզ է բացվում աշխատավորների նախաձեռնության, ստեղծագործական եռանդի ներդրման, մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացման համար։ Եվ, բնականաբար, համագումարից հետո գաղափարախոսական, քաղաքական-մասսայական աշխատանքն ստացել է նոր իմաստ ու բովանդակություն, դարձել մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու վերաբերյալ կուսակցության առաջադրած ստրատեգիական կուրսի իրականացման վճռական գործոններից մեկը։

ՀԿԿ Երևանի քաղկոմը, շրջանային կոմիտեները ու սկզբնական կուսկազմակերպությունները անհրաժեշտ միջոցներ են ձեռնարկում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի գիտական մակարդակն ու արդյունավետությունը բարձրացնելու, կյանքի, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների հետ նրա կապն ամրապնդելու համար։ Այդ ամենը դրական ներգործություն է ունենում քաղաքի առջև ծառացած սոցիալ-տնտեսական զարգացման առաջադրանքների կատարման վրա։

Մայրաքաղաքի կուսկազմակերպություններին հաճախ պակասում են գործերի վիճակի ինքնաքննադատական խոր վերլուծությունը, որոշ բացասական երևույթների գնահատման քաղաքական սրությունը, հետևողականությունն ու նպատակասլացությունը նախատեսված միջոցառումների իրականացման, գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման ասպարեզում։ Վերակառուցման, այդ թվում և գաղափարախոսական աշխատանքի վերակառուցման տեմպերը, ծավալներն ու խորությունը, ինչպես Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, դեռևս չեն համապատասխանում ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, կուսակցության XXVII համագումարի որոշումների ոգուն, հասարակության զարգացման ներկայիս բեկումնային փուլի պահանջներին։

Կուսակցական կոմիտեները ու սկզբնական կազմակերպությունները քաղաքական-դաստիարակչական աշխատանքում դեռևս դանդաղ են ձերբազատվում շաբլոնից, առաջվա նման դրանում անբավարար է կոնկրետությունը, նկատվում են ձևականության տարրեր, կտրվածություն կյանքից, սոցիալ-տնտեսական զարգացման գործնական խնդիրներից։ Միշտ չէ, որ, ինչպես հարկն է, հոգ է տարվում մարդկանց նկատմամբ տարբերակված, անհատական մոտեցում ցուցաբերելու մասին։ Ոչ բոլոր կազմակերպություններում են հասկացել տեղի ունեցող փոփոխությունների էությունը, շատ տեղերում շարունակում են իրենց զգացնել տալ իներցիայի ուժը, հին մոտե-



ցումները, մարդկանց հետ տարվող կենդանի աշխատանքը թղթաբանությամբ փոխարինելը։

Ասածը հիմնավորելու համար հեռու չգնանք։ Վերջերս քաղկոմի բյուրոյում քննարկեցինք ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների լույսի ներքո գաղափարախոսական, քաղաքական-մասսայական աշխատանքի վերակառուցման նպատակով Երևանի ավտոմոբիլային գործարանի կուսկոմիտեի ծավալած գործունեության հարցը։ Բյուրոն բացահայտեց լուրջ թերություններ։ Ուսումնասիրությունից և քննարկումից պարզվեց, որ այստեղ չեն ցուցաբերում անհրաժեշտ հետևողականություն նախատեսված միջոցառումների իրականացման, գաղափարադաստիարակչական աշխատանքի վերակառուցման, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործման ասպարեզում։ Դեռևս չեն հաղթահարվել ձևական, մակերեսային մոտեցման դրսևորումները։ Կուսկոմիտեն խորությամբ ու քննադատաբար չի վերլուծում գործերի վիճակը, դրսևորում է բարեհոգություն և ինքնահանգստացում, հանդես չի բերում սկզբունքայնություն մարդկանց դաստիարակության աշխատանքում նկատվող վրիպումների հանդեպ։ Սկզբնական կուսկազմակերպությունները, օգտվելով կուսկոմիտեի թույլ հսկողությունից ու պահանջկոտությունից, գաղափարադաստիարակչական աշխատանքը չեն նպատակամղում պետական, պլանային ու աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, կոլեկտիվում առողջ բարոյահոգեբանական մթնոլորտի ստեղծմանը։ Եվ պատահական չէ, որ այստեղ գրեթե չեն նվազում աշխատաժամանակի կորուստները, ցածր է թողարկվող արտադրանքի որակը, ուշադրությունից դուրս են մնացել աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, հանգստի և ժամանցի կազմակերպման հարցերը։

Քաղկոմի բյուրոն նպատակահարմար գտավ ուժեղացնել ավտոմոբիլային գործարանի կուսկոմիտեի ղեկավարությունը։

Ցավոք, մեզանում քիչ չեն փաստերը, երբ վերակառուցման ձգտումը չի ուղեկցվում իրավիճակը բարելավելու գործուն աշխատանքով, երբ թերությունների վերաբերյալ ընդհանուր դատողություններից չեն անցնում դրանք վերացնելու, մեր պրակտիկայից վճռականորեն արմատախիլ անելու կոնկրետ գործողությունների։

Քիչ չեն այն ձեռնարկությունները ու կազմակերպությունները, որտեղ թերագնահատում են մարդկային գործոնի դերը, չեն ապահովում գաղափարադաստիարակչական աշխատանքի կապը կոլեկտիվների առջև ծառացած տնտեսական ու սոցիալական, արտադրության վերակառուցման ու ինտենսիվացման խնդիրների հետ։ Այսպես, օրինակ, հիդրոապարատների գործարանն աշխատում է անկայուն, չի ապահովում պլանային առաջադրանքների ու ստանձնած պարտավորությունների կատարումը։ Այստեղ թույլ է աշխատանքային կարգապահությունը, լրիվ չեն օգտագործվում արտադրության արդյունավետության, աշխատանքի որակի բարձրացման առկա հնարավորությունները, 1984—1985 թթ. ընթացքում շահագործման հանձնված 7,5 միլիոն ռուբլու արտադրական նշանակության հիմնական ֆոնդերը դեռևս օգտագործվում են ոչ լրիվ ծավալով, աշխատանքի արտադրողականության բարձրացման անցած տարվա առաջադրանքը կատարվել է ընդամենը 66,7 տոկոսով, որի պատճառով չի թողարկվել 2,8 միլիոն ռուբլու արտադրանք։ Ձեռնարկությունում մեծ չափերի են հասնում աշխատաժամանակի կորուստներն ու գործալքումները։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ ամենի հիմնական պատճառը մարդկանց հետ տարվող հետևողական, նպատակասլաց դաստիարակչական աշխատանքի բացակայությունն է։

Դաստիարակչական աշխատանքում եղած թերությունների, մարդկային գործոնի անբավարար ակտիվացման հետևանք են նաև շատ կոլեկտիվներում պետական ու աշխատանքային կարգապահության խախտումների, ցածրորակ արտադրանքի թողարկման, նյութական ու էներգետիկ ռեսուրսների վատնում-շռայլումների բազմաթիվ փաստերը։ Պետական որականիշից զրկվել են էլեկտրամեքենաշինական, Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանների և մի շարք այլ ձեռնարկությունների ժողովրդական տնտեսության համար հույժ կարևոր որոշ արտադրատեսակներ։ Իսկ չէ՞ որ էկոնոմիկայի զարգացման արագացումն անկարելի է պատկերացնել առանց արտադրանքի որակական ցուցանիշների բարելավման։ Որակ հասկացության մեջ ընդհանրանում է էկոնոմիկայի բոլոր ճյուղերի աշխատանքի արդյունքը։ Այժմ՝ պետըն-

դունման պայմաններում, ինչպես երբեք, արտադրանքի որակի բարձրացման հարցերը պետք է մշտապես գտնվեն քաղաքի կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքի կենտրոնում:

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և վերակառուցման ներկա փուլում անչափ կարևորվում է գիտատեխնիկական առաջընթացի գաղափարախոսական ապահովման խնդիրը: Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները, առաջին հերթին, պետք է եռանդագին ձեռնամուխ լինեն մարդկանց գիտակցության վերակառուցմանը, գիտական պոտենցիալը վերակողմնորոշեն դեպի արտադրության կարիքները, էլ ավելի ուժեղացնեն գործնական ուղղվածությունը ակադեմիական և բուհական հիմնարկների աշխատանքում: Նույնքան կարևոր է արտադրության աշխատողների շրջադարձը դեպի գիտություն: Գիտատեխնիկական նվաճումների նկատմամբ արտադրության դեռևս անբավարար ընկալունակության վկայությունն է այն, որ քաղաքի արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրման առաջադրանքները կատարվել են միայն 95 տոկոսով: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում այդ առթիվ միանգամայն իրավացիորեն քննադատության ենթարկվեցին Լենինյան և 26 կոմիսարների շրջկոմները: Սակայն ճշմարտությունը պահանջում է ասել, որ այդ քննադատությունը ամբողջովին վերաբերում է նաև քաղաքի մյուս շրջկոմներին:

Որքան զարմանալի, բայց փաստ է, որ գիտական շատ մշակումներ տարիներով չեն ներդրվում արտադրության մեջ՝ անտնտեսվար, անտարբեր վերաբերմունքի, բյուրոկրատիզմի և քարացածության պատճառով: Վերջերս քաղկոմն ուսումնասիրեց գիտությունների ակադեմիայի քիմիական գիտությունների բաժանմունքի ինստիտուտների ու մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների գործունեությունը և արձանագրեց լուրջ թերություններ: Մի կողմից, ինստիտուտների կուսկազմակերպություններն ու ղեկավարությունը բավարար ուշադրություն չեն նվիրում կիրառական նշանակության թեմաների մշակմանը, տնտպայմանագրային աշխատանքների պլանավորմանը, մյուս կողմից, պատվիրատու ձեռնարկությունների՝ «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորման, ավտոդողերի գործարանի և մետաքսի կոմբինատի, ղեկավարության անպատասխանատու վերաբերմունքի պատճառով իրենց իսկ պատվերների համաձայն կատարված գիտական մշակումները տարիներ շարունակ չեն ներդրվում արտադրության մեջ: Նման վերաբերմունքն անհանդուրժելի է, և կուսակցության շրջկոմները պետք է համապատասխան միջոցներ ձեռնարկեն գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում ձեռնարկությունների կուսկազմակերպությունների և տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը բարձրացնելու համար: Նշված թերություններն ու բացթողումները վկայում են, որ կուսակցության շրջկոմներն ու սկզբնական կազմակերպությունները դեռևս հետևողականորեն չեն զբաղվում գաղափարադաստիարակչական աշխատանքը վերակառուցելու, նրա ներգործունության արդյունավետությունը բարձրացնելու հարցերով: Մինչդեռ այժմ սոցիալ-տնտեսական և հոգևոր ոլորտներում առաջադրվող խնդիրների բարդությանը զուգընթաց մեծանում են նաև գաղափարախոսական աշխատանքին ներկայացվող պահանջները: Կենսական անհրաժեշտություն է՝ խորքային վերակառուցման ենթարկել գաղափարախոսական աշխատանքը, այն ավելի ու ավելի մոտեցնել կյանքին, մարդուն, հիմնավորապես ծառայեցնել սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պրոբլեմների լուծման նպատակով աշխատավորների համախմբման ու մոբիլիզացման խնդրին: Կուսակցության շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները պետք է հասնեն տնտեսական շինարարության գաղափարախոսական ապահովմանը, դաստիարակչական աշխատանքը նպատակամղեն աշխատավորների մոբիլիզացմանը, հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր մարդ ճիշտ որոշի իր կոնկրետ տեղը կուսակցության կանխագծումների իրականացման համար մղվող պայքարում:

Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական ողջ աշխատանքի առաջնահերթ նպատակը աշխատավորների կողմից մարքս-լենինյան հեղափոխական տեսության, կուսակցության տնտեսական քաղաքականության խոր, ստեղծագործական յուրացումն է: Իսկ այդ խնդիրների լուծման, մարդկանց աշխարհայացքի, քաղաքական կուլտուրայի, տնտեսական մտածողության ձևավորման, նրանց հոգեբանության վերակառուցման գործում առանձնահատուկ տեղ է պատկանում քաղաքական ու տնտեսագիտական կրթության համակարգին: Դրա կազմակերպման գործում մեզ համար ուղեցույց է ՍՄԿԿ Կենտկոմի՝ «1986—1987 ուսումնական տարում աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական կրթության կազմակերպման մասին» որոշումը: Ելակետ ունենալով այն՝ քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները որոշ աշխատանք են կատարել քաղաքական ուսուցումն ու տնտեսագիտական կրթությունը վերակառուցելու և կատարելագործելու համար: Սակայն ամենուրեք չէ, որ քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության վերակառուցումն իրականացվում է պատշաճ խորությամբ ու նպատակասլացությամբ: Այստեղ դանդաղ են արմատախիլ արվում ձևականությունը, վերացական-լուսավորչական մոտեցման դրսևորումները: «Երքիմշին» տրեստի, կենտրոնական հեռախոսային հանգույցի, «Գարուն», «Շուշան» արտադրամիավորումների, գլխարկների ֆաբրիկայի, հացի № 4 գործարանի և մի շարք այլ կուսկազմակերպություններում, օրինակ, պարապմունքները չեն ծառայում իրենց բուն նպատակին, ուսումնասիրվող թեմաները չեն շաղկապվում կոլեկտիվների առջև ծառացած տնտեսական ու սոցիալական կոնկրետ խնդիրների հետ, դրանք չեն նպաստում ունկնդիրների հասարակական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը, գործերի վիճակի բարելավմանը:

Մեր հասարակության զարգացման արդի բեկումնային ժամանակաշրջանում, ինչպես նշվեց կուսակցության XXVII համագումարում, ուսուցման նպատակն է կոմունիստներին, աշխատավորներին զինել քաղաքականապես հմտուն դատելու և գործելու ունակությամբ, նպաստել աշխատանքի և արտադրության կազմակերպման առաջավոր ձևերի տարածմանն ու արմատավորմանը: Հետևաբար, քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, կուսշրջկոմները, կազմակերպությունները պետք է փոխեն իրենց վերաբերմունքը և կտրուկ միջոցներ ձեռնարկեն քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության բովանդակությունը, ձևերն ու մեթոդները կուսակցության առաջադրած պահանջների մակարդակին բարձրացնելու համար:

Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեության կարևոր բնագավառ են դասախոսական պրոպագանդան, ագիտացիոն-մասսայական աշխատանքը, բանավոր և դիտողական ագիտացիան: Այսօր մենք ունենք դասախոսների, ագիտատորների, քաղինֆորմատորների, զեկուցողների մի ստվար ջոկատ: Նրանց թիվը հասնում է շուրջ 12 հազարի: Դա մեծ ուժ է: Հենց նրանք են, որ, լավ իմանալով տեղերում տիրող դրությունը, կարող են և պետք է աշխատավորներին ավելի խորությամբ ու համակողմանիորեն պարզաբանեն, որ վերակառուցումը, աշխատանքի ոճի ու մեթոդների փոփոխությունը վերաբերում են ոչ միայն կուսակցական, սովետական մարմիններին, տնտեսական ղեկավարներին, այլև յուրաքանչյուր բանվորի, մասնագետի, սովետական ամեն մի քաղաքացու: Մենք ձգտում ենք յուրաքանչյուրին հասցնել այն անվիճելի ճշմարտությունը, որ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրը, կուսակցության սկսած մեծ գործի բախտը վճռվում են իր արտադրամասում, բրիգադում, շինհրապարակում, գիտական լաբորատորիայում:

ՀԿԿ քաղկոմն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները ջանում են կուսակցության XXVII համագումարի որոշումների լույսի ներքո գտնել աշխատավորների հետ երկխոսության, կապի ամրապնդման նոր ձևեր ու եղանակներ, կարողանալ դրանք հագեցնել բուն կյանքի շնչով: Երկխոսության ճանաչված ձև են դարձել միասնական քաղօրերը, որոնց ակտիվորեն մասնակցում են ղեկավար կադրերը: Բայց դեռևս կան ղեկավար աշխատողներ, որոնք, ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում, «ինքնամեկուսացել» են աշխատավորական կոլեկտիվների հետ հանդիպելուց:

Կուսակցության քաղկոմը, շրջկոմները, կազմակերպություններն իրենց առաջնահերթ խնդիրն են համարում ղեկավար բոլոր կադրերի ուշադրությունը բևեռել այն տեղամասերի վրա, ուր ծագում են լուրջ դժվարություններ, ստեղծվում լարված իրավիճակ: Հատկապես պետք է աշխատանք տանել այնպիսի կոլեկտիվներում, գնալ այնտեղ, որտեղ առավել անհրաժեշտ են գործնական միջամտությունն ու օգնությու-

նը, որտեղ շինկացած մթնոլորտում կասվեն գույնեն դառը, բայց ճշմարիտ ու օգտակար խոսքեր:

Դաստիարակչական աշխատանքի կենտրոնի փոխադրումը աշխատավորական կոլեկտիվ, նրա առողջ օղակներ՝ արագացման ստրատեգիայի գլխավոր գործոններից է: Կոլեկտիվում, հատկապես նրա ներքին օղակներում, ավելի հեշտ է նկատել մարդու պոտենցիալ հնարավորությունը, հաշվի առնել նրա անհատական հատկանիշները: Եվ հենց այստեղ էլ կարելի է հասնել դաստիարակչական աշխատանքի այնպիսի բացառիկ կարևոր ձևի հաստատման, ինչպիսին է անհատական աշխատանքը, որին այնքա՜ն կարևոր տեղ հատկացրեց կուսակցության XXVII համագումարը: Ուստի մենք ջանում ենք հասնել այն բանին, որպեսզի մարդու, անհատի նկատմամբ մշտական ուշադրությունը դառնա մեր կուսկազմակերպությունների ամենօրյա գաղափարադաստիարակչական գործունեության կենտրոնական հարցը: Իսկ դա նշանակում է, որ, իրոք, է՛լ ավելի համարձակորեն պետք է դաստիարակչական աշխատանքի կենտրոնը տեղափոխել անմիջական արտադրական կոլեկտիվ, նրա առողջ օղակներ:

Կուսակցությունը բազմիցս շեշտել է, որ դաստիարակչական աշխատանքի կայուն արդյունքներ են ձեռք բերվում այնտեղ, որտեղ այն ընդգրկում է մարդկանց կենսագործունեության բոլոր կողմերը, ներառյալ նրանց կենցաղը, ազատ ժամանակը: Աշխատավորության ազատ ժամանակի խելացի և նպատակասլաց կազմակերպման գործում պետք է ըստ ամենայնի բարձրացնել կուլտուր-լուսավորական հիմնարկների, կինոթատրոնների, մարզական կառույցների ու բազաների դերը, որոնց մի մասը դեռևս շարունակում է գործել անարդյունավետ, հին ձևերով ու մեթոդներով: Այդ օջախների գործունեության վերակառուցման համար պահանջվում է, որպեսզի քաղաքային սովետի գործկոմի կուլտուրայի, կինոֆիկացիայի վարչությունները, ֆիզկուլտուրայի և սպորտի քաղաքային կոմիտեն վերանայեն աշխատանքի հնացած ոճը, այն վերակառուցեն կուսակցության արդի պահանջների ոգով, բարձրացնեն պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, հետևողականություն հանդես բերեն իրենց պարտականությունների կատարման գործում: Անհրաժեշտ է կուլտուր-լուսավորական հիմնարկները, մարզական կառույցները դարձնել ըստ բնակության վայրի բնակչության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի խականական կենտրոններ: Իսկ դրա համար հարկավոր է ստեղծագործական մոտեցում ցուցաբերել գործի նկատմամբ, որոնել մասսայական աշխատանքի նոր ձևեր ու եղանակներ:

Մասսաների աշխատանքային ու քաղաքական դաստիարակության միաձուլման, նրանց ստեղծագործական նախաձեռնությունների զարգացման գործում հսկայական է սոցիալիստական մրցության դերը: Ճիշտ կազմակերպված մրցությունը, երբ խիկապես ըմբռնվում է նրա տնտեսական, գաղափարաքաղաքական ասպեկտը, դառնում է աշխատավոր մասսաների քաղաքական և աշխատանքային դաստիարակության անգնահատելի միջոց: Այստեղ էլ մենք ոչ քիչ լավ օրինակներ ունենք, երբ կուսակցական կազմակերպությունները մտահոգվում են աշխատավորների կողմից ռեալ և իրագործելի պարտավորությունների ստանձնման հարցերով, պարբերաբար քննարկում են դրանց կատարման ընթացքն ու արդյունքները: Մրցության կազմակերպման ուսանելի փորձ են կուտակել «Լույս», «Հայէլեկտրամեքենա», «Ալմաստ» արտադրամիավորումների և այլ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններ: Ադմինիստրացիաների ու արհմիութենական կազմակերպությունների հետ միասին նրանք մշակել են սոցիալիստական մրցության օրինակելի պայմաններ, պարբերաբար անդրադառնում են ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքին ու արդյունքներին, կարևորում առաջավորների բարոյական և նյութական խրախուսման խնդիրը:

Միաժամանակ պետք է խոստովանել, որ մրցության կազմակերպման գործում դեռևս քիչ չեն նաև թերությունները, շաբլոնն ու ձևամոլությունը, որոնք հանգեցնում են ոչ միայն տնտեսական կորուստների, այլև լուրջ վնաս են հասցնում աշխատավորների դաստիարակության գործին: Վերջերս քաղկոմի բաժինները ուսումնասիրեցին սոցիալիստական մրցության դրվածքը բազմաթիվ արտադրական կոլեկտիվներում: Պարզվեց, որ աշխատավորների 60—70 տոկոսը առհասարակ տեղյակ չէ



սոցիալիստական մրցության ընթացքին, արդյունքներին: Դա նշանակում է, որ չի ապահովվում մրցության հրապարակայնությունը, մի հանգամանք, որը բացասաբար է անդրադառնում մրցության թե՛ դաստիարակչական և թե՛ տնտեսական պոտենցիալի ըստ ամենայնի օգտագործման վրա:

Վ. Ի. Լենինը իր ժամանակին նշել է, որ սոցիալիստական մրցության սկզբունքներն են հրապարակայնությունը, համեմատելիությունը, առաջավոր փորձի լայն տարածումը, պրակտիկ կրկնման հնարավորության ապահովումը: Առանց լավին, առաջավորին հասնելու ձգտման մրցությունը կկրի ձևական բնույթ և կկորցնի իր դաստիարակչական նշանակությունն ու իմաստը: Լենինյան այս դրույթից էլ ուղղակիորեն բխում է մեր քաղաքի կուսկազմակերպությունների խնդիրը՝ մասսայական-քաղաքական աշխատանքի միջոցով պրոպագանդել և տարածել մրցության առաջավորների փորձը, այն դարձնել յուրաքանչյուրի սեփականությունը:

Սովետական մարդու բարոյական կերպարի հիմնական հատկանիշներն են հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը: «Սովետական հայրենասիրության խոր ակունքները,— ՍՄԿԿ XXVII համագումարում ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— գտնվում են հասարակարգի մեջ, մեր հումանիստական գաղափարախոսության մեջ: Իսկական հայրենասիրությունը քաղաքացիական գործուն կենսադիրքն է»: Ահա թե ինչու մեր մարդկանց հոգևոր հարստությունը, նրանց խոր գաղափարայնությունն ու հայրենասիրությունը, բարձր բարոյական հատկությունները վառ կերպով դրսևորվում են նրանց հայրենանվեր, ստեղծագործ աշխատանքում, հայրենիքի հզորությունը բազմապատկելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ:

Մեր քաղաքի կուսակցական կազմակերպությունները, օգտագործելով մասսաների վրա գաղափարաբարոյական ներգործության ձևերն ու միջոցները, կարողացել են հասնել այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավորի մեջ մշտապես ամրապնդվի կոմունիստական շինարարության՝ սովետական բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր գործում իր ժողովրդի ավանդը բազմապատկելու հայրենասիրական պարտքի զգացումը: Այդ իրողության գնահատման չափանիշը տնտեսական ու սոցիալական շինարարության բնագավառում քաղաքի աշխատավորության ձեռք բերած նվաճումներն են:

Ծարունակվում են խորանալ ու ընդլայնվել մեր աշխատավորների կապերը մրցակից ու եղբայրացած քաղաքների՝ Կիևի, Թբիլիսիի, Բաքվի, Դոնի Ռոստովի աշխատավորության հետ: Այդ կապերն ընդգրկում են քաղաքական, տնտեսական, մշակութային կյանքի ամենատարբեր կողմերը: Թբիլիսիի, Բաքվի և Երևանի քաղկոմները, շրջկոմները մշակել և իրականացնում են ինտերնացիոնալ դաստիարակության միջոցառումների համատեղ պլաններ:

Ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրությունը, որոնք հայ ժողովրդի, մեր աշխատավորների գիտակցության և հոգեբանության բնորոշ գծերն են, մշտապես ամրապնդվում ու հաստատվում են ստեղծարար պրակտիկայով: Մեր քաղաքի աշխատավորությունը հարգանքի ու երախտագիտության, եղբայրական բարեկամության զգացմունքներ է տածում ռուս մեծ ժողովրդի, սովետների երկրի բոլոր ժողովուրդների հանդեպ: Քաղաքի կուսկազմակերպությունների, մեր բոլորի պարտքն է այսուհետ ևս լայնորեն ու խորությամբ պրոպագանդել լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը, սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում բոլոր ազգերի ու ազգությունների ձեռք բերած պատմական նվաճումները: Պետք է հասնել այն բանին, որ ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության գաղափարները տիրապետեն յուրաքանչյուրին, դառնան նրանց համոզմունքը, հոգեբանությունը, վարքագծի նորմը, կյանքի ու գործունեության հավատամքը:

Կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության անկապտելի բաղկացուցիչ մասը ամենուրեք և ամեն ինչում բարոյական սկզբունքների հաստատումն է, մարդկանց ակտիվ կենսադիրքի, անբասիր վարքագծի ձևավորումը: Մեր քաղաքում զգալի աշխատանք է կատարվում աշխատավորների բարոյական դաստիարակության ասպարեզում, հետևողական պայքար մղվում բացասական երևույթների դեմ: Սակայն այդ աշխատանքն ու պայքարը դեռևս բավարար արդյունավետ չեն և լիովին չեն համապատասխանում ժամանակի, կոմունիստական

չինարարության արդի փուլի պահանջներին։ Դրա հետևանքով դեռևս չեն հաղթահարվել սոցիալիստական սեփականության հափշտակման, կաշառակերության, դրամաշորթության փաստերը և այլ մերժելի դրսևորումներ, որոնք անհամատեղելի են սոցիալիստական ապրելակերպի հետ, արմատապես հակասում են սովետական հասարակության շահերին, բացասաբար անդրադառնում դաստիարակչական աշխատանքի վրա։ Բազմաթիվ կուսկազմակերպություններ լրջորեն չեն զբաղվում կոլեկտիվի անդամների գործնական և բարոյական հատկանիշների ձևավորման, կոմունիստական բարոյականության ոգով նրանց դաստիարակման հարցերով, անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում բացասական երևույթների դեմ կոլեկտիվների անդամներին պայքարի մեջ ներգրավելու համար։ Արդյոք դա չէ՞ այն գլխավոր պատճառներից մեկը, որ քաղաքում դանդաղ է նվազում հանցագործություն կատարելու համար դատապարտվածների թիվը։

Մի՞թե անբավարար բարոյական դաստիարակության հետևանք չէ, որ դեռևս դանդաղ է նվազում հատկապես հանրային սեփականության նկատմամբ կատարվող ոտնձգությունների, կաշառակերության, մյուս շահադիտական հանցագործությունների թիվը։ Հատկապես առևտրի օբյեկտներում, կենցաղսպասարկման ձեռնարկություններում, առողջապահության ոլորտում և այլուր, նույնիսկ այն բանից հետո, երբ գործողության մեջ է մտել անաշխատ եկամուտների դեմ տարվող պայքարի մասին նոր օրենքը, չեն կրճատվում մատուցած ծառայությունների դիմաց դրամ և ուրիշ արժեքներ շորթելու փաստերը։ Սակայն այդ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները, իրավապահպան մարմինները թույլ են զբաղվում նման հանցագործությունների կանխմամբ։

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներից բխող այսօրվա կարևորագույն խնդիրն է՝ անհաշտ ու անզիջում մթնոլորտ ստեղծել կենսագործունեության բոլոր ոլորտներում սոցիալիստական բարոյականության նորմերից ու սկզբունքներից ամեն տեսակ շեղումների դեմ։ Օրինականության խախտման ամեն մի դեպք, ով էլ կատարի, պետք է խստորեն դատապարտվի։ Նրանց նկատմամբ, ովքեր փորձում են ոտնահարել սովետական օրենքները, քաղաքացիների իրավունքները, չի կարող ու չպետք է դրսևորվեն լիբերալիզմ, որևէ ներողամտություն։

Ինքնին հասկանալի է, որ միայն վարչական միջոցառումներով հնարավոր չէ պատնեշել չարաշահումների, կաշառակերության, անաշխատ եկամուտների ճանապարհը։ Միայն ամբողջ ճակատով, համակողմանի մտածված և կազմակերպված հարձակումը կարող է ցանկալի արդյունք տալ։ Այստեղ գործի հաջողությունը պայմանավորված է ղեկավարների բարձր պատասխանատվությամբ ու պահանջկոտությամբ, այդ հարցերի նկատմամբ կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների, հասարակության յուրաքանչյուր անդամի և ողջ հասարակայնության ուշադրության աստիճանով, ժողովրդական վերահսկողության, իրավապահպան և արդարադատության մարմինների արդյունավետ աշխատանքով։

Բացասական երևույթների դեմ տարվող պայքարում վճռական դեր է պատկանում աշխատավորական կոլեկտիվին։ Բայց եկեք նայենք՝ արդյոք մեզանում ամենուրե՞ք է, որ այդ երևույթների դեմ տարվող պայքարում արդյունավետ է օգտագործվում նրա դաստիարակչական վիթխարի պոտենցիալը։ Ըստ երևույթին, ո՛չ։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ քաղաքային դեզինֆեկցիոն կայանի գլխավոր հաշվապահ Կ. Մելքոնյանը և գանձապահ Ս. Էլազյանը կարողացել են հանցավոր համաձայնությամբ 1985 թ. ապրիլ-օգոստոս ամիսներին կրկնակի վճարման փաստաթղթեր կազմելու միջոցով կատարել առավել խոշոր չափի հափշտակություն։ Կամ մի՞թե Խ. Աբովյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտի կոլեկտիվում չգիտեին, որ ուսանողները նախօրոք կազմած ցուցակներով փող էին հավաքում՝ դրական գնահատական ստանալու նպատակով դոցենտ Ս. Վարդանյանին կաշառք տալու համար։

Ցավոք, բերված օրինակները եզակի չեն։ Դրանք ցույց են տալիս, թե կոլեկտիվի անդամների անտարբերությունը, բացասական երևույթների նկատմամբ հաշտվողականությունը, կուսկազմակերպությունների անսկզբունքայնությունը ինչպիսի ծանր



հետևանքների կարող են հասցնել։ Հետևաբար, քաղաքի սկզբնական կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները պետք է բոլոր աշխատավորական կոլեկտիվներում ստեղծեն այնպիսի մթնոլորտ, որը բացառի սոցիալիստական ապրելակերպին խորթ ամեն մի դրսևորում։ Անհրաժեշտ է գաղափարաբարոյական աշխատանքը նպատակամղել այն բանին, որպեսզի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ գործի մեր կուսակցության պահանջների ոգով, որպեսզի նրա վարքագիծն ու գործելակերպը բխեն անհատի և հասարակության շահերի միասնությունից։ Անհրաժեշտ է անդուլ ուշադրություն նվիրել աշխատավորների իրավական դաստիարակությանը, նրանց մեջ ձևավորել իրավունքների և պարտականությունների միասնության խոր ըմբռնում։ Տարեվերջին կայացած ՀԿԿ Երքաղկոմի պլենումը քաղաքի իրավապահպան մարմիններին պարտավորեցրեց ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սոցիալիստական օրինականության և իրավակարգի հետագա ամրապնդման, քաղաքացիների իրավունքների և օրինական շահերի պահպանության ուժեղացման մասին» որոշման պահանջների լույսի ներքո արմատապես վերակառուցել իրենց աշխատանքը այն հաշվով, որ հուսալիորեն ապահովվի պետության շահերի և քաղաքացիների իրավունքների պաշտպանությունը, ավելի արդյունավետորեն պայքար մղել իրավախախտումների և հանցագործությունների, հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ, սերտորեն կապված լինել աշխատավորների հետ, օրինականության խստագույն կիրառման իսկական օրինակ ծառայել։ Քաղաքի կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրավապահպան մարմինների քաղաքական ղեկավարումը, վերահսկեն նրանց գործունեությունը, բարձրացնեն պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։

Արագացման ու վերակառուցման կուսակցության կուրսը պահանջում է նոր մոտեցում սոցիալական ոլորտի զարգացմանը։ Այստեղ հասունացած պրոբլեմների թերագնահատումը բացասաբար է անդրադառնում հասարակական գիտակցության, աշխատավորների տրամադրության վրա, խոչընդոտում մարդկային գործոնի ակտիվացմանը, դաստիարակչական ջանքերի արդյունավետության բարձրացմանը։ Եվ կուսակցության XXVII համագումարը պահանջեց արմատապես փոխել վերաբերմունքը սոցիալական զարգացման խնդիրների լուծման, մարդկանց պահանջմունքների ու կարիքների բավարարման նկատմամբ, կարևորել այդ բնագավառի գաղափարախոսական ապահովումը։ «Բնակարանը, պարենային մատակարարումը, ժողովրդական սպառման ապրանքների որակը, առողջապահության մակարդակը՝ այս բոլորը,— նշել է ընկ. Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— ամենաանմիջական կերպով ազդում են մարդկանց գիտակցության և տրամադրությունների վրա։ Մենք հենց այդ դիրքերից պետք է մոտենանք կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների դաստիարակչական գործունեության հետ կապված հարցերի ամբողջ կոմպլեքսին» (ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԸ, էջ 121)։

Բայց, ցավոք, մեր բազմաթիվ ձեռնարկություններում ու կազմակերպություններում զգացնել են տալիս նախկին ռեցիդիվները, բավարար ուշադրություն չեն նվիրում սոցիալական խնդիրների լուծմանը, չեն ըմբռնում այդ գործի ամբողջ կարևորությունը։ Դրա հետևանքը լինում է այն, որ նվազում է մարդկանց հասարակական ու աշխատանքային ակտիվությունը, տեղիք է տրվում կադրերի հոսունության, դաստիարակչական աշխատանքը դառնում է անարդյունք։ Նման վերաբերմունքի դրսևորումների հետ հաշտվել չի կարելի։

Երևան քաղաքն այսօր բնակչության սոցիալական կարիքների ապահովման շատ ցուցանիշներով ետ է մնում միութենական միջին մակարդակից։ Հատուկ ուշադրություն է պահանջում հատկապես բնակարանային պրոբլեմի լուծումը։ Բանն այն է, որ բնակարան ստանալու համար հերթագրված է ավելի քան 35 հազար մարդ։ Բավականին մեծ է քանդման ենթակա խարխուլ և վթարային տների քանակը, որտեղ բնակվում է 100 հազարից ավելի մարդ։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիքին առանձին բնակարանով ապահովելու մասին կուսակցության առաջադրած խնդրի լուծման համար մեզ հարկավոր է կառուցել 9 միլիոն 200 հազար քմ ընդհանուր օգտակար մակերեսով բնակելի

տներ: Այդ ծրագիրն իրականացնելու համար շրջկոմները, շրջսովետների գործկոմները պետք է մշտական խստապահանջ վերահսկողություն սահմանեն բնակարանային շինարարության ընթացքի նկատմամբ, բարձրացնեն շինարարական կազմակերպությունների պատասխանատվությունը, այդ գործում ապահովեն արդյունաբերական ձեռնարկությունների ակտիվ մասնակցությունը:

Բնակարանային շինարարության բնագավառում ևս հարկ է ուշադրությունը սևեռել որակական ցուցանիշների բարելավման վրա: Այլապես շինմոնտաժային ցածրորակ աշխատանքի հետևանքով քաղաքում համմատարած բնույթ է կրում նորաբնակների կողմից բնակարանների նորոգումը, որը հանգեցնում է ոչ միայն նյութական, այլև բարոյական մեծ կորուստների: Ահա թե ինչու, քաղկոմը, շրջկոմները շինարարական պրոցեսի մասնակից բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների կուսակցական կազմակերպությունների հետ սկսել են լայն պայքար ծավալել բարձր որակի համար, այն դարձնել բոլորի ու յուրաքանչյուրի պատվի գործը:

Սոցիալական քաղաքականությունը կուսակցությունը դիտում է որպես մասսաների աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման, նոր մարդու ձևավորման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման հզոր միջոց: Մենք ձգտում ենք հասնել այն բանին, որպեսզի մարդկանց աշխատանքի, կենցաղի, կուլտուրայի, սոցիալական հարցերի լուծման, նրանց հետաքրքրությունների ու կարիքների բավարարման մասին չթուլացող հոգատարությունը դառնա քաղաքի բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների գործունեության օրենքը:

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կտրուկ շրջադարձի, վերակառուցման համար պահանջվում է ամրապնդել ձեռք բերված արդյունքները, ժամանակին նկատել ու բացահայտել հասունացած պրոբլեմները, քննադատորեն գնահատել բոլոր ասպարեզների գործունեությունը, արմատապես բարելավել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, ըստ ամենայնի բարձրացնել դրա արդյունավետությունը: Այս խնդիրների լուծմանն են նպատակամղում իրենց ջանքերը կուսակցության քաղկոմն ու շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները:

---



# ՀՈՎՍԵՓ ՕՐԲԵԼԻ

## (ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

*ԻՆՉԻ՞Ց ՍԿՍԵԼ մեր մեծ հայրենիքին հայ ժողովրդի տված ամենաականավոր գիտնականներից մեկի պատմությունը: Չէ՞ որ Հովսեփ Օրբելին նշանավոր է ոչ միայն որպես խոշորագույն հետազոտող-հնագետ ու արվեստի պատմաբան: Իր բազմակողմանի գործունեության բոլոր ասպարեզներում նա դրսևորել է գիտական մտածողության թարմություն ու ինքնատիպություն, մտահորիզոնի վիթխարի լայնություն: Այս բոլոր հատկություններից զատ, ինչպես իրավացիորեն նշել է ակադեմիկոս Ե. Տարլեն, «Հովսեփ Աբգարովիչը Հոկտեմբերյան մեծ հեղափոխության առաջին օրերից գիտական միջավայրում ի հայտ բերեց կոլեկտիվ գիտական աշխատանքի կազմակերպչի ու ղեկավարի տաղանդ»:*

*Կյանքից հեռացողների մեջ կան հոգևոր ու հոգեկան մեծ հարստության տեր այնպիսի մարդիկ, որոնք շարունակում են ապրել քեզ հետ: Իսկ երբ ձեռքդ ես վերցնում գրիչը, ցանկանալով առանձին հատկանշական մանրամասներով ստեղծել նման մարդկանց դիմանկարը, ապա նրանք ասես հարություն են առնում և օգնում քեզ ապրելու: Իմ հիշողության մեջ այդպիսի անկրկնելի մարդ եղել ու մնացել է Հովսեփ Օրբելին, որի հետ բարեկամություն եմ արել ամբողջ քառորդ դար:*

*Իրադարձություններով հարուստ նրա կյանքի բոլոր կողմերն ընդգրկել հնարավոր չէ: Մարդու էությունն ավելի հաճախ երևան է գալիս բարդ, ճգնաժամային պարագաներում: Իսկ այդպիսիք Օրբելու կյանքում շատ են եղել:*

*Հովսեփ Օրբելու հայրը՝ Աբգար Հովսեփի Օրբելին, ավարտելով Պետերբուրգի համալսարանը, վերադարձել է Թիֆլիս և որպես հաշտարար դատավոր պաշտոնավարել Նախիջևանում ու Երևանում: Ավելի ուշ նա տեղափոխվել է աշխատանքի Քութայիս, որտեղ 1887 թվականի մարտի 8-ին ծնվել է կրտսեր որդին՝ Հովսեփը: Բնակավայրը հաճախակի փոխելը Աբգար Օրբելուն և նրա կնոջը՝ Վարվառա Մոիսեևնային դուր չէր գալիս: Մեծանում էին երեք որդիները՝ Ռուբենը, Լևոնը և Հովսեփը: Պետք է վերջ տրվեր քոչվորի կյանքին: Օրբելիների ընտանիքը հաստատվեց Թիֆլիսում:*

*Աբգար Օրբելին ունենալով համեմատաբար սուղ նյութական միջոցներ, իր երեխաներին տվեց գերազանց կրթության, նրանց մեջ դաստիարակեց աշխատասիրություն, պարտքի խակական զգացում հասարակության հանդեպ, սեր բոլոր ազնիվ մարդկանց նկատմամբ՝ անկախ ազգային պատկանելությունից:*

*Ամբողջ կյանքում որդիները պահպանեցին խոր հարգանքը ծնողների հանդեպ: Երիտասարդ տարիներին ոչ մի հարց չէր լուծվում առանց խստաբարո, բայց սիրող հոր խորհուրդների ու համաձայնության: Նա գնահատում էր որդիների ավյունը և երբեք նրանց չէր կաշկանդում մանրախնդիր խնամակալությամբ, չէր սահմանափակում նրանց գործողությունների ազատությունը: Հետագայում Ռուբենը համաշխարհային գիտությանը հայտնի դարձավ որպես Ռուսաստանում հիդրոհնագիտության հիմնադիր: Միջնեկ եղբայրը՝ Լևոնը, ակադեմիկոս էր, սոցիալիստական աշխատանքի հերոս, Ի. Պավլովի աշակերտն ու զինակիցը:*

*Թիֆլիսում անցան կրտսեր որդու մանկությունն ու պատանեկությունը: Հովսեփը գեղեցիկի նկատմամբ դյուրընկալ էր: Արդեն այդ ժամանակ Թիֆլիսը Անդրկովկասի խոշոր կուլտուրական կենտրոնն էր: Քաղաքը, որ դարասկզբին ուներ տարբեր ազգությունների ավելի քան հարյուր վաթսուն հազար բնակիչ (վրացիներ, հայեր, ռուսներ և այլ ժողովուրդների ներկայացուցիչներ) իր թատրոններով, ուսումնական հաստատություններով, թերթերով ու հանդեսներով, մեծ դեր է խաղացել վրացիների ու հայերի ազգային մշակույթների զարգացման, փոխադարձ հարգանքի ավանդույթներ ստեղծելու գործում: Թիֆլիսում էին խաչաձևվում ու փոխհարստանում արևելյան և արևմտյան կուլտուրաներն ու բարքերը: «Թիֆլիսը սքանչելի' քաղաք է»— արդեն հասուն տարիներին բազմիցս բացականչել է Հովսեփ Օրբելին: Այստեղ է նա սովորել գնահատել ժողովրդական ավանդույթները: Նա այցելել է բո-*

իսկ այսօր հնավաճառության հայտերով վտանգի տակ է դրվում նաև արևելքի սեկտորը, ընդ որում այնպիսի ձևով, որն անխուսափելիորեն կհանգեցնի մեր գործի լիակատար փլուզմանը...»։

Եվ ահա 1932 թ. նոյեմբերի 6-ին էրմիտաժ բերվեց և Հ. Օրբելուն հանձնվեց ՀամԿ(բ)Կ Կենտկոմի դրոշմակնիքով մի մեծ ծրար։ «Ստուգումը ցույց է տվել,— ասվում էր պատասխան նամակում,— որ հնավաճառության հայտերը հիմնավորված չեն։ Այդ կապակցությամբ համապատասխան պետական մարմինը պարտավորեցրել է արտաքին առևտրի ժողկոմատին և նրա արտահանման ստորաբաժանումներին՝ էրմիտաժի արևելքի սեկտորին ձեռք չտալ»։ Այսպես ավարտվեց պրոֆեսոր Հ. Օրբելու միջադեպը ՍՍՀՄ արտաքին առևտրի ժողկոմատի հնավաճառության բաժնի հետ։ Այդ ժամանակից սկսած հնավաճառության անիմաստ միջամտություններից ազատվեցին ոչ միայն էրմիտաժը, այլև երկրի բոլոր թանգարանները...

... 1941 թ. ամռանը Սովետական Միության վրա կախվեց մահացու վտանգ։ Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրը սովետական մարդիկ ռադիոյով լսեցին Լենինգրադի էրմիտաժի դիրեկտոր, ակադեմիկոս Հովսեփ Օրբելու ցասումնալի, մարգարեական ելույթը. «Գազաններից ամենանողկալին, գարշելին ու ժանտահոտը բորենին է, որն իր մեջ միակցում է արյունարբություն, անհագություն և նենգություն, գազան, որից խորշում է ամեն մի կենդանի էակ։ Այդպիսին է և ֆաշիզմը՝ զավթելու անհագ ծարավ, իր դավաճանության ու ոխտադրժության մեջ սահմաններ չճանաչող։

... 1812 թվականի հայրենական պատերազմը, —ասել է Օրբելին,— հավետ մտել է պատմության մեջ՝ որպես ռուս ժողովրդի հզորության ու միասնության ապացույց, որպես հայրենիքի նկատմամբ ռուս ժողովրդի անսահման սիրո ապացույց։ Այսօր սկսված երկրորդ հայրենական պատերազմը և՛ Հիտլերին, և՛ նրա մեջ մարմնավորված համաշխարհային ֆաշիզմին ցույց կտա, թե ինչպես անխուսափելի է սովետական ժողովրդի սրբազան հողի նկատմամբ կատարվող ամեն մի ոտնձգության խորտակումը։ Երկրորդ հայրենական պատերազմը վերստին աշխարհին ցույց կտա պարտքի նկատմամբ քաջության ու հավատարմության հրաշքներ, ցույց կտա, որ կենդանի են սուվորովյան «հրաշք դյուցազները», կուտուզովյան հերոսները և որ անխորտակելի է հանուն հայրենիքի մարտի գնացող այդ հրաշք-դյուցազների ուժը...»։

... Պատերազմ էր։ Խոշորագույն գիտնականներին Լենինգրադից անհապաղ էվակուացնելը հիմնականում դրված էր Հյուսիս-արևմտյան ռազմաճակատի գլխավոր հրամանատարի տեղակալ Հովհաննես Ստեփանի Իսակովի վրա։ Նրա և Օրբելու միջև հեռախոսային խոսակցություն տեղի ունեցավ։ Վերջինս կտրականապես հրաժարվեց ենթարկվել հրամանին. «Քանի սիրտս բաբախում է, ես չեմ թողնի շրջափակված Լենինգրադը։ Չեմ թողնի էրմիտաժն ու իմ աշխատակիցներին»։

էրմիտաժի գանձերը փրկելը դարձավ առաջնակարգ կարևորության խնդիր։ Հ. Օրբելին քաջ գիտակցում էր իր անձնական պատասխանատվության ողջ լրջությունը։ Կան շատ վկայություններ, թե նա ինչպիսի ծանր ապրումներ է ունեցել Լենինգրադի վիճակի կապակցությամբ և ինչպես է կատարել գիտնական-հայրենասերի պարտքը։

Իսկ ահա ինչ է պատմում ինքը՝ Հ. Օրբելին. «1941 թ. հունիսի 22-ի լուսաբացին էրմիտաժի բոլոր աշխատակիցները անսովոր վաղ ժամի կանչվեցին թանգարան. մեր հայրենիքին սպառնում էր արհավիրքը։ Ամբողջ էրմիտաժը կերպարանափոխվեց, և այն բոլոր սրահները, որ կարող էին այցելուներից ազատ լինել՝ լցվեցին փաթեթավորող նյութերով ու արկղերով։ էրմիտաժի աշխատակիցներն առանց խուճապի, գործիմացությամբ սկսեցին փաթեթավորել մեր ցուցադրանմուշները։ Առաջին օրվա գիշերվա մոտ էրմիտաժի հսկայական շենքի և նրա անբաժան մասը կազմող Ձմեռային պալատի վերին հարկերը դատարկվեցին գեղարվեստական և գիտական տեսակետից ամենայն արժեքավորից, իսկ ստորին հարկերում եռանդուն կերպով առաջ էր տարվում փաթեթավորման գործը։ Այդ աշխատանքը շարունակվեց ութ օր անընդմեջ։

էրմիտաժի գիտական աշխատակիցները, պահպանողները, տեխնիկական ծառայողները, սևագործ բանվորները՝ բոլորը մասնակցեցին այդ ազնիվ գործին։ Հարյուրավոր մարդիկ աշխատեցին առանց ընդմիջման, օր ու գիշեր՝ ուտելու և հանգստի համար օրական ծախսելով մեկ ժամից ոչ ավելի։

Այդ օրերին աշխատանքի նորմալ ընթացքը երբեմն ընդհատվում էր շչակների նախազգուշական ոռնոցով, օդային տագնապի ազդանշանով, ու թեպետ գոյություն ուներ տագնապի ազդանշանով վերին հարկերից մարդկանց հեռացնելու հրաման, ոչ ոք չէր համաձայնում գնալ ապաստարան՝ վտանգի տակ թողնելով այն, ինչը այդ մարդկանց համար կյանքից էլ թանկ էր՝ ժողովրդի կողմից իրենց վստահված թանգարանի գանձերը։

էրմիտաժի հարյուր հազարավոր ցուցանմուշներ փաթեթավորվել ու բեռնման հրապարակներ էին բերվել նախատեսված ժամից ավելի վաղ։ Պատանի ծովայիններն ու կարմիրբանակայինները առանձնահատուկ հանդիսավորությամբ և հպարտությամբ Ձմեռային պալատի դահլիճներով ու էրմիտաժի մարմարյա աստիճաններով իրենց ուսերի վրա տանում էին հսկայական արծաթյա դամբարանը, որի մեջ մի ժամանակ պահպանվում էին ռուս մեծ զորավար Ալեքսանդր Նևսկու աճյունի մնացորդները...

... Եկավ հուլիսի 1-ի առավոտը։ Սահմանված ժամին կառամատույցից հեռու դեպի արևելք մեկնեց էրմիտաժի գանձերով բեռնված առաջին էշելոնը՝ հուսալի պահպանությամբ, տանելով նույնիսկ ավելի շատ բան, քան նշված էր էվակուացման առաջին հերթի ցուցակում։ Այդ էշելոնը կազմված էր 27 մեծ պուլմանյան վագոններից։

Առավոտյան ժամը 9-ին, երբ կայարանից վերադարձանք էրմիտաժ, այնտեղ արդեն եռում էր երկրորդ հերթին ուղարկվող իրերի փաթեթավորման աշխատանքը։ Դրանք էրմիտաժից դուրս բերվեցին 1941 թ. հուլիսի 20-ին և կազմում էին 25 պուլմանյան վագոններ»։

էրմիտաժում սկսվեց բոլորովին այլ կյանք։ Շրջափակում, օդային հարձակումներ, հրետակոծություններ։

1943 թ. օգոստոսի 23-ին Թբիլիսիում տեղի ունեցավ Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգ։ Կովկասի անվեհեր զավակները երդում էին տալիս պայքարելու հիտլերյան բանդիտների, Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի, սովետական բոլոր ժողովուրդների երդվյալ թշնամիների դեմ՝ մինչև նրանց լիակատար ոչնչացումը։

Ես շատ լավ հիշում եմ այդ անմոռանալի օրը։ Մեկը մյուսի ետևից ամբիոն էին բարձրանում Կովկասի ժողովուրդների որդիներն ու դուստրերը։ Նրանց ջերմ, սրտաբուխ խոսքերը աշխույժ արձագանք ունեցան հավաքվածների մեջ...

Երբ ամբիոն բարձրացավ ակադեմիկոս Օրբելին, տիրեց լիակատար լռություն։ Նա սկսեց իր ճառը, և նրա բարի աչքերը այրվեցին խելահեղ ցասումով. «Կովկասցի եղբայրնե՛ր։ Հարազատ Կովկասի վրա, նրա բոլոր ժողովուրդների վրա ահռելի վտանգ է կախվել, այն է՝ զրկվել ազատությունից, դառնալ ստրուկներ, տեսնել մեր օջախների ավերվելը, տեսնել մեր կանանց ու քույրերի անարգումը և մահը, տեսնել, թե ինչպես են գազանները տանջում մեր մայրերին և փոքրիկ երեխաներին... Հիտլերի հրոսակները մինչև մեր լեռներն են հասել։ Հարազատնե՛րս, Կովկասի զավակնե՛ր, կարմիր բանակի զինվորնե՛ր։ Մեր ձեռքում երկաթ է ու պողպատ և հայրենիքի տված զենքի կրակը։ Խփե՛ք թշնամուն երկաթով ու պողպատով, խեղդե՛ք նրան, հողի՛ն տվեք նրա միսն ու արյունը, կրակով այրե՛ք թշնամուն...

Վերցրե՛ք հաղթանակը ձեր ձեռքը, և հայրենիքը հավե՛րժ կփառաբանի ձեր անունները, ինչպես փառաբանում է մեր մեծ նախնիների անունները»։

Հովսեփ Օրբելու հետ հաջորդ հանդիպումը կայացավ 1944 թ. վերջին Լենինգրադում։ էրմիտաժի վրա ընկած երեսուն արկերն ու երկու ավիառումբը ավերել էին թանգարանի շենքերը։ Օրբելին՝ բամբակյա բաճկոնով և ճմրթված եզրավոր գլխարկով, քայլում էր փլատակներում, քաջալերում բանվորներին ու իր աշխատակիցներին։ Թվում էր՝ վերականգնման աշխատանքները վերջ չունեին։

Լենինի քաղաքը, կրելով անլուր տառապանքներ, շարունակում էր պայքարել։ Միայն Նեմանից մինչև Նևա թշնամին կորցրեց 190 հազար զինվոր ու սպա, ութ հարյուր տանկ, հինգ հարյուր հրանոթ, ռազմական օդանավերի միավորումներ։ Ծանր, արյունահեղ մարտեր մղելով, սովետական զորքերը չկորցրեցին մարտունակությունը։ Լենինգրադը գրավելու պլանը փլուզվեց։ Գտնվելով շրջափակման աքցանի մեջ, մեր բանակը կարողացավ Լենինգրադի անառիկ պատերի մոտ գամել հակառակորդի երեքհարյուրհազարանոց բանակի ուժերը։ Հիտլերականները, հուսահատության մեջ ընկնելով, փոխեցին տակտիկան. Լենինգրադի դիմադրությունը կոտրել սառնամանիքով ուժասպառ անելով, սովահարությամբ, անընդհատ ռմբակոծությամբ ու հրետանային գնդակոծումներով։

Նրանք չէին կարող հասկանալ, որ այս մարդիկ անհաղթելի են, որ նրանք ունակ են կրակի բոցերի, սովի ճիրանների մեջ անգամ էրմիտաժում նշել Նիզամու և Ալիշեր Նավոյիի հոբելյանները։ Այդ երեկոները կազմակերպում էր ակադեմիկոս Հովսեփ Օրբելին։

1945 թ. մայիսին որոտացին ամենաավերիչ պատերազմի վերջին համազարկերը։ Ընթանում է Նյուրնբերգյան պրոցեսը պատերազմի հանցագործների նկատմամբ։ Սովետական մեղադրող կողմի հրավերով ելույթ է ունենում ակադեմիկոս Հ. Օրբելին։ Դատարանի դահլիճում հնչում է ֆաշիստական դահիճների չարագործությունները մերկացնող ճառը։ «Հնագույն ակադեմիկոսը վկայության ամբիոնից ելույթ ունեցավ ինչպես դատախազ,— գրել է «Պրավդա» թերթը դատական քննության այդ օրվա մասին։— Գիտնականը բերեց միայն փաստեր...»։

Հանցագործների փաստաբանները փորձեցին վիճարկել Օրբելու ցուցմունքները։

— Արդյոք բավականաչափ մե՞ծ են վկայի գիտելիքները հրետանու ասպարեզում, որպեսզի նա կարողանա դատել այդ հրետակոծումների

գիտումնավորության մասին,— հարցրեց մեղադրյալների դատապաշտպանը՝ հիտլերյան գըլխավոր շտաբից։

— Ես երբեք հրետանավոր չեմ եղել։ Բայց էրմիտաժի վրա ընկել է երեսուն արկ, իսկ կողքը գտնվող կամրջի վրա՝ ընդամենը մեկ, և ես կարող եմ համոզված դատել, թե որտեղ էր նշան բռնել ֆաշիզմը։ Այս շրջանակներում ես հրետանավոր եմ։

Ինչպես նկարչի յուրաքանչյուր վրձնահարվածից գույները մնում են կտավին, և նկարը ուրվագծվում է ավելի վառ, այնպես էլ Օրբելու հարուստ կյանքի յուրաքանչյուր դրվագը լրացնում է նրա հիանալի կերպարը։ Հիշենք ևս մի բան։ Մինչ այն պահը, երբ ակադեմիկոս Մառը հանդես եկավ «լեզվի մասին նոր ուսմունքի» հիմնական դրույթներով, Հովսեփ Օրբելին մնում էր Մառի՝ որպես պատմաբանի ու բանասերի, ամենամերձավոր օգնականներից մեկը։ «Լեզվի մասին նոր ուսմունքը» սառնություն մտցրեց նրանց հարաբերությունների մեջ։ Բայց նույնիսկ դա բնավ չէր նշանակում Մառ-արևելագետի ակնառու ծառայությունների ժխտում։ 1934—1935 թթ. Օրբելին հանդես եկավ «Փայլուն էջ հնագիտության պատմության մեջ» և «Ն. Յա. Մառը որպես հնագետ» հոդվածներով։ Սրանցով նա պատշաճը հատուցեց մեծավաստակ գիտնականի խոշոր ծառայություններին՝ չվախենալով դրա համար իր նկատմամբ զայրույթ առաջացնելուց։ Սա ևս Օրբելու անկաշառ ազնվության մի վկայություն է։ Տխուր բան է Մառի բոլոր ծառայությունները անհիմն կերպով հողին հավասարեցնելու ժամանակը վերհիշելը, երբ բուռն «բանավեճեր» ծավալվեցին լեզվաբանության հարցերի շուրջ և «մշակվեցին» նրա ուսմունքի հետնորդները։ «Անտառը հատելիս տաշեղներ կթռչեն»,— փորձում էին արդարանալ թունդ քննադատները։

1950 թ. սեպտեմբերի 14-ին Օրբելին ելույթ ունեցավ լեզվաբանության հարցերին նվիրված գիտական խորհրդի նիստում։ Պետական էրմիտաժի հին աշխատակիցները մինչև օրս հիշում են իրենց դիրեկտորի այդ համարձակ, սկզբունքային ելույթը։ Այն ամենը, ինչ Մառը ճիշտ գրել է առանձին բանասիրական հարցերի և լեզվաընտանիքների մասին, խիստ գիտականորեն օգտագործելու դեպքում կնպաստի այն բանի հերքմանը, ինչ մեր գիտակցության մեջ մտցրել է Մառի սխալ «Նոր ուսմունքը»,— աներկբայորեն հայտարարել է Հ. Օրբելին։— Բայց հո չի կարելի մոռանալ, ես կրկնում եմ, այն, որ Մառը ճիշտ է ցույց տվել լեզվի և մտածողության, լեզվի ու հասարակության կապը և ամեն կերպ կոչ էր անում մշակել այդ հետանկարային պրոբլեմը։ Մի՞թե նրա աշխատությունները քիչ են նպաստել այդ ասպարեզում մեր լեզվաբանների հետագա հաջող հետազոտությանը։ Այլ բան է Մառի առաջ քաշած նոր լեզվական տեսությունը։ Այն չի ներդաշնակվում լեզվական նյութի հետ։ Այս հարցի շուրջ ուսուցչիս հետ վիճաբանություններս հանրահայտ են։ Իսկ պատկերել Մառին բորիկ, նրան «մերկ թագավոր» հայտարարե՛լ՝ իհարկե, առավել հեշտ է նրանց համար, ովքեր վերջերս ճղճղոցով ազդարարում էին Մառի անսխալականության մասին։ Ես ինձ համարեցի, համարում եմ, այսուհետև էլ կհամարեմ Մառի աշակերտ, և դա առանց չակերտների։ Քանի դեռ Ն. Մառը կենդանի էր և մատչելի՝ իր հետ հաղորդակցվելու համար, ես կատարում էի աշակերտի պարտք,— պարտք, որն ինձ ուսուցանել է ինքը՝ Նիկոլայ Յակովլևիչը— ուղղել ուսուցչի սխալները։ Ես դա արեցի քանի դեռ մեր միջև չէր կանգնել անհաղթահարելի պատնեշը։ Ամենածանր կորուստը ուսուցչի կորուստն է։ Ես դա ճաշակել եմ, բայց, բարեբախտաբար, ժամանակավորապես, որովհետև կյանքի վերջին 3—4 ամիսներին Մառը վերադարձավ լեզվաբանական գիտության նկատմամբ իր նախկին դիրքորոշմանը»։

Օրբելին իր ելույթն ավարտեց հետևյալ խոսքերով. «Տակավին 1935 թվականին ուսուցչիս մասին իմ արտահայտած ոչ մի դրույթից չեմ հրաժարվում։ Չի կարելի քննադատել Մառի «հաբեթական տեսությունը»՝ ոչնչացնելով նրա հսկայական ծառայությունները հայրենական ու համաշխարհային գիտության հանդեպ։ Պետերբուրգյան-լենինգրադյան համալսարանում եղել են նշանավոր շատ արևելագետներ, բայց հանճարեղը մեկն էր՝ Մառը։ Ահա այդ Մառին, որ իր ողջ կյանքը նվիրաբերել էր սովետական հայրենիքին, իր գիտությանը, ոչ ոքի թույլ չեմ տա ոչնչացնել»։

...Ճշմարտության համար պայքարը թանկ նստեց։ Նա փաստորեն անգործ էր, ունենալով դասախոսի ոչ մեծ ծանրաբեռնվածություն համալսարանում։ Եվ միայն 1956 թ. վերջին նրան հանձնարարում են ղեկավարել արևելագիտության ինստիտուտի Լենինգրադի մասնաճյուղը, որն ըստ էության պետք էր նոր-նոր կազմակերպել։ Հ. Օրբելին իր աշակերտներից աճեցրեց հիանալի հերթափոխ։ Բայց էրմիտաժն ընդմիշտ մնաց նրա սրտում։

Շատ տարիներ ապրելով Լենինգրադում, Օրբելին սերտ կապեր է պահպանել Հայաստանի, հայ գիտնականների հետ, հետաքրքրվել նրանց ստեղծագործությամբ և զգալի օգնություն ցույց տվել։ Պատահական չէ, որ արդեն 30-ական թվականների սկզբին նա գլխավորեց ՍՍՀՄ ԳԱ հայկական մասնաճյուղը (Արմֆան)։

1942 թ. աշնան սկզբին նա եկավ Երևան և անմիջականորեն ղեկավարեց Արմֆանի աշխատանքները։ Դա Հայրենական մեծ պատերազմի ծանր շրջանն էր։ Գիտնականը բոլոր աշխատակիցներից պահանջեց մարտնչող հայրենիքի, իր ժողովրդի հանդեպ ցուցաբերել պատասխանատվության խոր ըմբռնում, բոլոր միջոցներով աջակցել ռազմաճակատին, ներդնել առավելագույն ուժեր թշնամուն ջախջախելու գործում։

Ակադեմիկոս Օրբելու նախաձեռնությամբ հրատարակվեց գրքույկների մատենաշար՝ նվիրված հայ նշանավոր զորահրամանատարներին, ժողովրդական հերոսներին։ Այդ գրականությունն անմիջապես ուղարկվում էր ռազմաճակատ, հայ մարտիկներին։ Հ. Օրբելու ղեկավարությամբ ու խմբագրությամբ ռուսերեն լեզվով հրապարակվեցին հանրամատչելի աշխատանքներ, որոնցում մերկացվում էին ֆաշիզմը, նրա մարդատյաց էությունը։

Հ. Օրբելին ստեղծեց ռազմաճակատներում և թիկունքում հարազատ ժողովրդի որդիների ու դուստրերի սխրանքների մասին փաստաթղթեր հավաքելու և պահպանելու կաբինետ։ Գիտնական-հայրենասերին հատուկ կրքոտությամբ նա պատմաբաններին ու բանասերներին կոչ էր անում ժամանակավորապես հետաձգել իրենց բոլոր հետազոտությունները և ամեն ինչ անել, որպեսզի գալիք սերունդների համար պահպանվի սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմի մասին ամենայն կարևորն ու ծանրակշիռը։

Հովսեփ Օրբելին մեծ ուշադրություն էր դարձնում Արմֆանի ոչ միայն հումանիտար հաստատությունների գործունեությանը, այլև ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության և այլ բնական գիտությունների ուսումնասիրման ինստիտուտների ու լաբորատորիաների աշխատանքին՝ պահանջելով հետազոտությունների թեմատիկան ենթարկել ռազմաճակատի կարիքներին։

Արմֆանի նվաճումներն, անտարակույս, անհրաժեշտ նախադրյալներ դարձան հանրապետության գիտությունների ակադեմիայի ստեղծման համար։ Դեռևս 1942 թվականին, Մոսկվայի մոտ մղվող ծանր մարտերի թեժ պահին, կուսակցության Կենտկոմում ուսումնասիրվում էր Հայաստանում գիտությունների ակադեմիա ստեղծելու հարցը։

---

Մոսկվա հրավիրված Հովսեփ Աբգարովիչը անմիջականորեն մասնակցում է ակադեմիայի ստեղծման, նրա գործունեության հիմնական ուղղություններին վերաբերող հարցերի քննարկմանը։ Մեծավաստակ գիտնականը կարևոր դեր է խաղում նոր ստեղծվող ակադեմիայում հասարակական և բնական գիտությունների հարաբերակցության պրոբլեմի ճիշտ լուծելու գործում։

1943 թ. նոյեմբերի 29-ից ակադեմիան կազմավորվեց ու սկսեց իր գործունեությունը։ Համաշխարհային անուն ունեցող գիտնական Հովսեփ Օրբելին՝ հանրապետության ԳԱ հիմնադիրը, դարձավ նրա պրեզիդենտը, իսկ Օրբելու առաջարկությամբ փոխպրեզիդենտ ընտրվեց ականավոր գիտնական Վիկտոր Համբարձումյանը։ Չնայած վատառողջ լինելուն, Հ. Օրբելին իր բնավորությանը հատուկ հարաշարժությամբ ձեռնամուխ եղավ ակտիվորեն օգնելու գիտնականներին՝ հուզող հարցերի լուծման խնդրում։ Ամեն օր լինում էր ոչ միայն նախագահությունում, այլև ինստիտուտներում ու լաբորատորիաներում, զրուցում էր ինչպես ղեկավարների, այնպես էլ գիտաշխատողների հետ, հետաքրքրությամբ ծանոթանում գիտական աշխատանքը կատարելագործելու վերաբերյալ առաջարկություններին։

Պատերազմի տարիներին նա ակադեմիայի աշխատանքում ներգրավեց էրմիտաժի իր գործընկերներին՝ նշանավոր գիտնականներ Բ. Պիոտրովսկուն և Կ. Տրևերին, մշտական կապ էր պահպանում ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահության հետ, բարեկամություն անում Վրաստանի և Ադրբեջանի նորաստեղծ գիտությունների ակադեմիաների ղեկավարների հետ։ 1947 թվականից նրան փոխարինեց ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը։

Հովսեփ Աբգարի Օրբելին՝ համաշխարհային ճանաչման արժանացած գիտնականը, բարձր բարոյականության ու արիության իր ողջ եռուն կյանքով ապացուցել է Գալիլեյի խոսքերի իրավացիությունը. «Ոչ մի մեծ բան աշխարհում չի կատարվել առանց կրքի»։

**ԱՇՈՏ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**

# ԼԵԳԵՆԴԱՐ ԳԱՅԸ

(Հ. Դ. ԲԺՇԿՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**ԼՐԱՑԱՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ** պանծալի զավակ, սովետական ականավոր զորահրամանատար, սովետների իշխանության հաղթանակի ակտիվ մարտիկ Գայի (Հայկ Բժշկյան) ծննդյան 100-ամյակը: Նրա եռուն կյանքը, ռազմական-կազմակերպչական, գրական և ուսուցչական անխոնջ գործունեությունը սերտորեն շաղկապված էր իր ազատության, կոմունիզմի վսեմ իդեալների համար աշխատավոր ժողովրդի պայքարի հետ: Գայի անունը, նրա գործը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության գաղափարների հաղթանակի համար նրա գործած սխրանքները ոսկե տառերով են գրված աշխարհում առաջին բանվորագյուղացիական պետության հերոսական պատմության մեջ, որը նա զենքը ձեռքին պաշտպանեց մեր երկրի անծայրածիր տարածքներում:

Հեծելազորային գնդերի, դիվիզիաների, կորպուսների և բանակների գլուխ անցած՝ Գայը մարտնչում էր երիտասարդ սովետական հանրապետության թշնամիների դեմ: Նա ջախջախում էր սպիտակ չեխերի ապստամբ ջոկատները, Բուխարայի էմիրի և սպիտակ կազակների ատաման Դուտովի զորքերը, հարվածում կոլչակյաններին ու դենիկինյաններին, պայքարում պանական Լեհաստանի կանոնավոր զորքերի դեմ: Նրա հրամանատարության ներքո ազատության ու երջանկության համար կռվում էին աշխատավոր ռուսներն ու հայերը, ուզբեկներն ու բելոռուսները, ուկրաինացիները, լիտվացիները, չեխերը, հունգարները, չինացիները, լեհերը, այլ ազգերի ու ազգությունների ներկայացուցիչները՝ մի ամբողջ ինտերնացիոնալ:

Գայի հեծելազորայինները թշնամուն դուրս քշեցին Բելոռուսիայի, Լիտվայի, Ուզբեկստանի, Մերձվոլգյան, Ուրալի և Անդրուրալյան հարյուրավոր քաղաքներից ու գյուղերից: Նրանց մարտական սխրանքները, որոնք պահպանվել են ժողովրդի հիշողության մեջ, նպաստեցին ճնշումից ու շահագործումից աշխատավորների ազատագրմանը, դարձան հերոսության և արիության խորհրդանիշ, Հոկտեմբերյան հեղափոխության, Լենինի գործին անձնուրաց նվիրվածության օրինակ:

Գայը ծնվել է 1887 թ. փետրվարի 18-ին՝ Թավրիզում, ուսուցչի ընտանիքում: Վաղ ճաշակելով սոցիալական անարդարությունը՝ նա 16 տարեկանից ընդգրկվում է հեղափոխական շարժման մեջ: Դրան նկատելիորեն նպաստել է հայրը՝ Դմիտրի Կարապետի Բժշկյանը, որը հետագայում որդու հետ միասին կռվել է քաղաքացիական պատերազմի տարբեր ռազմաճակատներում:

Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանը, «Իմ հիշողությունները» գրքում նկարագրելով 1914—1915 թթ. կովկասյան ռազմաճակատի գործողությունները, գրում է. «Վեցերորդ զորագնդի շարքերում Էրզրումի ուղղությամբ արիաբար կռվում էր Հայկ Բժշկյանը՝ հետագայում քաղաքացիական պատերազմի փառաբանված հերոսը, կարմիր բանակի նշանավոր զորահրամանատարը, որը պատմության մեջ մտավ Գայ անունով: Արդեն այն ժամանակ նա աչքի էր ընկնում անվեհերությամբ ու հրամանատարական ունակություններով: Հայկ Բժշկյանն այն ժամանակ հայտնի էր նաև որպես ժուռնալիստ: Լրագրերում հաճախ էին հրապարակվում ռազմաճակատի Էրզրումի տեղամասի վերաբերյալ նրա ակնարկները, հատկապես ռուս և հայ ռազմիկների մարտական բարեկամությանը նվիրված հոդվածները»:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտում պահպանվող վավերագրերը վկայում են դեռևս երեսունը չբոլորած Գայի քաջագործությունների ու հրամանատարական անսովոր ունակությունների մասին: Դրանցում փաստեր են բերվում, որոնք հաստատվել են կովկասյան ռազմաճակատի մասնակիցների ու ականատեսների կողմից: Երեք անգամ՝ ճակատից, գլխից և աջ թևից վիրավորված, Գայը մարտի ամենածանր պահին, երբ զոհվում է զորագնդի պետ Գ. Ավշարովը, հայտնվում է զինվորների շղթայի մեջ՝ գլուխը բինտով փաթաթված, ձեռքը վիրակապված, և զինվորներին առաջնորդում մարտի: Այդ ճակատամարտերում ցուցաբերած քաջագործության ու արիության համար նա պարգևատրվում է երկու Գեորգիևյան խաչով և Գեորգիևյան մեդալով: «Ապագա զորավարը,— «Գայի հետքերով» գրքում գրում է Ա. Դունաևսկին,— անհարմար չէր զգում խաչերի ու մեդալների համար, թեև այդ պարգևներն ստացել էր հին բանակում: Նա դրանցով հպարտանում էր, ինչպես հպարտանում էին Բլյուխերը, Չապաևը, որոնք շարքային զինվորից հասել էին զորապետի աստիճանի: Չէ որ Գայը պարգևատրվել էր ոչ այն բանի համար, որ պատրաստ էր կյանքը զոհել հանուն ցարի, նա նրան արհամարհում էր այնպես, ինչպես թուրքական սուլթանին, այլ իր ժողովրդին հավատարիմ ծառայելու համար»:

Վավերագրերը, մյուս գրավոր աղբյուրները հաղորդում են, որ ենթասպա Հայկ Բժշկյանը 1917 թ. սկզբին՝ ժամանակավոր կառավարության օրոք, եղել է Մոսկվայի հոսպիտալում, ապաքինվելուց հետո քաղաքը պաշտպանել է անկարգություններից ու կողոպուտներից, իսկ երբ հասկացել է, որ «ժամանակավորների» հետ նույն ճամփով չի կարող գնալ, խզել է կապը և շարժվել դեպի Սամարղանդ: Կազմակերպելով հայկական զորագունդ, որի մեջ մտել են նաև ուզբեկներ ու հրեաներ, Գայն այստեղ կռվել է Բուխարայի էմիրի դեմ, այնուհետև, ընտրվելով միացյալ զորագնդի հրամանատար, գլխավորել է կամավորական մի խոշոր ջոկատ և մեկնել հակահեղափոխության դեմ կռվելու Սամարայում և Օրենբուրգում:

Այն հեռավոր ժամանակներում հեղափոխությունը պաշտպանող մարդիկ միմյանց կոչում էին անունով: Սամարայի զորագնդի ժողովում ընկերները Հայկ Բժշկյանին նրա իսկ համաձայնությամբ կոչում են Գայ, իսկ վեց տարի անց օրինականացվում է նրա նոր ազգանունը. հրամանատար Հ. Դ. Բժշկյանին սկսում են անվանել Գայ Դմիտրիևիչ Գայ: Այդ է վկայում 1924 թ. մայիսի 23-ին Մ. Վ. Ֆրունզեի ստորագրած հրամանը:

Սովետական մեծ հանրագիտարանում Գայի կուսակցական ստաժը թվագրված է 1918-ից: Հանրագիտարանի հոդվածի հեղինակները հավանորեն նկատի են առել այն հանգամանքը, որ Գայը 1918 թ. դեկտեմբերի վերջին ռազմաճակատից հեռագիր է ուղարկել՝ խնդրելով իրեն ընդունել Սիմբիրսկ քաղաքի կոմունիստների կուսակցության շարքերը: Այդ հեռագիրը պահպանվում է Ուլյանովսկի կուսարխիվում: Պատմում են, որ նահանգկոմականներից շատերը ապշել են դրա բովանդակությունից: Նրանք առանց այդ էլ Գային կոմունիստ էին համարում: Դրա համար էլ որոշվում է ռազմաճակատից չկանչել Գային. նա միաձայն ընդունվում է կուսակցության մեջ:

Ոչ պակաս կարևոր մի այլ փաստաթուղթ էլ պահպանվում է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի արխիվում: Դա Մինսկի օկրուգային կուսվերահսկողության հանձնաժողովի 1925 թ. փետրվարի 9-ի որոշման քաղվածքն է, ուր ասված է. «Ընկ. Գայի կուսակցական ստաժը հաշվել 1903 թվականից»:

«Մինսկի ընկերների կարծիքի հետ,— իր գրքում գրում է Գայի կյանքն ուսումնասիրողներից մեկը՝ գրող Ա. Դունաևսկին,— համաձայնվում է բանվորագյուղացիական կարմիր բանակի քաղվարչության կուսհանձնաժողովը: Կուսստաժը որոշելիս հաշվի էին առնվել Գայի հեղափոխական մեծ ծառայությունները, Անդրկովկասում նրա եռուն գործունեությունը, ցարիզմի ու նրա սատրապների դեմ պայքարը»:

Հին բոլշևիկների համամիութենական ընկերության անդամների ցուցակում, որը հրատարակվել էր առանձին գրքույկով, տեղեկություններ կան այն մասին, որ 1933 թ. հունվարի 1-ի դրությամբ հին կոմունիստների թվում, որոնք կուսակցության շարքերն էին ընդունվել մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, եղել է նաև Գայը: Այդ ցուցակում նշված է. կուսստաժը՝ 1903 թվականից, ընկերության մեջ մտնելու ժամանակը՝ 1929 թիվ, տոմսի համարը՝ 624: Գայի մասին երեք կարծիքներից մեկը սեփա-

կան ձեռքով գրել է հին կոմունիստ, Լենինի զինակից Պյոտր Ալեքսեևիչ Կոբոզևը, որը Գային անձամբ գիտեր արևելյան ռազմաճակատում համատեղ պայքարից: 1928 թ. հունիսի 9-ին կազմված նրա բնութագիրը ավարտվում է հետևյալ խոսքերով. «Վլադիմիր Իլյիչ Լենինը չափազանց բարձր էր գնահատում նրան՝ որպես առաջին կարմիր բանակի առաջին իսկական ստեղծողի»:

Այսպես թե այնպես, տասնութ թվականը կոմունիստ Գայի պայծառ կենսագրության մեջ դարձավ ամենանիշանակալիններից մեկը: Հուլիսին նա երեքհազարանոց համահավաք խմբի գլուխ անցած՝ ճեղքեց հակառակորդի զորքերի ամուր օղակը, դուրս եկավ վոլգյան Սենգիլեյ փոքրիկ քաղաքից, կապվեց 1-ին արևելյան բանակի հրամանատարության՝ Վ. Կույբիշևի ու Մ. Տուխաչևսկու հետ և նրանց աջակցությամբ ստեղծեց մի հզոր ինտերնացիոնալ դիվիզիա, որ հետագայում կոչվեց 24-րդ Սիմբիրսկյան երկաթյա դիվիզիա:

Սեպտեմբերի 12-ին Երկաթյա դիվիզիան սպիտակ չեխերից ազատագրեց առաջնորդի հարազատ քաղաք Սիմբիրսկը: Նույն օրը ներ հեռագիր ուղարկվեց Մոսկվա, որի շարադրանքը դարձավ պատմական, դրան կարելի է հանդիպել բազմաթիվ դասագրքերում: «Թանկագին Իլյիչ,— գրում էր Գայը,— Ձեր հարազատ քաղաքի՝ Սիմբիրսկի գրավումը պատասխանն է Ձեր մի վերքին, իսկ երկրորդինը կլինի Սամարան»: Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը 1918 թ. օգոստոսի վերջին վիրավորվել էր էսէռուհի Կապլանի կողմից, և այդ մասին հաղորդումը առաջ էր բերել ոչ միայն երկաթյա դիվիզիայի մարտիկների, այլև ամբողջ աշխատավոր ժողովրդի ցասումը:

Ստանալով Սիմբիրսկի ազատագրման լուրը, Վ. Ի. Լենինը պատասխանում է. «Սիմբիրսկի՝ իմ հայրենի քաղաքի գրավումը ամենաբուժիչ, ամենալավ վիրակապըն է իմ վերքերին: Ես առույգության և ուժերի չտեսնված հորդացում եմ զգում: Շնորհավորում եմ կարմիրբանակայիններին հաղթանակի առթիվ և ամբողջ աշխատավորության անունից շնորհակալություն հայտնում նրանց բոլոր անձնազոհությունների համար»:

Գայի Երկաթյա դիվիզիան համարվում էր կարմիր բանակի առաջին կանոնավոր զորամասերից մեկը և իր կազմակերպվածությամբ ու կարգապահությամբ օրինակ էր ծառայում մյուս զորամասերի համար: Սիմբիրսկը գրավելուց հետո Գայը կատարում է առաջնորդին տված խոստումը: Նա ազատագրում է Սամարան: Նոյեմբերի կեսերին Գայը նշանակվում է Արևելյան ռազմաճակատի 1-ին հեղափոխական բանակի հրամանատար՝ այդ բարձր պոստում փոխարինելով Միխայիլ Տուխաչևսկուն, պայքարում է Օրենբուրգը կոլչակյաններից ազատագրելու համար, մասնակցում է բաշկիրական հողը դուտովականներից ու կոլչակյաններից ազատագրելուն:

«24-րդ հրաձգային դիվիզիայի պետ և առաջին բանակի հրամանատար եղած ժամանակ Արևելյան ռազմաճակատում մարտական գործունեության ընթացքում Գայի ցուցաբերած հատուկ խիզախության և արիության համար, երբ նրա անմիջական ղեկավարությամբ ու անձնական մասնակցությամբ չեխոսլովակյան և սպիտակգվարդիական բանդաներից ազատագրվեց Վոլգայի մի մասը և վերցվեցին մի շարք քաղաքներ, հանրապետության հեղինխորհուրդը պարգևատրեց նրան Կարմիր դրոշի շքանշանով»: Այս որոշումը հեղինխորհուրդն ընդունեց 1919 թ. օգոստոսի 8-ին, երբ Գայն արդեն Հարավային ռազմաճակատում 42-րդ հրաձգային դիվիզիայի պետն էր: Ազատագրելով մի շարք քաղաքներ, նա շարժվում էր Բելգորոդի ուղղությամբ, երբ հոկտեմբերին, Լենինի առաջարկությամբ, երևան եկավ կարմիր բանակում առաջին հեծելազորային դիվիզիայի ստեղծման մասին կուսակցության Կենտկոմի հրահանգը:

Վ. Ի. Լենինի զինակից, կուսակցության Կենտկոմի քարտուղար Ելենա Ստասովայի պատկերավոր արտահայտությամբ՝ «Կարմիր հեծելազորի գարունն ազդարարող առաջին ծիծեռնակի» կազմակերպումը հեղինխորհուրդը հանձնարարեց Գային:

Մեկ ամիս անց լեգենդար զորահրամանատարը Սարանսկ քաղաքում կազմավորում է նոր հեծյալ զորամաս՝ 1-ին կովկասյան կարմիր վայրի հեծյալ դիվիզիա անվանմամբ, ուր հեղինխորհրդի առաջարկով զորակոչվում են հիմնականում կովկասցի հեծյալ կամավորականներ: Նոյեմբերին նոր դիվիզիան, որի մարտիկները զգեստավորված էին չերքեզկաներով ու բուրկաներով, մեկնում է ռազմաճակատ՝ Դենիկինի հեծելազորի դեմ կռվելու:



Գայը գլխավորում է հեծյալ կորպուսը և միաժամանակ Թամանյան թերակղզում ղեկավարում է Դոնի ու Ազովի բոլոր ծովային ուժերը:

1920 թ. սկզբին Գայը նորից վիրավորվում է աջ թևից, բայց հոսպիտալում չի պառկում: Սպիտակգվարդիականների դեմ պայքարելու համար նա անդրկովկասցիներից կազմավորում է նոր՝ 2-րդ կովկասյան հեծյալ կորպուսը:

Ապրիլի վերջին Պիլսուդսկու բանակը Պետլյուրայի հետ դաշնակցած սկսում է հարձակումն Ուկրաինայի վրա. երկրին նոր վտանգ է սպառնում: Ստեղծվում է Արևմտյան ռազմաճակատ Միխայիլ Տուխաչևսկու հրամանատարությամբ: Ռազմաճակատի քաղբաժնի պետ է նշանակվում Ալեքսանդր Մյասնիկյանը:

Սովետական Միության ապագա մարշալ Մ. Տուխաչևսկին ու Գայը միմյանց հետ կապված էին թշնամու դեմ համատեղ պայքարից եկող վաղեմի բարեկամությամբ: Կորպուսի հրամանատարը դիմում է ռազմաճակատի հրամանատարին՝ ցանկություն հայտնելով մասնակցել լեհական շլյախտայի դեմ մղվող մարտերին: Տուխաչևսկին նրան պատասխանում է. «Սիրելի Գայ, կորպուսի շտաբը Արևմտյան ռազմաճակատ փոխադրելը վճռված է դրականորեն: Շտապ պատրաստվիր: Միասին կհարվածենք լեհական շլյախտային»: Քաղաքացիական կռիվների տարբեր տարիներին զինվորական ճակատագիրը Հայաստանի զավակին, այսպիսով, նետում էր արևելքից հարավ, հարավից՝ արևմուտք:

Արևմտյան ռազմաճակատի մարտերում Գայի հեծելազորը մեծ դեր խաղաց: Այստեղ ժամանելուց մի քանի օր անց նրա կորպուսը առաջինն անցավ հարձակման ընդդեմ սպիտակ լեհերի, ճեղքեց նրանց դիրքերը, անցավ թիկունք և, ետ շպրտելով, տրոհելով, ցաքուցրիվ անելով ու իր արագընթաց մարշ-զորաշարժի ամբողջ ճանապարհին հալածելով նրանց՝ սկսեց բարոյապես քայքայել թշնամու զորքերը:

Գայի հեծելազորի մասին այն ժամանակ գրել են. «... Առանց չափազանցության կարելի է ասել, որ Գայի հեծյալ գնդերը կարմիր բանակի լավագույն զորամասերից են: Հեծելազորայինների լավ հանդերձավորում, սքանչելի ձիեր, հոյակապ ուսուցում, առույգ, համարձակ ու մարտաշունչ տեսք՝ այսպիսին է Գայի հեծելազորի ընդհանուր պատկերը: Ավելացրեք դրան այն սերն ու հարգանքը, որ կորպուսի հրամանատարը վայելում է ենթակաների շրջանում, և դուք պատկերացում կկազմեք Գայի՝ համաձուլվածքի պես կուռ և ամուր հեծելազորի մասին:

... Մեկը մյուսի հետևից թշնամուց ազատագրվեցին Գրոդնոն, Վիտեբսկը, Վիլնոն, բազմաթիվ բնակավայրեր: Տասը օրվա ընթացքում Գայի կորպուսը հերոսական մարտարշավ գործեց՝ Դվինայից մինչև Վիլնո, կայծակնային ու կործանիչ հարվածներ հասցնելով Պիլսուդսկու բանակներին:

Գայականների սրընթաց գրոհները ռազմական պատմաբանները դասել են պատերազմների համաշխարհային պատմության հազվադեպ երևույթների շարքը: Կարմիր հեծյալ կորպուսի հարձակողական թափը, նրա կազմակերպվածությունն ու շեշտակիությունը, հակառակորդին հասցվող հարվածի ճիշտ եզրափակումը՝ այս ամենը մարմնավորում էին Գայի անսովոր զորավարական տաղանդը: Հենց դրանք էլ վճռեցին բելոռուսական հողում կատարված գործողությունների բախտը: Սվենցյանի քաղաքը գրավելու համար լեգենդար հրամանատարը երկրորդ անգամ արժանանում է այն ժամանակվա բարձրագույն պարգևին՝ Կարմիր դրոշի շքանշանի:

Սև ամպեր էին կուտակվում սպիտակ Լեհաստանի վրա, փլվում էր այն պետությունը, որը կոչված էր հակակոմունիզմի բուֆեր լինելու, Գերմանիան պատսպարելու հեղափոխական Ռուսաստանից: Գայի 3-րդ հեծյալ կորպուսը հայտնվեց Վիսլայի ափերին՝ կտրելով բուրժուաշլյախտական Լեհաստանը արևմուտքի հետ կապող հիմնական գիծը:

Գայականները առաջիններից էին, որ օգնության ձեռք մեկնեցին լեհ բանվորներին ու գյուղացիներին: Հետևակի ու հրետանայինների հետ միասին նրանք նեղ կիսաշրջանի մեջ առան պանական Լեհաստանի մայրաքաղաքը և դրան հարող շրջանները: Այդ պահին մյուս զորամասերը տիրեցին Դանցիգի միջանցքին՝ կտրելով սպիտակ Լեհաստանի ու Անտանտայի կապը:

Սակայն գայականների սրընթաց հարձակումը չստացավ ռազմաճակատի մյուս բանակների աջակցությունը, և հեծյալ կորպուսը հետևակի զգալի մասի հետ հայտնըվեց թշնամու օղակի մեջ: Գային հարկ եղավ ճեղքել հակառակորդի շրջափակու-

մը և, առաջ թողնելով հետևակը, անցնել գերմանական սահմանը։ Հեծելազորն իր հետ Գերմանիա տարավ 600 վիրավոր կարմիրբանակայինների ու երկու հազար ռազմագերիների։ Արևելյան Պրուսիայում Արիս քաղաքի մոտ գտնվող ճամբարում, խռնվել էին Արևմտյան ռազմաճակատի 4-րդ և 15-րդ բանակների շուրջ 90 հազար ներկալված զինվորներ ու սպաներ։ Գայն ընտրվեց կայազորի պետ, և նրա կազմակերպչական ունակությունների շնորհիվ ճամբարում տիրում էր օրինակելի կարգ ու կանոն։ Մի քանի ամիս անց սովետական կառավարության ու Գերմանիայի միջև կայացված համաձայնության համապատասխան սկսվեց ներկալված կարմիրբանակայինների վերադարձը հայրենիք։ Սովետական զինվորներին ճանապարհելու համար կայարան էին եկել տեղական դեմոկրատական կազմակերպությունների ներկայացուցիչները, ամբողջ աշխատավորական Բեռլինը։

1922 թվականին կուսակցության Կենտկոմի որոշմամբ Գայը նշանակվում է Հայաստանի ռազմական գործերի ժողովրդական կոմիսար։ «Կովկաս գալն ու այստեղ աշխատելը միշտ իմ անկեղծ փափագն են եղել,— գրել է Գայը 1922 թվականի նոյեմբերին։— Բայց ես չէի կարող դա ավելի վաղ անել։ Դրան խանգարում էին մի շարք հանգամանքներ՝ քաղաքական ու ռազմական, որոնք ինձ միշտ ձգում էին դեպի այլ, ավելի կարևոր ռազմաճակատներ։ Որպես կոմունիստ՝ ես միշտ եղել եմ այնտեղ, ուր հեղափոխությանն ավելի մեծ վտանգ էր սպառնում։ Հիմա հեղափոխությունն ամրապնդվել է, և ես Կովկասում եմ։

Ես ուրախությամբ ընդունեցի Հայաստանի ԿԳԿ-ի և կոմունիստական կուսակցության հրավերը... Սկզբունքորեն, իբրև մեծ կարմիր բանակի սան, ես տերիտորիալ ազգային բանակների կողմնակից չեմ, բայց, հաշվի առնելով Անդրկովկասի կենցաղային պայմաններն ու էթնիկական վիճակը, գտնում եմ, որ այդ երևույթը, որպես ժամանակավոր, անհրաժեշտ է»։

Հայաստանի ժողկոմի պոստում Գայը երկար չմնաց։ 1923 թ. նա վերստին գլխավորում է հեծյալ դիվիզիա։ Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովը, որն այն ժամանակ գնդի հրամանատար էր, իր «Հիշողություններ ու խորհրդածություններ» գրքում գրում է. «Ամառվա կեսին դիվիզիայի հրամանատարությունը ստանձնեց Գ. Դ. Գայը՝ քաղաքացիական պատերազմի հերոսը։ Ես հաճույքով եմ մտաբերում դիվհրամանատար Գ. Դ. Գայի հետ համատեղ աշխատանքը։ Մեր առաջին հանդիպումը տեղի ունեցավ նրա ամառային վրանում, ուր խորհրդակցության էին հրավիրվել զորամասերի հրամանատարներն ու կոմիսարները։ Պաշտոնապես ներկայանալուց հետո Գ. Դ. Գայը հրավիրեց նստել իր աշխատանքային սեղանի շուրջը։ Ես տեսա զինվորականորեն ձիգ, գեղեցիկ մի մարդու։ Նրա աչքերում ճառագայթում էր բարյացակամությունը, իսկ հանդարտ ու հանգիստ ձայնը վկայում էին հավասարակշռված բնավորության և իր ընտմամբ վստահության մասին։ Ես շատ էի լսել Գ. Դ. Գայի հերոսական գործերի մասին և հետաքրքրությամբ էի զննում նրան։ Ես ուզում էի թափանցել նրա հոգևոր աշխարհը, հասկանալ նրան՝ որպես մարդու և հրամանատարի»։

Այնուհետև մարշալը մի քանի էջ նկարագրում է Գայի հետ իր հանդիպումները, վերհիշում, թե դիվիզիայի հրամանատարն ինչպես էր անցկացնում ճամբարային զորավարժությունները, ինչպիսի օգնություն էր ցույց տալիս երիտասարդ հրամանատարներին ռազմական վարպետության, տակտիկական և օպերատիվ գիտելիքների կատարելագործման ասպարեզում։

Հրամանատարների ու կարմիրբանակայինների հետ աշխատանքի վիթխարի փորձը օգնեց Գային՝ ի դեմս Գ. Կ. Ժուկովի տեսնելու հեռանկարային զորապետի։ 1924 թ. ամռանը ապագա մարշալը Գայի խորհրդով ընդունվում է սովորելու Լենինգրադի բարձրագույն հեծելազորային դպրոցում։

Այնուհետև Գայը նորից կորպուս է ղեկավարում Մինսկում, իսկ 1933 թ. դասախոսական աշխատանքի է անցնում Ժուկովսկու անվան ռազմաօդային ակադեմիայում։ Լինելով պատերազմների ու ռազմական արվեստի պատմության ամբիոնի պետ և պրոֆեսոր, նա աշխատեց արդյունավետորեն, ստեղծեց մեմուարային գրականություն։ Նա գրել է «Դեպի Վարշավա» «Սովետական Բելոռուսիայի համար մղված մարտերում», «3-րդ հեծյալ կորպուսի գործողությունները Արևմտյան ռազմաճակատում», «Սիմբիրսկի համար մղված մարտերում», «Առաջին հարվածը Կոլչակին» գրքերը, ինչպես և կազմել է «Ռուսհայերեն ռազմական բառարանը»։



Գային մոտիկից ճանաչողները պատմում են, որ նա բազմակողմանի զարգացած մարդ էր՝ օժտված լեզվաբանի ունակություններով, գիտեր տասներկու լեզու, սիրում էր երաժշտությունն ու գրականությունը։ Նրան հաճախ տեսնում էին համերգասրահներում, գրողների մոսկովյան ակումբում։

Համամիութենական ավագ Միխայիլ Իվանովիչ Կալինինը, որը լավ գիտեր Գային, մի առիթով ասել է. «Առանց այնպիսի ժողովրդական զորավարների, ինչպիսիք են Ֆրունզեն, Բլյուխերը, Գայը, Չապաևը, կարմիր բանակը չէր կարողանա հաղթել թշնամուն»։

1935 թ. ամռանը Սովետական Բելոռուսիայի կառավարությունը Գային իր տիկնոջ՝ Նատալյա Յակովլևնայի հետ հրավիրում է մասնակցելու սպիտակ լեհերից հանրապետության ազատագրման 15-ամյակին և Բելոռուսական ՍՍՀ-ն Լենինի շքանշանով պարգևատրելուն նվիրված տոնակատարություններին։

Գայի ժամանումը Մինսկ՝ բելոռուսական ժողովրդի հանդիսություններին, որը նրան համարում էր իր հայրենակիցը, նշանակալի իրադարձություն եղավ։ Տեղական «Ռաբոչի» թերթը հաղորդում է նրա ժամանման մասին, 3-րդ հեծյալ կորպուսի հերոսական գործողություններին վերաբերող մի մեծ հատված է տպագրում Գայի «Սովետական Բելոռուսիայի համար մղված մարտերում» գրքից, որը շուտով պետք է լույս տեսներ։

Լեգենդար Գային վիճակված չէր մասնակցել հանդիսավոր նիստին։ Նատալյա Յակովլևնան Մինսկից Մոսկվա վերադարձավ մենակ, իսկ երկու տարի անց, ուժերի ու ստեղծագործական լայն հնարավորությունների ծաղկման շրջանում, ողբերգորեն ընդհատվեց նրա վառ կյանքը։ Այդ թվականին նա հազիվ բոլորել էր իր 50-ամյակը։

... Անողոք թռչում է ժամանակը։ Եվ Գային անձամբ ճանաչող մարդկանցից հիմա քչերը կան։ Դրանցից մեկն էլ Նազիկ Արսենևնան է՝ Սովետական Հայաստանի առաջին չեկիստներից մեկի, անվեհեր հեղափոխական Սուրեն Արշակունու այրին ։ Այսօր Նազիկ Արսենևնան մեկն է ողջ մնացած այն սակավաթիվ մարդկանցից, որը ամուսնու հետ բարեկամություն էր անում Գայի ընտանիքի հետ Մոսկվայում նրա կյանքի վերջին տարիներին։ Տոներին և լարված աշխատանքից ազատ օրերին Հայկ Դմիտրիևիչը սիրում էր լինել Արշակունիների տանը, որը նրա համար ոչ միայն բարեկամի օջախ էր, այլև իր հարազատ Հայաստանի մի մասնիկը։ Քանի դեռ հյուրասեր տանտիրուհին զբաղված էր գյումրվա խոհանոցի կերակուրներով, Արշակունին նստում էր դաշնամուրի առջև, իսկ Գայը ձեռքն էր առնում թառը, և բարեկամները երկուսով երգում էին հարազատ ժողովրդի երգերը։

— Իսկ հետո,— վերհիշում է Նազիկ Արսենևնան,— մենք բոլորս սկսում էինք պարել՝ ինչպես իսկական ջահելներ։ Այդ պահերին մոռանում էինք այն ծանր ժամանակների դժվարությունները, որ մեզ բաժին ընկան երիտասարդական տարիներին։ Գայի այցը մեր ընտանիքի համար իսկական տոն էր, նա առույգության և լավատեսության լիցք էր հաղորդում, մեզնից յուրաքանչյուրին համակում լավագույն ապագայի հույսով։

Ս. Արշակունու այրու բնակարանում նրա ամուսնու լուսանկարի հարևանությամբ պատից կախված է Գայի նկարը։ Հայ ժողովրդի երկու պանծալի զավակները արտաքինով ինչ-որ բանով շատ նման են իրար. նրանց գեղեցիկ ու առնական դեմքերը ճառագայթում են առույգությամբ, բարությամբ ու վեհությամբ։

Գայի անունը պահպանվում է ոչ միայն մարդկանց հիշողության մեջ։ Երախտապարտ սերունդներն այն պահպանում են և իրենց հերոսական սխրանքներում։ Անհարդեն երկար տարիներ երկրում ծավալվել է պատանի գայականների մասսայական շարժում. նրանք ձգտում են իրենց նպատակադրումներով լինել ավագ սերնդի գործի արժանի հետևորդները։

Գայի մասին պատմում են հրատարակվող գրքերը, շատ քաղաքների թանգարանային ցուցադրանքները։ Նրա անվամբ են կոչվում պիոներական դրուժինաներ ու ջոկատներ, դպրոցներ ու փողոցներ, սպայի տներ, ձեռնարկություններ ու կոլտնտեսություններ։

Մեր մայրաքաղաքի Սովետական շրջանի վարչական կենտրոնում, Գայի անունը կրող տրանսպորտային լայն մայրուղու երկարությամբ, երևանցիներն ստեղծել են երկաթյա դիվիզիայի լեգենդար հրամանատարին ու նրա մարտական զինակիցներին նվիրված հուշահամալիր։ Համալիրի կենտրոնում հառնում է Գայի մոնումենտալ հուշարձանը։ Բարձր պատվան-

դանին հեծյալի կոմպոզիցիոն արձանն է՝ ծառս եղած ու առաջ նետվող նժույգի վրա։

Իսկ վերջերս՝ 1986 թ. սեպտեմբերի 12-ին, առաջնորդի հայրենի քաղաքը հեղափոխության թշնամիներից ազատագրվելու 68-րդ տարեդարձի տոնակատարության օրերին, երախտապարտ ուլյանովսկցիները հանդիսավոր իրադրության պայմաններում իրենց մոտ բացեցին Գայի հուշարձանը։ Այն ևս մի խորհրդանիշ է հայ ժողովրդի քաջարի զավակի նկատմամբ Իլյիչի հայրենիքի աշխատավորների անմոռաց սիրո։

Գայի ծննդյան հարյուրամյակը զուգադիպում է ՍՄԿԿ XXVII համագումարի տարեդարձին և նշվում է մեծ Հոկտեմբերի 70-ամյակի նշանավոր տարում։ Այդ իրադարձությունները իրենց արմատներով միմյանց հետ շաղկապված են ամուր հանգույցներով։ Դրանք նույն շղթայի օղակներն են, մեր ժողովրդի պատմությունը՝ նվիրական մեզնից յուրաքանչյուրի համար։

Մոռացվել են քաղաքացիական պատերազմի դժվարությունները, որ հաղթահարեց մեր բազմազգ հայրենիքը, պատմության սեփականությունն են դարձել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման փուլերը, մեծ Հայրենականն ու հետպատերազմյան շինարարության շրջանը։ Բայց այսօր, հետադարձ հայացք նետելով սոցիալիզմի առաջին երկրի անցյալին, մեր հայրերի ու պապերի անցած ուղուն, մեզնից յուրաքանչյուրը ակնբախորեն տեսնում է այն զորեղ ուժն ու խորին համոզվածությունը, որ նրանց առաջնորդում էին այդ դժվարին ժամանակներում։ Դա անսասան հավատն էր այն գաղափարների արդարության նկատմամբ, որ մեծ Հոկտեմբերի օրերին հռչակեց լենինյան կուսակցությունը։

Քաղաքացիական պատերազմը բացառիկ ուժով ցուցադրեց ռազմաճակատի ու թիկունքի միասնությունը։ Այդ ուժի աղբյուրը Վ. Ի. Լենինը տեսնում էր այն բանում, որ աշխարհում առաջին անգամ ստեղծվել է բանակ, որը գիտե, թե ինչի համար է կռվում, և առաջին անգամ աշխարհում բանվորներն ու գյուղացիները՝ անասելի զրկանքներ կրած, հստակորեն գիտակցում են, որ իրենք պաշտպանում են Սովետական սոցիալիստական հայրենիքը, բանվորների և գյուղացիների իշխանությունը։

Մեր հասարակության զարգացման բոլոր փուլերում կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն անդուլ ուշադրություն են դարձրել երկրի պաշտպանունակությանը, նրա զինված ուժերի մարտական հզորության, զինվորական կարգապահության ամրապնդմանը։ «Սովետական բանակը, ռազմածովային նավատորմը,— ասվում է XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— ունեն ժամանակակից զենք ու տեխնիկա, նրանք ունեն լավ վարժեցված անձնակազմ, պատրաստված, ժողովրդին անսահմանորեն նվիրված հրամանատարական ու քաղաքական կադրեր։ Նրանք ըստ արժանվույն են կատարում իրենց պարտքը ամենաբարդ, երբեմն դաժան հանգամանքներում։ Ամենայն պատասխանատվությամբ մենք կարող ենք այսօր հայտարարել. ՍՍՀՄ պաշտպանական հզորությունը պահպանվում է այնպիսի մակարդակի վրա, որը թույլ է տալիս հուսալիորեն պաշտպանել սովետական մարդկանց խաղաղ աշխատանքը, խաղաղ կյանքը»։

Ռ. ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆ

Լ. ՍԱՐԳԻՋՈՎԱ

---

Հանձնված է շարվածքի՝ 16. 01. 87 թ.։ Ստորագրված է տպագրության 18. 02. 87 թ.։ ՎԳ 02177։
Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։
Տպաքանակը՝ 17.732։ Պատվեր՝ 109։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։